# ԱՐՄԵՆԻԱ

## ԼԻՆՉԻ

(Հեղինակի պատկերով եւ ինքնակենսագրութեամբ)



Գրեց
Պ. ՏՕՆԱՊԵՏԵԱՆ

ԼՕՆՏՕՆ
ՏՊԱՐԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՈՐԲԱՆՈՑԻ, ԶԻԿՎԷԼ
1902

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ



Հ. Ֆ. Բ. ԼԻՆՉ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՂԵՒՈՐԱԿԱՆ ՀԱԳՈՒՍՏՈՎ

**Wardington House,**
**Banbury**
2 *Օգոստոս* 1902

*Սիրելի Պրն. Տօնապետեան,*

*Դուք հարցնում էք ինձ մի համառօտ ծանօթագրութեան համար իմ կեանքից՝ հրապարակելու «Արմենիա» ի տեղեկագրութեան մէջ որ հրատարակում էք Հայ ընթերցողների համար ա՛յնչափ նեղութեամբ եւ ինքնազոհութեամբ դէպի ձեզ։ Մէկդի դնելով բնական համեստութիւնը, դեռ եւս վարանում եմ ձեր խնդրի առաջ, զգալով թէ հեղինակի կեանքը իւր գործերի մէջ է։ Քանի՛ քանիներ մեզանից սոսկ գործիներ են մեզանից դուրս ոյժերի — հայելիներ, այսպէս ասած, որոց մէջ անդրադառնում են երեւոյթներ եւ դէպքեր։ Նայեցէք հայելիին ոչինչ է այն բայց ապակի եւ շըրջանակ. եւ ոմանք անդրադարձնում են անկեղծ նմանութիւններ եւ ոմանք կեղծ։ Դուք երեւում է քիչ շատ կարեւորութիւն էք ընծայում գործիքին ։ Փափաքում էք գիտենալ ապակիին բաղադրութիւնը եւ շրջանակին պատմութիւնը ։*

*Իմ կարողութիւնից վեր է գոհացնել ձեր հարցասիրութեան մէկ բաժինը. բայց ինչ վերաբերում է այս անհատականութեան շուրջն բոլորած պարագաների շըրջանակին կարելի է մի քիչ բան տալ, ինչ էլ որ արժենայ։ Ես ծնել եմ Լօնդօնում 1862 ին, իմ ծնողներն էին մէկ կողմից մի հին Իռլանդական գերդաստանի մի կրտսեր ուստրը եւ միւս կողմից Սկովտական չառաւիղի մի նշանաւոր Հնդկական զինուորականի մի դուս-*

տրը։ Իրլանդայի Մէյօ նահանգի Պաչտրիի Լինչերը ապրել են այդ վայրում սերունդից սերունդ. հին, ժառանգական դղեակը դեռ եւս կանգուն է թէպէտ աւերակ, եւ, խաղաղութեան արուեստների ծաւալմամբ, այս նկարագեղ ամրոցը տեղի է տուել արդի նորաձեւ մի բնակավայրի։ Իմ հայրը ընտանիքի տասն եւ մէկ որդիներից մէկն էր. եւ նորա հայրը ծառայեց Սպանական պատերազմի դաշտում, եւ առաջնորդեց «Նախայարձակ գունտը», կամ վերջին յուսահատական յարձակումը, որ վերջացաւ, կարծես, ամուր տեղերից մէկի գրաւմամբ։ Իրլանդա վերադարձին, Անգլիոյ հինաւուրց բանակի այս զինուորականը գտաւ իւր ժառանգական դղեակն ու սեփականութիւնը մի օտարականի տիրապետութեան տակ։ Մեր գերդաստանի մէջ պատմւում է թէ, այն ժամանակների սովորութեան համեմատ, մեծ հայրս մենամարտի հրաւէր կարդաց անիրաւ տիրացողին եւ մահացու հարուածով գետին փռեց նորան։ Իւր կալուածների տէրը դառնալուց յետոյ, նա ամուսնացաւ Կենտացի մի լէյդիի հետ եւ եղաւ հայր տասն եւ մէկ արու զաւակների։

Այս զաւակներից մէկին էր որ Անգլիոյ Թագաւորի կողմից յանձնուեցաւ երկրորդ արշաւանքի հրամանատարութիւնը դէպի Եփրատ (1837 եւ յաջորդ տարիներ)։ Այս զինուորականը, կապտէն, այսօր ծովակալ Լինչ, հրամանատարութեան պաշտօն վարելից առաջին կամ «Ջեսնիի» արշաւանքի ընթացքում։ Կապտէն Լինչ շատ տարիներ անցկացրեց քննելով ու չափելով Եփրատն եւ Տիգրիս եւ այն երկիրները որոց մէջով հոսում են այս պատմական գետերը։ Իմ հայրը, Թոմաս Կերր Լինչ, այդ ժամանակ դեռ բոլորովին երիտասարդ էր եւ ուսանող Դուբլինի Տրինիտի Կոլէջում։ Իւր մեծ եղբօր պաշտօնը հրապուրեց իրեն դէպի Արեւելք եւ նա որոշեց միա-

նալ. Նորան իբր ճանապարհորդ Նորա դրօշակակիր նաւի վրայ։ Այդ միջոցին Գնդապետ Թէյլըր Բաղդադի Անգլիական ներկայացուցիչ էր—մեծ կարեւորութեան եւ բարձր շահերի մի դիրք, որ Բրիտանական կառավարութեան անմիտ քաղաքականութիւնը այժմ թող է տուել ձեռքից։

Գնդապետ Թէյլըր—Հնդկական զինուորականը որի մասին ես խօսեցայ — բոլորովին մի փոքրիկ թագաւոր էր Միջագետքում։ Նորա իշխանութիւնը Արաբների վրայ համատարած էր. եւ Օսմանեան Սուլթանների զօրութեան առժամանակեայ ղաղարման եւ մայրաքաղաքի հետ յարաբերութեան պակասութեան հետեւանօք, նա հանդիսանում էր իբր կախանօրէն գլխաւոր իշխող այդ երկրում։ Բայց իբր ուսումնական եւ աւելի յատկապէս իբր մի արեւելեան ուսումնական է որ նա հաճելի էր միերեւս Եւրոպական ուղեւորներից շատերին։ Տիգրիսի լայնարձակ հոսանքի վրայ նայող Նորա գրադարանը հռչակաւոր էր. եւ այդտեղ էր ուր Ռօլինսօն հաւաքեց աշխարհին նուիրած իւր աշխատութիւններից շատերը։ Իմ մեծ հայրը չունէր գրելու ձիրքը կամ փափաքը. եւ նա մեռաւ առանց հրատարակելու գոնէ մի գործ։

Շքեղազարդ համազգեստով Նորա մի Նկարը կախուած է տանս պատերից կողք՝ կողքի իւր քրոջ բնական մեծութեան հիանալի պատկերին հետ որ նկարել է Սըր Թոմաս Լօրանս։ Նորա եւ իմ դիմագծերի միջեւ եղած նմանութիւնը սաստիկ ուշագրաւ է. եւ «Արմենիա»ն ինչու հրատարակելուս պատճառներից մէկն այն է որ ես ցանկանում էի դարմանել Նորա գրական ամութիւնը՝ ինչ որ միշտ զգում էի իբր յանդիմանութիւն Նորա յիշատակին։

Մեծ հօրս (Թէյլըր) ամուսնութեան պատմութիւնը

վիպասանական է ։ Մի Իռլանդացի ազնուական՝ Լորդ Կոնգլըտոն՝ մեկնում է դէպի Արեւելք մի առաքելական գործով ։ Երկու Անգլիացիները բարեկամանում են իրար հետ։ Առաքելութեան ջանքերը յարաբերութեան մէջ են դնում նորան մի Հայ ընտանիքի հետ – կարծեմ Սվազցի —. որովհետեւ Հայերը ամեն ժամանակներում եւս արդիւնաւէտ միջնորդներ են եղել Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ ։ Ո՛րքան հեռու էր մեր Անգլիան այդ օրերում — շատ ամիսների ճանապարհորդութիւն ։ Այս՝ ժամանակաւոր բնակավայրի հեռաւորութիւնը , Արեւելքի սովորոյթը , նորա ժողովուրդի հրապոյրը — սոքա էին նորա մտքերի բարձրագոյն առարկաները ։ Ծրջապատող հանգամանքը գուցէ աւելի գեղածիծաղ դարձաւ երկու հայ կոյսերի մատաղ գեղեցկութեան շնորհիւ , որոնք , կարծեմ , նոցա Հայ բարեկամների զաւակներն էին ։ Երկու աղջիկները հարսնութեան խնդրուեցան Հնդկական զինւորականի եւ Իռլանդացի ազնուականի կողմից, եւ իմ մայրը աշխարհ եկաւ այսպիսի մի ամուսնութիւնից ։

Հայրս սիրահարուեցաւ նորան Բաղդադում, ուր նա յաճախ հիւր էր լինում Գնդապետ Թէյլըրին ։ Նորա եղբայրը , Եփրատի արշաւանքի պետը , ամուսնացաւ մեծ քրոջ հետ ։ Իմ հօր հարսանիքը տեղի ունեցաւ իւր նշանածի հետ առաջին անգամ հանդիպելուց շատ տարիներ յետոյ ։ Ցետաձգուեցաւ մինչեւ նորա առաջին մեկնումը Արեւելքից եւ հանդէսը կատարուեցաւ Եւրոպայում ։ Մի եւ նոյն ժամանակ իմ հայրը եւ իւր եղբայրը հիմնեցին մի առեւտրական գործ որ չյթայեց Անգլիան Բաղդադի հետ ։ Արագ առագաստանաւեր ծախու առնուեցան , բանելու Լոնդոնի եւ Պարսկական Ծոցի միջեւ. եւ խոշոր մակոյկներ հաստատուեցան Տիգրիսի վրայ ։ Սոքա շուտ տեղի տուին շոգենաւներին

թէ՛ Ովկիանոսի եւ թէ՛ եւ գետի վրայ։

Կարծեմ տեսակցել էք իմ քրոջ հետ. Նա եւ ես վերջին յիշածս ամուսնութեան միակ պտուղն ենք։ Աւելի մեղմանոյշ եւ խանդակաթ ծնողներ չգիտեմ ուրիշ երեխաներ արդե՛օք ունեցել են երբէք. Մանկութիւնից մինչեւ արբուն հասակը նոքա երկուքն եւս քաղցրացրին մեր կեանքը իրենց կեանքի ողջութեամբ, եւ այդ բոլոր ժամանակի ընթացքում ես ամենեւին չլսեցի մի անազնիւ բառ անցնէր իրարու միջեւ կամ դէպի մեզ։ Մենք, իսկապէս, շրջապատուած էինք սիրոյ մի մթնոլորտով, որի փայփայանքը տակաւին թռթռում է եւ տպաւորութիւնը մնում։

Իմ տրամադրելի ժամանակը եւ ձեր տրամադրելի ծաւալը զգուշացնում են ինձ յետ կենալու հոգեբանական վերլուծութեան ո եւ է փորձից։ Ես մեծացայ, ուրիշ շատ երեխաների պէս, Կենսինգտոնի Գարդընի անտառային բացատաններում, այլափոխուած ծովային այցելութիւններով։ Բարձր ծառերը եւ ծաղկաբեր կանաչը տակաւին պատկերանում են երեւակայութեանս մէջ, մինչդեռ ծովեզրի վրայ պարբերաբար արշաւող եւ փշրուելով նահանջող եռուն ալիքների խառնափնդոր աղմուկը երբէք չէ կարողանում բոլորովին չքանալ իմ զգայութիւնից։ Սիկայլին ծովամամուռի մեղմածուփ ծածանումները միախառնուում են երկնային բարդ բարդ ամպերի ձեւերին հետ իմ անամպ մանկութեան յիշողութիւնների մէջ։ Բայց մեր Լօնդօնի փողոցներն սահմանող միակերպ տուների անվերջալի շարքերը եւ նոցա ներսաբնակ ժողովուրդի թաղծալի, նիւթական կեանքը, թէպէտ եւ բնաւ չի ճանաչեցի մի աւելի լաւն, նկատելի շարժառիթ եղած լինելու են արտադրելու մելամաղձութեան մի հով որից երբէք զերծ չեղայ լիովին։ Ես խորթ զգացի

ինձ իմ շրջապատին հետ, որպէս հեռաստանից եկած մի ոգի։ Բայց ահա, արդէն կտրում ենք հոգեբանական դաշտը եւ մտնում արգիլեալ հողից ներս։(*)

Ծնողներս ամեն փոյթ եւ խնամ տարին իմ կըրթութեան թէ՛ մտաւորական եւ թէ՛ ֆիզիքական կողմերին։ Արդի լեզուներին վարժուեցայ մանկանոցում օտարազգի դայեակներից եւ դաստիարակուհիներից, եւ հնգամեայ հասակումս մի պզտիկ մատաղաձի—նուէր մեծ մօրիցս— բերուեցաւ դահլիճի մէջտեղ եւ նուիրուեցաւ ինձ, մեծ հրճուանք պատճառելով ինձ։ Կեանքիս մի մեծ մասը անց եմ կացրել ձիի վրայ, այս նկատմամբ նմանելով մեր նոր բարեկամ Բուրերին։ Տասնամեայ հասակումս ղրկուեցայ Ուինդսորի մօտակայք մի ընդարձակ գիշերօթիկ դպրոց, ուր տեղից յարմար ժամանակին անցայ դէպի Իտոն եւ Քէմբրիջ։ Բոլորովին սովորական մի տղայ եւ պատանի էի ես, բաւականին ժրաջան եւ խելօք եւ շատ դանդաղ զարգացման մասին։ Իմ ինքնագէտ իմացական կեանքը չսկսաւ գրեթէ մինչեւ քսանամեայ հասակս, երբ յանկարծ, որպէս մի կախարդի գաւազանի թափ տալովն մթազգացութեան թեփերը վայր թափուեցան իմ աչքերից։

Սորա պատճառն էր մի գիրք, որի մէկ ծայրից միւսը շողացին մի վերացեալ մթնոլորտի մէջ մի անձնաւորութիւն, մի բնաւորութիւն, մի միտք եւ մի օրինակ որոնք միանգամայն մագնիսացրին, կշռեցին եւ կրթեցին ինձ։ Գիրքը Պլատոնինն էր, ղեկավարը՝ նորա մոգական յունարէն նախադասութիւնները եւ անձնաւորութիւնը՝ նորա վարպետը, Սոկրատ։

---

(*) Մտքերի նուրբ ճշդութիւնները պահպանելու համար բացատրութիւնների ձեւերը ամենուրեք նոյնութեամբ են անդրադարձուած Հայերէնի մէջ։

Քէմբրիջում ընտիր մատենագիրների ուսումը ընդձեռում է վսեմ կրթութիւն որպէս փիլիսոփայական նոյնպէս գիտական ոճով։ Բայց իմ ժամանակ չկային մեծ ուսուցիչներ. եւ չգիտեմ թէ պէտք ունիմ ցաւելու, քանի որ գուցէ, բոլոր ուսուցիչներից ամենամեծը այսպէսով իմ հասողութեան սահմանի մէջ էր գրուած։ Երջանկութիւնը ձեռք չի բերուի ստանումով։ Այս էր այն դասը որ սահմանուած էի սովելու։

Զգում եմ թէ պարտիմ վերջ տալ այս ծանօթագրութեան։ Ես դուրս եկայ Քէմբրիջից առաջին կարգի դասական վկայականով, եւ ինչ որ աւելի կարեւոր է, երեւակայութեան միջոցաւ ձեռք բերուած մարդկային կեանքի մի առատ փորձառութեամբ։ Բացի այս իմ ճաշակները ա՛յնքան բազմակողմանի էին որ շփման մէջ ընկայ ուսանողական ընկերներիս ամենաայլազան խումբերի հետ։ Պաշտօն վարեցի «Միութեան» կամ Համալսարանի Գրական Ընկերութեան մէջ. իմ սերտ ընթերցանութիւնը քաշեց ինձ դէպի աւագ ուսանողների միջավայրը եւ ձիավարութեանս ճաշակը մղեց ինձ դէպի ազնուական երիտասարդութեան մթնոլորտը։ Մէկ նկատումով ես տարուբերւում էի կեանքի երեք աստիճանների միջեւ։ Եւ ծագումի հեռաստանէութեան ու սրտի թռիչների այն վաղահաս նկատումը ընկերանում էր ինձ տակաւին գործունէութեան բոլոր այդ շրջանի միջով։

Մինչդեռ տակաւին անշրջանաւարտ Քէմբրիջի ես մի առ ժամանակ անց կացրի Հայդէլբերգի համալսարանում, ունկնդրելով Կունո Ֆիշեր մեծ Պրոֆէսորի դասախօսութիւններին յունական փիլիսոփայութեան վըրայ։ Աստիճանս առնելուց յետոյ ուսայ իրաւագիտութիւն եւ մտայ հօրս պաշտօնատեղին, ուր առեւտրական վարժութիւնն եւ ունակութիւնը բոլորովին ար-

մատացան իմ մէջ։ Ես սովորեցի եւ ձեռք առի մեր գործերի կառավարութեան ղեկը Արեւելքի հետ, եւ գրեթէ բացառապէս այս հետամտութեան եւ Արեւելեան ճանապարհորդութեան նուիրուեցան կեանքիս տարիները որոց վրայ այժմ անձկակարօտ յետ եմ նայում։ Տաժանելի եւ անդադրում աշխատութեան տարիներ եղան նոքա. եւ եթէ նոցա չքաղխուեցաւ երիտասարդական վայելքների բոլոր լիութիւնը, նոքա օրհնուեցան ջերմ բարեկամութիւններով եւ սիրով, որը, ինչպէս բանաստեղծն է ասում, բարեկամութեան ճակատի գոհարն է։ Բայց ինչ որ եւս աւելի կարեւոր է նոքա չեղան անպտուղ, որպէս մեքանի եւ թուղթի չինողները կարող են վկայել։ Գալով պտուղի որպիսութեանը դա բոլորովին տարբեր խնդիր է, որի վերաբերմամբ դժուարանում եմ մի հաւաստի պատասխան տալ ես ինքս, բայց նորա մէկ մասը, որ կայանում է կանոնաւոր եւ համադաս ճանաչողութիւն մատակարարելուն մէջ կարող է գէթ նկատուել իբր արդիւնաւոր։

Հաւատացէք ինձ, Սիրելի Պրն. Տօնապետեան

Ձերդ անկեղծօրէն

Հ. Ֆ. Բ. Լինչ

* * *

Երկու գլխաւոր կէտեր տարտամօրէն նշողում են «Արմենիա»ի Հեղինակի գրական մտքին դարձուածներով արտայայտուած նամակից—նորա արենակցական ծագումը, եւ ներքին տենչը ծառայութիւն մատուցանելու այն երկրին եւ ազգին որ տեղից սերած է իւր մօր մայրը։

Գնդապետ Թէյլր, Բաղդադի Անգլիական ներկայացուցիչը, ամուսնանում է մի Հայ աղջկայ հետ։ Հեղինակի հօրեղբայրը՝ ծովակալ Լինչ՝ եւ հայրը Բաղդադի մէջ սիրահարւում են Թէյլրի աղջիկների հետ, եւ, այսպէս, Հայ մօրից ծնած երկու քոյրեր պսակւում են Իրլանդացի երկու եղբայրների հետ։

Հեղինակը զգում է թէ արեւելագէտ երկրախոյզների եւ ուսումնականների պաշտպան Թէյլրը չպէտք է մեռնէր առանց գրական աշխատութիւն յետ ձգելու գէթ իւր կնոջ երկրի եւ ազգի մասին։

Միւս կողմանէ մանուկ հասակում Հայազգի տատից նուէր ընդունած ձիի յիշատակը, երեւի, մի այլ եւ խորհրդաւոր կաղապար առաւ խելահաս երիտասարդ թոռան մտքի մէջ։ Եւ մի բնազդ, երեւի, դրդում էր նորան ձիով այցելութեան դուրս գալու դէպի իւր տատի հայրենիքը եւ արտադրելու համար մի ճշմարիտ հրաշակերտ։

# Հ. Ֆ. Բ. ԼԻՆՉ

## ԵՒ

## ԻՒՐ ԳՈՐԾԸ

Դեռ ոչ մի ժամանակ սորա նման կատարեալ եւ խորաքննին գործ չէր լոյս տեսած մեր երկրի նկատմամբ։ Սա մի փառաւոր յիշատակարան է ոչ միայն ուղեւորական նկարագրութեան, այլ նա՛ եւ գիտնական ուսումնասիրութեան։ Գրքի ամեն մի կէտից որոշակի երեւում է թէ Հեղինակը շատ մեծ աշխատութիւն է թափել միատեղ բերելու, համաղասելու եւ մաղից ացնելով զատելու իւր նախորդների հետազօտութիւնները։ Երբ այսպէս գրական տեսակէտից լիովին ընդելացել է երկրի հետ, միայն այնուհետեւ ձեռք է առել ուղղակի անձնապէս խուզարկութիւններ կատարելու ծրագիրը՝ երկու անջատ ճանապարհորդութեամբ դէպի Հայաստան։ Առաջին անգամ 1893 ի Օգոստոսից մինչեւ 1894 ի Մարտ ամիսը իւր զինուորական ազգական Հ. Բ. Լինչ հազարապետի հետ, եւ երկրորդ անգամ 1888 ի Մայիսից մինչեւ Սեպտեմբեր հմուտ երկրաբան պարոն Սաուալդի հետ։ Եւ դուրս բերուած արդիւնքը, ամեն տեսակէտից, այնպէս զմայլելի է որ անգլիական լեզուին տեղեակ ընթերցողը պիտի համամիտ

դառնայ Հեղինակին խորհելու թէ նորանկարագրած երկիրն եւ ժողովուրդը իսկապէս արժանի են ամենաբարձրր հետաքրքրութեան, եւ պիտի բացականչէ նորա հետ միասին թէ «արդարեւ տարօրինակ է որ այսպէս պատուական մի երկիր մնացել է հանգչած ստուերի մէջ այսքան երկար դարերով, եւ որ մինչեւ անգամ Ցոյն եւ Լատին մատենագիրների պատկառելի գործերը ի յայտ են բերում լոկ մի աննշան ծանօթութիւն նորա յայտարար նկարագրի մասին»: Պարոն Լինչի գործը նմանում է մի հիանալի պարտէզի որի անհամար չքնաղ ծաղիկները մի առ մի հաւաքուած են հազուաթափանց հովիտներից: Եւ նորա իսկական վայելչութեան հրապոյրը կարելի է զգալ միայն բուն գրքի ընթերցանութեան մէջ: Փոքր Ասիայի պատմութեան հռչակաւոր մասնագէտը՝ Պրօֆէսոր Ռամզի՝ բնաւորոչում է Պարոն Լինչի գործը հետեւեալ բառերով. «Այս հատորների նկատմամբ հասկացողութիւն տալ ուրիշին — այդ անկարելի է, միայն կարելի է արտայայտել այն տպաւորութիւնը որ նոքա գործում են ընթերցողի վրայ»:

Անգլիական լեզուին անգիտակ լինելու պատճառաւ, Հայ հասարակութիւնը ուրեմն զրկուած է գրեթէ բացարձակ անկարելիութեան հանդէպ առնելու մասին իւր երկրին նուիրուած այս հսկայական աշխատութեան իսկական ճաշակը: Այսուամենայնիւ, ներկայ տողերի նպատակն է եղել մի կերպ դիւրութիւն ընծայել դէթ մի աղօտ գաղափար կազմել տալու այդ հատորների որպիսութեան վերաբերմամբ:

# ՀԱՏՈՐ Ա.

# ՌՈՒՍԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՐԿԻՐԸ

Սեւ ծովի ափերից դէպի Արարատ դալարուող լեռներ անջատում են Հայաստան երկիրը երկու լայնածաւալ մասերի։ Հարաւ-արեւմտեան մասը այսօր գտնւում է Օսմանեան լծի տակ, մինչ հիւսիս-արեւելեանն ենթակայ է Ռուսական աշխարհակալութեանը։ Ռուսական սահմանագիծը սկսում է Ճորոխի բերանից մի քանի մղոն դէպի արեւմուտք, եւ լեռների մէջից օձապտոյտ դարձուածներով անց է կենում Արդուինի, Ճորոխի ներքին ճիւղերի, Օլթիի, Թրքա-Հայաստանի սահմանագլուխ՝ Ջաքար Դաղի, Արաքսի, Քէօսէ Դաղի եւ Աղրի Դաղի լեռնաշղթայի բուն միջով մինչեւ Մեծն Արարատ, որի ետեւի կողմից վերուղղւում է դէպի Արաքսի ափերը՝ ճիշտ Խոր-վիրապայ վանքից մի քիչ հարաւ։ Այս կէտից Արաքսը կազմում է սահմանագիծ Ռուս եւ Պարսիկ տէրութիւնների միջեւ մինչեւ Կուրի հետ խառնուելու մօտակայքը։ Այս բոլոր գետերն ու լեռները կարելի է նկարագրծուած տեսնել Հեղինակի առաջին հատորին կից մեծադիր քարտեզի վրայ։ Ռուսական Հայաստանի տարածութիւնն է 19,070 անգլ. մղոն։

Հայաստանի սարերի այն ծիրն որի վրայ այսօր սփռւում են Ռուսական Արծիւի անհեղ թեւերը ո՛չ նոր ստացուածք է ո՛չ էլ մէկ անգամեայ յաղթանակի պտուղ։ Անցեալ դարի սկզբին Ռուսիա այնտեղում ոտքի կռուան ճարեց շնորհիւ Վրաց թա-

դարերի կամաւոր հաճութեան, որին իբր հետեւանք 1802 ին Վրաստանը զրկուեցաւ իւր ինքնօրէնութիւնից՝ դառնալով Ռուսական սեփականութիւն։ Այս դէպքը արդիւնք էր մահմեդական պետութիւնների անմտութեան որոնք յուսահատութեան դուռն էին հասցրել իրենց հպատակ եւ հարեւան քրիստոնեայ ազգերին։ Այս հանգամանքը մեծապէս նպաստեց Հիւսիսային Կայսրութեանը արագօրէն ընդարձակելու իւր սահմանները՝ պատերազմ պատերազմի ետեւից մղելով։ Ղարաբաղը առնուեցաւ Պարսկաստանից 1813 ին, եւ Երեւանեայ կարեւոր խանութիւնը 1828 ին։ Իսկ Թիւրքիայից՝ Ախլցխայի գաւառը 1829 ին, եւ Կարսայ բերդըն ու նահանգը 1878 ին։ Երեւելով իբր ազատարար քրիստոնեայ ժողովուրդների, եւ օգտուելով նոցա աջակցութիւնից, Ռուսիա յաջողեց յառաջացնել իւր աշխարհակալութիւնը Արաքսի ափերից անդին, մինչեւ Էրզրումի դուռը, եւ այսպէս իւր համար ձեռք բերաւ ամուր սահմաններ որոց մէջ ներփակւում է Հայաստանի նուիրական Լեռը, նմանապէս եւ բարձրագոյն հոգեւոր կառավարութիւնը որի առջեւ գլուխ է ծռում Հայ ազգը։

Ռուսական Հայաստանի բոլոր նահանգները վերաբերում են Կաւկասի մեծ վարչային դրութեան, մէկ ընդհանուր կառավարչի հսկողութեան տակ։ Նախապէս այս կարեւոր պաշտօնի համար սովորաբար նշանակւում էր արքայազն իշխաններից մէկը որ, կռթնած իւր անձնական բացառիկ իրաւասութեան վըրայ, կարողանում էր ուղղակի գործադրել իւր յարմար դատած ձեռնարկները, յաճախ ի նպաստ ժողովրդին։ Այժմ այդ պաշտօնը տրւում է բարձրաստիճան զինըուորականներից մէկին, բայց նորա վարչութիւնը բոլորովին կապուած է Ս. Պետերբուրգից գործող բիւրօկրատիկ մեքենայի հետ։ Նա, այնուամենայնիւ, ներկայանում է իբր քաղաքային եւ զինուորական գլխաւոր հեղինակութիւնը Կաւկասում, իւր իշխանութեան տակ ունենալով տասն եւ երկու նահանգ-

ներ որոնցից հինգը վերաբերում են Հիւսիսային Կովկասին։ Իսկ Թիֆլիսի, Երևանի, Կարսի, Քութայիսի, Գանձակի, Բաքուի և Զաքաթալայի նահանգները պատկանում են բուն Կովկասին։ 1897 ին այս եօթն նահանգների ազգաբնակութեանց ընդհանուր գումարը հինգ միլիոնից ճիշդ մի քիչ պակաս էր, և Հայերը կազմում էին այդ թւի գրեթէ մէկ հինգերորդ մասը։ Միւս ազգերը բաղկանում են Վրացական տոհմի այլևայլ ճիւղներից և Թաթարական ցեղի գաղթականներից։ Ազգաբնակութեան այս տարրերը մեծ մասամբ ապրում են Հայկական սարաւանդների հիւսիսակողմեան յարակից երկրում։ Նոյն իսկ Կովկաս լեռների գօտին, հիւսիսային և հարաւային Կովկասների այս սահմանագիծը, ուր անհամար խորշերի մէջ ամփոփւում է ցեղերի մի երկար ցանկ որոց անունները դժուարարտասանելի են և որոց լեզուները խորհրդաւոր։ Հայ տարրի կարևորութիւնը պէտք է չափել ոչ այնչափ իր թւերի ուժով, որչափ իր համերաշխութեամբը՝ բաղդատած այն երկպառակութիւնների հետ որ գոյութիւն ունեն միատեղ ապրող միւս ժողովուրդների միջև։ Հայերը շատ քիչ են բաժնուել իրարուց կրօնական վէճերով. Հռոմէական Կաթոլիկները պարզապէս մի բուռն հասարակութիւն են կազմում լուսաւորչականների հոծ շարքին մէջ, և լուսաւորչական Եկեղեցին ոչ միայն ազգային գոյութեան խորհրդանշանն է այլ նաև ազգային յոյսերի ամուր բերդը։ Թաթարները, որ թւի կողմից մի քիչ գերազանցում են Հայերին, անջատուած են իրար մէջ Շիի և Սիւննի կրօնական սաստիկ հակակրութեամբ, մինչդեռ Վրացիք, որ ամէնը միասին մէկ միլիոնի չափ են, գտնւում են փոփոխման շրջանի մէջ իրենց հին աւատական դրութիւնից դէպի մի նոր և աւելի չէնք չնորհք ընկերային դասաւորութիւն։ Բայց նոցա Եկեղեցու միացումը Ռուսիոյ Օրթոդոքս Եկեղեցու հետ, այլ և ս, զրկել է Վրացիներին եղբայրակցական զգացումի այն բնական

վերախմբող կէտից որի վրայ հիմնուած է իւրաքան-չիւր անջատ հասարակութեան ցեղային պարծանքի գիտակցութիւնը։ Եթէ Ռուսները մի օր տէր դառ-նան Թուրք կայսրութեան Հայկական նահանգներին, կուլտուրի ազգայնականութեան թէ՛ ամենաբազմաթիւ եւ թէ՛ ամենաուժեղ տարրը պիտի բաղկանայ Հայ ցեղից։

Հայերը լինելով որպէս երկրագործ, նոյնպէս եւ առեւտրական ու արուեստաւոր ժողովուրդ, ցրուած են իրենց հայրենիքի բնական սահմաններից դուրս դէպի արհեստի բարգաւաճող կենդրոնները, եւ ձեռնամուխ են եղել արդիւնագործութեան ամեն ճիւղերի մէջ։ Քաղաքային ազգաբնակութեանց համար նոքա ներկա-յանում են իբր թանկագին ու բեղմնաւոր մի տարր։ Բայց, երբ գնալով դէպի հարաւ անց ես կենում բուն Կաւկասը նոցա լեռնագաւառներից անջատող սարերի միւս կողմը, միայն այն ժամանակ իսկապէս զգում ես թէ ոտքդ դրած ես Հայաստանի հողի վրայ։ Այն բո-վանդակ տարածութիւնը որ ընկնում է Ալէքսանդրո-պօլի, Ախլցխայի եւ այս կէտից Ակն քաղաքի, Խար-բերդի եւ Վանայ շրջագծի միջեւ, եւ որին դեռ եւս կարելի է Հայաստան անունը տալ, անհամեմատ ա-ւելի շատ կրում է Հայ ժողովրդի ուրոյնութեան դը-րօշմը քան մի ո եւ է այլ ցեղի։ Այս ամբողջ տարա-ծութեան վրայ գրեթէ չկայ հեռաւոր մի հովիտ որ դէպի իւր ծոցը չքաշէ ուխտաւորների ջերմեռանդ խումբեր երկրպագութիւն անելու համար այնտեղ կանգնած վանքերում որոնց հիմնարկութեան թուա-կանները սկիզբն են առնում Հայ թագաւորների ժա-մանակից, եւ որոնք ժողովուրդի երեւակայութեան վրայ դեռ կենդանի են պահում անցեալի պատմութիւ-նը։ Արգաւանդ երկիրը, մեծագոյն մասամբ, մշակում է հայ շինականը որի մրջնաբունի նմանող որջերը հազուադէպ են այժմեան քաղաքակիրթ երկիրներում։ Այսուամենայնիւ, աշխարհի այդ խուլ անկիւններում տեսնուած այլ եւ այլ քիչ շատ կատարելագործեալ մե-քենաները կամ պատրաստուած են Հայ արհեստաւորի

ձեռքով եւ կամ հայթայթուած Հայ վաճառականների միջոցաւ։ Հայկական սարաւանդի համօրէն մակերեւոյթի վրայ, Պարոն Լինչի տեսակէտով, թէեւ կողմից Հայ ժողովուրդի ներկայութիւնը գրեթէ երկու անգամ աւելի զգալի է քան ուրիշ ոեւ է ցեղի ներկայութիւնը։ Բարբառը որ ամենից աւելի ստէպ հնչում է ականջին, Հայկական մի տեսակ կոշտ բարբառն է, աւանդութիւններն ու պատմական յիշողութիւնները որոնք յարուում են Բնութեան մեծ Գրքին ունեն, առաւելապէս, Հայկական ծագում։

# ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹԻՒՆ

Հայութեան ամրոցը, այսինքն, այն վայրը ուր նորա ամեն տեղից աւելի բազմաթիւ են, նախկին Շիրակի հարուստ երկիրն է որի մէջով Արփա-Չայը յառաջ է ընթանում միանալու Արաքսի միջին հոսանքին հետ։ Այդ տեղ է կանգնում Ալեքսանդրոպօլի բերդը եւ այժմեան քաղաքը որի բնակիչները բաղկանում են գրեթէ միմիայն հայերից։ Մի քիչ դէպի հարաւ, դարձեալ այդտեղ է որ հանգչում են հին Անի քաղաքի նշխարները, եւ նորա ամայի տեսարանը տակաւին հանդիսանում է իբր անբարբառ վկայ Հայ թագաւորների պետական չքեղութեանը ու փառքին։ Դէպի հիւսիս՝ Ախալքալաքի շրջակայ բարձր դաշտերը կէտադրուած են Հայկական գիւղերով, մինչդեռ դէպի հարաւ, Արաքսի հովիտը Կաղզուանից մինչ Երեւան պարունակում է Հայ ազգաբնակութեան մի հոծ բազմութիւն, մանաւորապէս Էջմիածնի գաւառում։ Սեւանի արեւմտեան ծովեզրի վրայ՝ Նոր-Բայազէտ քաղաքի եւ գաւառի մէջ ապրողները մեծ մասամբ Հայեր են։ Միւս կողմանէ, Արաքսի հովիտի արեւելեան

բաժինը, սկսեալ Օրդուբադ քաղաքից, գրաւուած է Թաթարներով, որոնք Հայերից ոչ պակաս քանակութեամբ սփռուած են Երեւանի ընդարձակ եւ կարեւոր նահանգապետութեան մէջ։ Պարոն Լինչ մեր միտքն է բերում գաղթականութեան մեծ հոսանքները որոց, գլխաւորապէս, վերագրելու է Ռուսաստանի Հայ ազգաբնակութեան զգալի աճումը։ Հաշիւ է արուած թէ ոչ նուազ քան տասն հազար ընտանիք Էրզրումի գաւառից հետեւեցին Ռուսական զօրքերին 1829ին, մօտաւորապէս քառասուն հազար եւս ընկերացան միեւնոյն բանակին Պարսկաստանի սահմանակից գաւառներից երբ Ռուսական զօրքերը ետ էին քաշւում Թաւրիզից Թուրքմանչայի հաշտութեան պայմանագրի համեմատ։

Հայերից յետոյ Կաւկասի ազգաբնակութեան ամենաստուար տարրը կազմում են Թաթարները որոնք Պարսկական սահմանից սփռւում են դէպի Արաքսի հովիտն ի վեր, եւ իրենց գաղութներով ծածկում լեռնոտ տարածութեան արեւելեան մասը եւ բովանդակ Ղարաբաղի գաւառը։ Կաւկասի Թաթարները պատկանում են թրքական ցեղի կռուասէր ճիւղին որոնք՝ Սելջուկների երեւման ժամանակից մինչեւ տասնեւութերորդ դարը, քաղաքական հանգամանքներից պարբերաբար քշուել են այս երկիրը Պարսկաստանի հիւսիսային կողմերից, այսինքն, Ատրպատականի նահանգից եւ Կասպից ծովի արեւելեան ափերից։ Նոցա լեզուն տակաւին տիրապետող բարբառն է Կաւկասի եւ Հայկական սարաւանդի սահմանների վրայ։ Ռուսական Հայաստանի շրջանակում նոքա վերաբերում են գրեթէ ամբողջովին Շիի աղանդին. եւ, բացի Պարսիկներին կրօնակից լինելուց իրենց երակների մէջ կրում են Պարսկական արիւնի խառնուրդ։ Դեռ շատ չէ անցել այն ժամանակից երբ նոցա ցեղապետները Հայաստանում կազմեցին Պարսկական խանութիւն, Պարսիկ սարդարների իշխանութեան ներքեւ։ Այդ միջոցին ծաղկած հարուստ գերդաստանները մին-

չեւ այսօր տակաւին ընդարձակ պարտէզների սեփականատէրեր են եւ ապրում են իրենց կալուածի հասոյթներով։ Քաղաքային կեանքի անշուք ասպարէզներում նոքա գերազանց են հանդիսանում իրենց ճարպիկութեամբ Արեւելքին յատուկ ցեխոտ արհեստի բոլոր մեթոդների մէջ. ծեփ անող, պատ շարող, բըրուտ եւ լաւ մասնագէտներ են ոռոգման գործերում։ Մանրավաճառների, փերեզակների եւ պտղավաճառների մեծագոյն մասը Թաթարներից են, սորանցից են նոյնպէս եւ պարտիզպաններն ու կառք քշողները։ Այս երկրում նոքա անց են կացել վրանաբնակ վիճակից, եւ այժմ յաջող հողագործ մշակներ են։ Երեւան քաղաքում, ուր նոցա թիւը հաւասար է Հայերի թիւին, հարուստ վաճառանոցներից շատերը գըտնւում են Թաթար ձեռքերի մէջ։ Թաթարները, պէտք է ասել սակայն, խիստ քիչ են օգտուել դաստիարակութեան պատեհ առիթներից ինչ որ Ռուս կառավարութիւնը դիւրամատչելի է արել նոցա համար, եւ մեր Հեղինակը իրեն մեղք չէ համարում մարգարէանալու թէ, եթէ արմատական փոփոխութիւն չուտով չկատարուի այս մասին, նոքա կամաց կամաց պիտի ասպարէզից դուրս քշուեն Հայերի ձեռքով, եւ պիտի թիւով եւս նուազեն տարուէ տարի։

Ռուսական Հայաստանի մնացեալ բնիկ ժողովուրդներն են Քիւրդերը, Ղարափափաղները, Թիւրքերը, Յոյները, եւ Վրացիները, որոնց ամենի վրայ մեր Հեղինակը առանձին առանձին ուսումնասիրական ակնարկ է ձգում։ Քիւրդերը Ռուսական հողի վրայ դեռ եւս յետ չեն քաշուել իրենց վրանաբնակ սովորոյթներից, եւ տարւայ եղանակին համեմատ նոքա չւում են դէպ հիւսիս մինչեւ Բաթումի մօտակայ գաւառները, բայց նոցա գլխաւոր արօտավայրերը գտնւում են Թրքական սահմանի վրայ եւ Ղարաբաղում։ Կաւկասեան Քիւրդերի ամբողջ գումարը հասնում է հարիւր հազարի։ Ղարափափաղները իսկապէս ներկայացնում են մի խառնածին ցեղ, եւ իրենց գործած սեւ գա-

ռան–մորթի գլխարկների պատճառաւ կոչւում են Ղարափափաղ — «Սեւ–Գլխարկաւոր»։ Նոքա խիստ սակաւաթիւ են եւ ապրում են միմիայն Կարսի սահմաններում. Նմանապէս, գրեթէ միայն այստեղ կարելի է պատահել զուտ Թիւրքերին, որոնք եւս մի առանձին կարեւոր թիւ չեն կազմում։ Ցոյները ունեն զանազան գիւղեր, մանաւանդ Կարսի շրջանում։ Հեղինակը վկայում է թէ իւր տեսած Ցոյն գիւղերը բարգաւաճ ընթացքի մէջ էին եւ կանանց գունագեղ զգեստներն ու զարդարանքները աւելի հանգստաւէտ եւ աւելի ակնահաճոյ են քան Կաւկասի ուրիշ ո եւ է տեղում։ Այս Ցոյների խօսակցութեան լեզուն Թիւրքերէնն է, եւ այժմ նոքա հետամուտ են վարժուելու Ռուսական լեզուին։ Իրենց յեղյեղուկ բնաւորութեան շնորհիւ նոքա ընդունակ են, ի պահանջել հարկին, դիւրութեամբ փոփոխել իրենց ազգայնութեան կեղեւը, բայց ոչ միջուկը։ Վարպետ ականահատներ եւ ճամբայ շինողներ են։ Թոփորեւան գետի հովիտն ի վեր մինչեւ Ախլքալաք երկարող գեղեցիկ խճուղին Ցոյն բանւորների ձեռքի արդիւնքն է։ Վրացիները ամփոփուած են միայն Կուրի հովիտում։ Շատ տեղերում այս ցեղը ընդունել է իւր երակների մէջ Թրքական արիւնի այնպիսի ահագին խառնուրդ որ բնակիչները, թէ եւ պաշտօնապէս դասաւորուած իբր վրացի, իրենք իրենց անուանում են Թուրք, եւ վերաբերւում են մահմեդական կրօնքին։ Պարոն Լինչ սոցա գեղերում նշմարել է խիստ անբարեկարգութիւն, եւ քայքայման ու ապականութեան արտաքին նշաններ։

# ԸՆԿԵՐԱՅԻՆ

Երկրի ընկերական հանգամանքի մասին խօսե-
լիս մեր հեղինակը յայտնում է թէ չկայ մի այլ պա-
րագայ որ այնչափ աչքի զարնէ որչափ այն կատար-
եալ պառակտումը որ տիրում է Կովկասի տարբեր ցե-
ղերի միջեւ։ Թէպէտեւ նոքա ապրում են կողք կողքի,
սակայն համայնական հարցերի վերաբերմամբ նոցա
մէջ չկայ ոեւէ համերաշխութիւն. ընկերային, նիւ-
թական եւ բարոյական սկզբունքների բնական հա-
մաձուլման ոգին բոլորովին բացակայ է նոցա բնա-
ւորութեան միջից։ Հայաստանի ինչպէս Թրքական
նոյնպէս եւ Ռուսական նահանգներում եղել են դէպ-
քեր ուր, շահի ակնկալութեամբ կամ բռնութեան
տակ, մի մասնաւոր գաւառի ժողովուրդը ընդունել է
մահմեդական կրօնքը մահմեդականութեան հալածանք-
ների ժամանակ, եւ, խնամիական կապերով եւ այլ
տարբեր պատճառներով, կուլ է գնացել տիրապետող
տարրի մէջ։ Բայց այդ կարգի դէպքերը միւս կողմա-
մանէ պարզապէս սաստկացրել են ցեղային խտրակա-
նութեան բնազդը, եւ յառաջ բերել անհաշտ խոր-
թութիւն։ Նոքա պատճառ են դարձել որ գոյութիւն
ունեցող նախապաշարմունքները փոխարկուեն թշնա-
մութեան եւ աւելի յետ են մղել քան թէ առաջ քշել
ոեւէ տրամադրութիւն դէպի համաձուլումն։ Երբ Ռուս-
իա երեւեց բեմի վրայ, պէտք էր ակնկալել թէ գոնէ զա-
նազան պաշտամունքներին եւ ազգութիւններին պատ-
կանող քրիստոնեաների միջեւ իրար մօտենալու փոքր
ինչ ցանկութիւն զգալի պիտի լինէր ըստ ինքեան։
Իրականութիւնը ցոյց է տալիս թէ ընդհակառակն է
տեղի ունեցել։ Հին կրօնական անդունդների միջեւ
վեր է բարձրացել մի աւելի հսկայական պարիսպ — Ռու-

սիոյ Օրթօդոքս Եկեղեցին։ Ռուսի եւ Հայի ամուսնացման պարագային, այս եւ նմանօրինակ խառն միութիւնից եղած զաւակները ռուսական օրէնքով պէտք է դաստիարակուեն ու մեծանան Ռուս Օրթօդոքս հաւատքի մէջ։ Տարբերութիւն չէ անում թէ հայրն կամ մայրը արդեօք պաշտում են այդ հաւատքը թէ ոչ։ Այս ակամայ հաճութիւնից ծնունդ է առել միայն ակամայ հակակրութիւնն։ Կովկասի հին այլացեղ հաւաքածոյի վրայ աւելացել են Քրիստոսի երջանիկ հօտի երկու նորեկ նմուշներ—Մալականներ եւ Դուխոբորները։ Այս աղանդաւորների թէ՛ մէկի եւ թէ՛ միւսի դէմ չինական անարդարացի պատնէշ կանգնուած է իրենց հարեւան բնիկ ցեղերի կողմից։ Պարոն Լինչ ցաւալի է գտնում այս արուեստական պատնէշի ներկայութիւնը։ Որովհետեւ այդ աղանդաւորները, պատկանելով Ռուս չինականի ազնիւ տարրին, կարող էին օրինակելի եւ օգտաւէտ լինել իրենց հարեւան Հայ գիւղացիներին։ Բարոյական ոյժի մասին նոքա գերազանց են Հայերից, եւ նոցա երկրագործական մեթոդները յառաջ կարող էին բերել տնտեսական յեղափոխութիւն որին այնքա՛ն պէտք ունին Հայերը այդ երկրում, եթէ միայն տեղացիները տրամադրուէին հետեւել այդ մեթոդներին։ Մինչեւ ներկայ օրս, սակայն, նոցա օրինակը մնում է արհամարուած։ Նոցա կոկիկ քարաշէն տուները, ընդարձակ վառարանները, արօրներն ու դաշտային գործիքները գրգիռ չեն տուել Հայերին մէկդի ձգելու իրենց պապենական փթտած սովորոյթները։ Այս անպտուղ երեւոյթի պատճառը մասամբ պէտք է վերագրել աղանդաւորների գաղթման ձեւին։ Իրենց Հայրենի երկրից հալածական այդ Ռուս գիւղացիները եկան այստեղ հաւաքաբար, իրենց նախկին՛ դրկեցների հետ, իրենց կիներով ու զաւակներով եւ տնային բոլոր կահ-կարասիներով։ Նոքա մնացին համախմբուած միասին եւ իրենց նոր բնակութիւնները յարդարեցին հանգստաւէտութեան ինքնագոհ պայմաններով

այնպէս որ ո՛չ նիւթական պահանջները եւ ո՛չ ընկերային յարաբերութեան շարժառիթները կարող էին դուրս մղել նրանց իրենց սեփական շրջանից դէպի Հայ շինականի միջավայրը։

## ՔԱՂԱՔԱԿԱՆ

Անցնելով իւր նիւթի քաղաքական կողմին, մեր հեղինակը նկարագրում է այն վարչային դրութիւնը որի ներքեւ ապրում են Ռուսական Հայաստանում հաւաքուած այլազան ցեղերը։ Դժգոհութեան ներկայութիւնը մի քանի շրջանակներում կարելի է վերագրել տիրապետողների փոփոխման անխուսափելի հետեւանքին։ Հին Թրքական իշխանութեան Մահմեդական տարրը զգում է իւր անկեալ դիրքի նուաստութիւնը։ Նոցա Թրքասիրական ձգտումները եւ արենական կապերը գրգռում են, մի կողմից, Ռուս կառավարութեան կասկածը, եւ միւս կողմից, գրգռում նրանց ամենաթեթեւ ճնշման դէպքերում կտրել սահմանը եւ մտնել Թրքա-Հայաստան, Նոյն իսկ Հայերը, որոնք գլխաւոր նեցուկ էին Ռուսաստանին նորա թ՛է Պարսկական եւ թէ Թրքական պատերազմներում, որոց հայրենիքը սրբուել հողի հետ հաւասարուել էր ճակատամարտների փոթորիկներից, եւ որոց մտքի մէջ դեռ կենդանի է մինչեւ իրենց Սրբավայրի՝ Էջմիածնայ Վանքի՝ պարիսպների տակ տարածուած կռիւների յիշատակը, այդ Հայերն իսկ աւելի հակուած են մոռանալու այն երախտագիտական զգացումները որ պարտական են Ռուսաստանին, եւ աւելի սիրում են միտք բերել այն ծառայութիւնը որով Ռուսաստանը պարտական է իրենց։ Հայերից ոմանք այնքան յառաջ են գնում այս համոզման մէջ որ Ռուսական տիրապետութիւնը համարում են մի նոր եւ աւելի դժնդակ լուծ, Միւս կողմանէ, Վրացի

ցեղերը, որոց թագաւորութիւնը Մահմեդական ազգերի հալածանքներից բռնադատուած դիմել էր արտաքին օգնութեան, տակաւին չէին մոռացել իրենց քաղցր յոյսերի վրիպումը, ըստ որում նոքա ակնկալում էին թէ Ռուսական միջամտութիւնը աւելի մի տեսակ հովանաւորութեան ձեւ պիտի առնէր, այլ ոչ թէ Վրացի տարրերը իրենց ինքնօրէն վարչութեամբ միասին պիտի համաձուլուէին Ռուս վարչութեան մէջ։ Պարոն Լինչի կարծիքով, սակայն, այս տեսակ տըրտունջներ յառաջ են գալիս ամէն անգամ որ մի օտար պետութիւն հաստատւում է մի նոր հողի վրայ, թէկուզ վարչային լաւագոյն կազմակերպութեամբ։ Այսպիսի պարագաներում մարդկային բնութիւնը աւելի հակամէտ է հաշիւ առնելու կրած վնասը քան ձեռք բերած շահը։ Տարակոյս չըկայ թէ, յորմէհետէ Ռուսիա բոլորովին նուաճեց Կովկասին, կարգ եւ խաղաղութիւն է պարգեւուել այդ երկրին, եւ մարդէակի կեանքն ու սեփականութիւնը գտնւում են ապահով վիճակի մէջ, առաջին անգամը լինելով երկար դարերից ի վեր։ Վրացի երեխայք այլեւս չեն ծախւում իբր ստրուկ, եւ մէկ հաւասար միջին դասակարգ է ձեւացել այդ ժողովուրդից որի անհատական առնչութիւնները իրարու հանդէպ մի կողմից ազնուականի եւ հակառակ կողմից ստրուկի առնչութիւններ էին նախապէս։ Եթէ այժմեան օրս հիւսիսային Հայաստանում Հայ գիւղացին բուն իսկ իւր համար է հնձում իւր սերմի ծնունդը, եւ անհանդարտ Քիւրդը հասկանում է հասարակաց անդորրութիւնը խանգարելու վտանգը՝ լուրջ ակնածանք ցոյց տալով դէպի օրէնքը՝, պէտք չէ ուրանալ թէ Հայ ժողովուրդը Ռուսաստանին է որ պարտական է իւր օձիքի ազատումը երկարատեւ դարերի այդ կամայականութիւնից եւ անիշխանութիւնից։

Պարոն Լինչ գրում է սակայն թէ, եթէ Ռուս կառավարութիւնը սահմանափակէր իւր ոյժը հանրային կարգի հաստատման եւ պահպանման սիրելի ու յուսադրեալ պաշտօնին մէջ որպէս պաշտպան՝ նա-

խապէս Թարթափուն մի երկրի, սրանով նա պիտի ստանար Հայերի անքրթմնջելի երախտագիտութիւնը. մինչ ի լրումն ժամանակին նոքա պիտի անսայթաք ընթանային հաւատարիմ շաւիղով, եւ բուն իսկ ինքնաբուխ յօժարութեամբ իրենք միայնակ պիտի մարտնչէին այնպիսի անուղղայ տարրերի դէմ որ դեռ եւս կարող էին ընդիմանալ օրէնքի լուծին : Ռուս կառավարութիւնը, սակայն, մտադիր չէր մնալու իւր զուտ պաշտպանի դերում, այլ շուտ թէ ուշ պիտի ձեռք առնէր համաձուլման իւր անսասանելի քաղաքական դրութիւնը : Ռուսերը ըստ ինքեանք առեւտրական ժողովուրդ չեն, եւ սիրայօժար պիտի թողտային Հայերին ղեկավարելու իրենց բնիկ երկրի վաճառականութիւնը եւ զարգացնելու նորա ահագին հարստութեան միջոցները, բայց միայն մէկ պայմանաւ նոքա պատրաստ էին քաջալերել այս տեսակ մի գործունէութիւն. պայմանը այն էր, որ իրենց նոր հպատակները դառնային Ռուս, եւ որ նորանուաճ երկիրը կցուած լինի Ռուս կայսրութեան հետ ոչ միայն զէնքի միացման բռնի թելովը, այլ նաեւ բուն եղբայրակցական զգացման վրայ հիմնուած մէկ ընդհանուր հայրենասիրութեան անքակտելի միայուն հանգոյցով : Մի խօսքով, նա պէտք է թաղէր իւր ինքնուրոյնութիւնը հրաժեշտի ողջոյն տալով իւր ցեղային բնատուր իրաւասութեանը : Կան ազգեր որ իրենց բնածին ձկտումներով հակամէտ են տեղի տալ երբ տեսնում են իրենց առջեւ խոստմնալից հեռանկար : Բայց Հայը, Լինչի կարծիքով, այս տեսակ երեւոյթից ոչ միայն չէ յափշտակւում, այլ յետ յետ է քաշւում սարսափահար, ըստ որում աւելի մի ահեղ վտանգ է երեւակայում թագնուած այդ խոստմնալից ապագայի ետեւ քան ո եւ է հրապուրիչ մի օգուտ, եւ իւր կասկածին վաւերական հաստատութիւն տալու համար նա նայում է իւր շուրջը, դիտում է մի քիչ աւելի հեռուն, եւ իւր համար գտնում է դրական փաստեր :

Հայը տեսնում է շատ, եւ քննադատում աւելի շատ . . . :

Մեր Հեղինակի դատողութեամբ մի ժողովուրդ

որի առեւտրական գործունէութիւնը բերել կապել է նրան Եւրոպայի ամենաբարգաւաճ ցեղերի հետ, եւ որի բնական ներքին գրգիռը մեծափափաք է դարձնում նրան նմանեցնել իւր մտածողութեան ձեւը Եւրոպայի մտածողութեան ձեւին, այսպիսի մի ժողովուրդ չը պէտք է այնքան էլ մեղադրելի նկատել իւր հայեացքների դժկամակ արտայայտութեան համար...։ Հայերը խոստովանում են կրթական այն մեծ բարիքը որ վայելում են իբր զուտ Ռուս քաղաքացի անհատներ, նոքա գնահատում են Ռուս ժողովուրդի ազնուութիւնն ու բարի տրամադրութիւնը; համակիր են դէպ ի այն ամեն երեւոյթները որ կատարւում են Ռուսաստանի ներքին ընկերական յառաջդիմութեան ի նպաստ։ Միւս կողմանէ, Հեղինակը, ինքն եւս, մասնաւոր համակրանքով է յիշատակում Ռուս ցեղի այս բնաւորոշիչ գծերը, գծեր որոնք մղում են Ռուս տարրին դէպ ի յառաջ կանգնեցնելու համար նրան քաղաքակիրթ ազգերի շարքումը...։ Իսկ ու՞ր են Հայերի կանգնած ու կանգնելիք տեղերը։ Շնորհիւ զուգաւորեալ Սեւտարանի եւ Թագի անկարեկից դատավճիռին, մեր Հեղինակը տեսնում է Հայ ցեղին կանգնած երկու հակադրական ճնշումների միջեւ. մէկը Փիլիքական եւ սպազմօդիկ, միւսը բարոյական եւ սիստեմատիկ։ Առաջին անգամը չէ պատմութեան մէջ որ այդ ցեղին վիճակւում է ընտրել կամ ոսրկութիւն մարմնի կամ ստըրկութիւն մտքի։ Տակի փշրանքները գուցէ ծծուեն, կուլ գնան, բայց մեծամասնութիւնը պիտի հետեւեն իրենց ճակատագրին. պիտի աստանդական դառնան, եւ, գուցէ, աներեւոյթանան երկրի երեսից։ Թեպէտ եւ Հայի ապագան այսպէս է տեսնում Կայսերական Գահերի տնօրէնութիւնից, Պարոն Լինչ, սակայն, ենթադրում է թէ կարող է պատահել որ բնութիւնը այդ ազգի համար վերապահած լինի մի աննախատեսելի անակնկալ՝ բոլորովին տարբեր այս ամենից։

Հեղինակը խորհուրդ է յայտնում թէ իւր այն ընթերցողը, որ ճանաչում է Հայերին միմիայն Լեւանտում

իրեն հանդիպած Հայ Թարգմանի անախորժ փորձառութիւնից, պէտք չէ հակամիտուի նայելու այդ ժողովուրդի վրայ խորին կարեկցութեան այնպիսի ակնարկով որպէս թէ անդարձ կորստեան դուռը հասած մի տարր եղած լինէր բարոյապէս։ Ինքը, հեղինակը, մօտենում է այս հարցին զերծ ամեն նախապաշարումներից բայց լի լայնատարած ճանապարհորդութեան դասերով որոնց փորձը նա ստացել է Հնդկաստանի արեւմտեան կողմի երկիրներում, եւ որոց յիշատակը տակաւին խիստ թարմ տպաւորութիւն է կրում իր մտքի վրայ։ Հիմնուած այս բազմակողմանի փորձառութեան վրայ մեր Հեղինակը խոստովանում է թէ իր կարծիքը գըլխովին տարբեր է Հայ ցեղի մասին։ Նա հաւաստում է թէ մենք ապրում ենք Ասիայի անակնկալ յեղաշրջումների մի շրջանի մէջ, ականատես ենք Եւրոպայից Ասիայի վրայ արշաւող այն ահագին կոհակներից մէկին, որոց նախընթաց աւերիչ հետքերը գրեթէ չքացել են Ներկայի աւազների երեսից այնքա՜ն դարերի դադարից ու անշարժութիւնից յետոյ։ Նա նկատում է թէ Ասիացին հակառակ իր զառամեալ ծերութեան չէ նմանում Աֆրիկեցիին. նա Եւրոպացիի հայրն է որի շրթունքներից Եւրոպան ստացել է իր առաջին դասը, եւ նորա գրեթէ տղայամիտ դարձած ծերունի հասակը պարունակում է կրկին երիտասարդացման սերմեր։ Պարոն Լինչ տեսնում է Հայերի մէջ մի ժողովուրդ յատկապէս յարմարեցուած լինելու նոր ուխտի միջնորդները Եւրոպայի եւ Ասիայի միջեւ։ Նոքա պաշտում են Քրիստոնէական կրօնը, ընտանի են Արեւմուտքի մի քանի ամենալաւ իդեալներին հետ, եւ մարսում են Եւրոպական մտաւոր աշխատանքի իւրաքանչիւր նոր պտուղը այնպիսի յաջողակութեամբ եւ կատարելութեամբ որ Միջերկրականի եւ Հնդկաստանի միջեւ բնակող միւս ցեղերից ոչ մէկը մրցակից կարենալ լինելու ապացոյցն է տուած։ Այս ընդունակութիւնները նոքա հրապարակ են հանել ամենամեծ ձախորդութեան ներքեւ գտնուելովն հանդերձ,

այսինքն, իբրեւ հպատակ ցեղ ծառայելիս իրենց Մահմեդական տիրապետողների պահանջներին։ Նոքա լաւ հասկանում են թէ ինչպէս որ ճշմարիտ քաղաքակրթութեան ամեն մի յառաջադէմ քայլից անտարակոյս պիտի բարձրանան դէպի վեր, այնպէս էլ անշուշտ պիտի գլորուեն դէպի ցած ամեն մի յետադէմ քայլից։ Արդարեւ, յիմարութիւն պիտի լինէր ակնկալել նոցա մէջ անաղարտ բնաւորութիւն այն ծառայական անարգ աշխատանքների տակ որոց նոքա բռնադատուած են եղել հետեւելու հազար տարիների հպատակութեան ընթացքում։ Մեր Հեղինակը ասում է. «Երբ միտք ենք բերում թէ նոքա եղել են ռաեա, հարստահարուած խիստ յաճախ իրենցից մտաւորապէս ստոր ցեղերից այլ եւս մեզ հարկ չէ մնում զարմանալ այդ տեսակ մի դրութիւնից յառաջ եկած հետեւանքների մասին։ Մարդ իսկապէս կատարեալ իրաւամբ զարմանալու է որ նոցա թերութիւնները չեն ստացել աւելի սուր կերպարանք»։

Միւս կողմանէ, Պարոն Լինչ վկայում է թէ Հայերը ունեն նոյն իսկ մի շարք բարեմասնութիւններ որոնցից նոքա զուրկ են յայտարարուած։ Այսպէս, վեր ի վերոյ դիտողները տրամադրուած են նկատել Հայերին իբր երկչոտ կնամարդի մի ժողովուրդ, առանց ուշադրութեան առնելու այն բացարձակ իրողութիւնը թէ Թուրքիայում զէնքի գործածումը ամենախիստ կերպիւ արգիլուած է նոցա։ Մեր Հեղինակը մտածում է թէ գլխովին տարբեր համոզումն պիտի կայանար եթէ Հայերը այդ մասին համահաւասար դիրքի մէջ դըրուէին իրենց թշնամի Քիւրդերի հետ։ Ցամենայն դէպս, երբ առիթ ներկայացել է նոքա բնաւ եւ չեն մնացել ցոյց տալու զինուորական յատկութիւններ, թէ՛ պետական բարձրագոյն ռազմագլխութեան եւ թէ պարզ անձնական քաջութեան ասպարէզում։ 1877 ի Ռուս-Թրքական պատերազմի ժամանակ Ռուսիոյ Ասիական Բանակի յաղթական ընդհանուր հրամանատարը Լոռեցի մի Հայ էր, Լոռիս–Մելիքով։ Միեւնոյն պատերազ-

մի ընթացքում ամենափայլուն զօրաւարժնի — հրամանատարը կրկին մի Հայ էր, Տէր-Ղուկասօֆ։ Թայմզի պատերազմական թղթակիցը այսպէս է բնաւորոշում այդ մեծ զօրապետին. «Այն ձեւը որով Տէր Ղուկասօֆ վարեց իւր մարդիկներին Թաղիրում 1877 Յունիս 16 ին երբ ութն զօրագունդերով կատարելապէս խորտակեց իւր ընդդիմադիր Մուհամէդ փաշայի տասներկու գունդերին, այն յամառ դիմադարձութիւնը որով նա կտրեց Մուխթար փաշայի արշաւանքի առաջքը Յունիս 21 ին Իւչ Քիլիսայում, այն քաջարի նահանջը որ նորա կիսա-բաժինը բանեցրեց Ահմէդ փաշայի քսաներեք զօրագունդերի հանդէպ, վերջապէս, նորա սրարշաւ յառաջխաղացումը Իգդիրից դէպի Բայազիդ եւ այս տեղի ազատումը իրենից անհամեմատ գերազանց երկու Թուրք բանակների ձեռքից, արժանի են դարձնում նորան համարուելու առաջին կարգի զօրապետ։ Եթէ Ցարը ունենար նորա նման մի քանիսը, պատերազմը վերջացած կը լինէր մէկ ամիս առաջ»։ Դարձեալ, քաջ երիտասարդ սպայ Թառնայէֆը, որ ծրագրեց եւ ղեկավարեց Աղիզիէի յուսահատական յարձակումը Էրզրումի առաջ, մի Հայ էր, եւ իւր կեանքը զոհ տուեց իւր այդ խիզախ ընթացքին։ Ներկայ միջոցին եւս սահմանագլխի ոստիկանութիւնը կազմուած է գլխաւորապէս Հայերից որոց պաշտօնն է հսկել ընդհանուր կարգապահութեան վրայ եւ զսպել Քիւրդերի ասպատակութիւնը։ Պարոն Լինչ բաւական է նկատում այս օրինակները ջրելու այն խորարմատ սուտը որի երեսից Հայերը, գէթ Անգլիական աչքին, վարկազուրկ են եղել աւելի շատ քան ուրիշ ոեւ է ենթադրեալ թերութեան երեսից։

Մեր Հեղինակը, որ ինչպէս գիտենք ամեն պարագայի մէջ խօսում է ուղղակի իւր անձնական դիտողութիւնից, ասում է թէ, եթէ իրեն հարցնէին ինչ բնաւորոշիչ գիծեր են բաժանում Հայերին միւս Արեւելցիներից, ինքը պիտի տրամադրուէր ծանրանալու մի յատկանիշի վրայ որը Անգլիական ժողովրդային բար-

բառով ծանօթ է grit (չարխաշ)։ Այս յատկութիւնն է որին նոքա պարտական են իրենց պահպանումը իբր մի ժողովուրդ, եւ նոքա ցած չեն մնում այդ նկատմամբ Եւրոպական ոեւէ ազգութիւնից։ Նոցա մտաւորական ընդունակութիւնները բուն են դրուած պատկառելի հաստատ հիման վրայ, եւ, ոչ — նման Ցոյներին, բայց նման Գերմանացիներին, նոցա բնութիւնը հակակիր է վեր ի վերոյ մէթոդներին, ամբողջ մտքով անձնատուր են լինում իրենց պարտականութիւններին եւ խորասուզւում մինչ յատակը։ Չկա՛յ մի ցեղ մօտաւոր Արեւելքում որ շուտ բան սովորելու մասին հաւատարուէր Պարսիկներին, եւ սակայն, Պարոն Լինչ յայտարարում է թէ եթէ մի Պարսիկ մեծաւոր այցելութեան գալու լինի ձեր մօտ իր Հայ պաշտօնեայի ընկերակցութեամբ, փորձի համար վեր առէք ձեր դարանից յատկապէս մի պատկերազարդ գիրք եւ մատուցէք նրանց, անցողակի ծանօթութիւն տալուց յետոյ այդ գրքի մասին։ Պարսիկը աչքը պիտի ման ածէ պատկերների վրայ, մերթ հիացման եւ մերթ հիաթափման բացականչութիւններ արձակելով։ Հայը պիտի անյապաղ լափէ գրքի չարադասութիւնը, եւ խօսակցութեան ուրաքանչիւր դադարին, պիտի տեսնէք նրան կիտած յօնքերով աչքերը սեւեռած բնագրին վրայ։ Համակենտրոնացման այս ձկտումին զուգընթացաբար ընկերանում է եւ՛ կանխամտածութիւն եւ՛ դատողականութիւն հակակշռելու։ Այս յատկութիւններն են որ տուել են Հային առաւելակշիռ դիրք առեւտրական գործերի մէջ։ Նա ոչ նուազ ճարպիկ է քան Ցոյնը, բայց թափանցում է աւելի հեռուն, եւ, թէպէտ արատաւորուած բոլոր Արեւելքցի առուծախ անողների մանր մոլութիւններով, Հայ վաճառականը արթնամիտ է գնահատելու համար ուղղամտօրէն գործ անելու առաւելութիւնները, երբ նշմարում է թէ այդ առաւելութիւնները գտնւում են առեւտրական վստահելի եւ անվտանգ պայմանների ներքեւ։ Վիճակագրութիւնից երեւում է թէ Բալկանների այլացեղ քա-

ղաքային ազգաբնակութիւնների շրջանակում Հայերի անանկութեան դէպքերը բաղդատաբար շատ պակաս են։ Եթէ այս իրողութիւնը չէ ապացուցանում Հայերի ուղղամտութիւնը գոնէ ցոյց է տալիս նոցա հաստատակամութիւնը չհրապուրուելու անմիջական փորձութիւնից եւ նոցա պատրաստականութիւնը ճանաչելու առեւտրական հաստատութեան լուրջ արժէքը ։

Այս ժողովուրդին, սակայն, իւր իսկական արժանիքին համեմատ դատելու համար, Պարոն Լինչ ազգաբարում է իւր ընթերցողներին ուսումնասիրել Հայերին ո՛չ թէ Թիւրքիայում մանաւանդ նախկին Բիւզանդիոնի սահմաններում, ուր ապականութիւնը համատարած է, այլ Հայաստանի Ռուսական նահանգներում։ Այստեղ նոքա ամենայաջողակ արդիւնաւէտութեամբ են գործածել իրենց ժամանակամիջոցը այն շրջանից ի վեր, երբ Ռուսիոյ սուրը Ազատարարի սուրն էր, մինչեւ իրերի արդի վիճակը, երբ նոքա վարիչները ներշնչուած են զուտ համա–Օրթոդոքսութեան եւ համա–Սլաւութեան սկզբունքներով։ Այնչա՛փ էր զարմացել մերՀեղինակը կատարուած արդիւնքներից եւ ուշագրաւ հակապատկերից այդ նոր ազատագրուած ժողովրդի չքնաղ յառաջդիմութեան միջեւ եւ, մօտաւորագոյն Ասիայի ընդարձակ տարածութեան վրայ սփռուած, իրենց միւս այլազգի հարեւանների անշարժութեան եւ յետադիմութեան միջեւ որ, առանց ոեւ է նախորոշ դիտաւորութեան, միտքը դրեց եւս աւելի յառաջ տանել Հայերի ուսումնասիրութեան հարցը եւ երկարել իւր ճանապարհորդութիւնը դէպի Թրքական հողը։ Ի՞նչ էր արդեօք այն տեսարանը որ այնչա՛փ մեծ ազդեցութիւն գործեց նորա վրայ Ռուսական Հայաստանում։ Նա առանձին ուշադրութեամբ դիտեց թէ ամեն արհեստի եւ պաշտօնի մէջ, առեւտուրի եւ կառավարական ծառայութիւնների մէջ, Հայը առանց մրցակցի էր, եւ ամբողջ ասպարէզը գտնւում է նորա ձեռքի տակ։ Նա է մատակարարում ճանապարհորդելու փոստային ծառայութիւնը, եւ, եթէ ճանապարհորդը բաղդ ունի հանդիպելու մի իջեւանի, տէրը անպատ-

ճառ պիտի տեսնուի որ մի Հայ է։ Օթեւանելու յարմար գիւղերի մեծագոյն մասը բնակուած են հուժկու Հայ շինականներով։ Քաղաքներում, եթէ տեղային կառավարիչը կարեւորութիւն է ընծայում նորեկ ճանապարհորդին, նորա տրամադրութեան ներքեւ է դնում ոստիկանութեան մեծը. այս կորիչ պաշտօնեան եւս առհասարակ ո եւ է մի Հայ է լինում, ծածկուած Ռուսական համազգեստի տակ։ Նորա աջակցութեան շնորհիւ ճանապարհորդը ճարում է բնակարան կամ մի հովանի պարտէզ իւր վրանը կանգնելու եւ իւր ուղեւորական պահանջներին գոհացումն տալու համար։

Եթէ պատահաբար նշմարէք ճարտարապետական հովեր ունեցող մի գեղակերտ շէնք, նորա մէջ կը գտնէք Ալեքսանդրօպոլցի Հայ վարպետի մատի շնորքը։ Նոյն իսկ այդ հայաշատ քաղաքում կառուցանելու սէրը, որ նոցա նախնիքների դիտելի յատկանիշն էր, ծաղկել է նորից համամետաբար բարեկեցիկ պայմանների տակ։ Մի ընդարձակ Մայր–Տաճար եւ ուրիշ չատ եկեղեցիներ բարձրանում են փառապսակ ճակատներով քարաշէն տուների մէջից դէպի վեր։ Երեւանում, իւրաքանչիւր միջին աստիճանի հարուստ Հայ վաճառական ինքնագոհ ապրում է իւր սեփական հաճելի վիլլայում, որի իտալական ճարտարապետութիւնը աչքի է ընկնում կաղամախների եւ ուռիների եւ պտղատու ու պտղալից ծառերի ստուերի մէջից։ Երեւանում գտնուած պատուական գինիի պատրաստողը դարձեալ մի Հայ է, Գերմանիայում ուսումնասիրելով գինեգործութեան Եւրոպական նորագոյն մէթոտները։ Դրամական գործառնութիւնները գտնւում են Հայերի ձեռքին։ Աջողակ արհեստաւորները՝ ոսկերիչները, ժամագործները, հիւսները Հայեր են։ Նոյն իսկ սահմանագծի հեծեալ ոստիկանութեան պաշտօնատարը, որ ընդերկար ընկերակցութիւն է ունեցել ազգաբնակութեան վայրենի տարրերի՝ Քիւրդերի եւ աւազակների հետ եւ որ նախկին աւազակապետի տիտղոսն է կրում, ոչ ի պատիւ

իրեն, դարձեալ պիտի գտնէք թէ Հայի մէկն է։ Ժողովուրդի անհագին մեծամասնութիւնը չգիտէ Ռուսերէն, կամ գիտէ խիստ անկատար կերպիւ։ Եթէ աչքի չընկնէր մեծ գաւառների Ռուսազգի կառավարիչների ու ոստիկանութեան Ռուս բարձրագոյն պաշտօնեաների ներկայութիւնը, եւ եթէ Կոզակներ ու Ռուսական կանոնաւոր զօրքեր չտեսնուէին այստեղ այնտեղ, ճանապարհորդը մտքից չպիտի անց կացնէր թէ գտնւում է Ռուսական հողի վրայ եւ պիտի գնար իւր ճանապարհով քաղցր մտածումների մէջ խորասուզուած մինչեւ որ յանկարծակի դէմ առնէր Ռուսական բիւրոկրատիկ սիստեմին ու խելքի գար թէ ուր է գտնւում իսկապէս։ Այսպէս թէ այնպէս, Հայերը աստիճանաբար, բայց ոչ ուղղակի, գնացել են դէպ առաջ իրենց ետեւ թողնելով նոյն իսկ տիրապետող տարրին, եւ եթէ ազատ ասպարէզ տրուէր խաղաղ մրցման յաղթանակներին, Հայը վերջ ի վերջոյ տէր պիտի դառնար այդ երկրում։

Պարոն Լինչ կարծում է թէ իրերի այս երեւոյթից կամաց կամաց ծնունդ են առել ազգային փառասիրական մեծ տենչեր, ուստի զարմանալի չէ գտնում որ Հայի արեւելեան երեւակայութիւնը յառաջ է մղուել մինչեւ այնպիսի մի աստիճան որը պարզապէս անխոհեմութիւն կարող է համարուել արեւմտեան ցեղերի աչքին։ Մի Նոր Հայկական Թագաւորութեան գաղափարը կրակ ու բոց է տուել ազգային անզուսպ եռանդին որը սնել ու զարգացել է պատմական յիշատակարանների ընթերցման տպաւորութիւնների ներքեւ։ Բալկանեան ցեղերի ազատագրման օրինակները, կարծում է, իրաւունք եւ քաջալերութիւն են տուել նորա մտաւորական երազներին։ Մեր Հեղինակը յանձն է առնում իւր երկրորդ հատորի մէջ, Թրքական նահանգների մասին խօսելիս, բացատրել այս տեսակ հակոտեայ համեմատութեան սխալականութիւնը, բայց չէ հաւատում թէ վերոնշանակեալ դէպքերը կարող էին յիրաւի ոեւէ կերպիւ ազդե-

ցութիւն գործած լինել ընդհանուր ժողովուրդի հասարակական երեւակութեան վրայ ազգային շարժումն յառաջ բերելու հարցին մէջ։ Նա միեւնոյն ժամանակ մատնանիչ է անում թէ մի անկախ Հայկական Թագաւորութեան տեսիլքը, դիցուք իրական համարուէր հեռաւոր ապագայում, անկարող է ջատագովութեան արժանանալ ամեն մի անհատի տրամաբանական դատաստանից հաւասարապէս։ Նորածին փոքր պետութիւնների գոյութեան մէջ շատեր նշմարում են ճըշմարիտ վտանգ ի վնաս մարդկային յառաջադիմութեան։ Ազգային զգացումը խրւում զետեղւում է արդէն իբր իրական ընդունուած այն իդեալների մէջտեղ որոց վրայ որքան ընդարձակւում է արդի քաղաքակրթութիւնը այնքան աւելի պահանջ է զգացւում կառուցանել աւելի բարձր վերնաշէնք։ Փոքր պետութիւնները ամենաչնչին պատրուակից անձնատուր են լինում կռուի բռնուելու, եւ եթէ պատերազմը պատահում է լինել մի մեծ պետութեան հետ, այն ժամանակ նոքա ծանրապէս տուժում են իրենց փառատենչ յաւակնութիւնների համար։ Այդ տեսակ փառասիրութիւնների վայելքը արտադրում է յոռի վարչութիւն եւ վերջանում է սնանկութեամբ։ Բացի սրանից, փոքրիկ երկիրների ժողովուրդները կարող են վայելել միայն մի քանիսը այն նպաստաւոր պայմաններից որոց ներքեւ վայելչաբար ապրում են մեծ կայսրութիւնների ազգերը։ Այսպիսի պատճառները թէեւ ըստ ինքեան ունեն մեծ կշիռ հարցի մասին վճռական համոզման գալու համար, բայց եւ այնպէս, Հայկական հարցի լուծման նկատմամբ նոքա գրեթէ չեն ցոյց տալիս ո եւ է մխիթարական մի նշան։ Հայը դիցուք նորընծայ հաւատացեալ դառնայ այս տեսակ քաղաքական դաւանութիւններին, այս դէպքում նա իրաւամբ կարող է հարցնել թէ ո՞ր կողմը աչք ման ածելու է ապրելու համար այն տեսակ բաղդաւորիչ պայմանների տակ։ Թրքական կայսրութիւնը պիտի նոյն. իսկ չպաշտպանէ նրան, եւ կոտորում է

ի՛ւր նպատակ Հայերին։ Մինչդեռ, եթէ նա իւր աչքերը դարձնէ մի այլ կողմ՝ այնտեղ տեսնում է նիւթական առաւելութեան եւ ո՛չ մի պայման որ թոյլտարէ իրեն բարձրանալ իւր արդէն հասած տնտեսական աստիճանից մի աւելի բարձր աստիճանի, իսկ անձնատուր լինել յառաջադրեալ իդէալներին, իւր կարծիքով, նշանակում է պարզապէս ցեղային բարոյական եւ մտաւորական կործանումն։ Ճակատ առ ճակատ կանգնած այս տեսակ չարաբաստիկ նախատեսութեան հանդէպ նորան միայն մնում է ապաւինել ինքն իւր վրայ։ Մեր հեղինակը այն միտքն է յայտնում թէ, եթէ Հայը խոր դատողութեամբ մտածելու լինի, պիտի աշխատի լռելեայն, եւ առանց ցուցամոլութեան, մշակել իւր ցեղային տարրական պահանջները, վեր կանգնեցնել գիւղացիին իւր այժմեան անկեալ նուաստ դիրքից, մաքրել եկեղեցին իւր կեղտերից, խրախուսել բարեկեցիկ հարեւան ցեղերի շահերը եւ գործակցել նոցա հասարակական հարցերին սրանով հիմք դնելու համար համերաշխութեան սկզբունքին իւր եւ միւս կենսակից օտար տարրերի միջեւ։ Սոքա են ամենից աւելի պատշաճ եւ արդարացի փառասիրութիւնները որոնք, թէպէտ յամրաքայլ եւ անշուք, անտարակոյս մի օր չէ մի օր պիտի պսակուեն յաջողութեամբ, եւ որոնք, ինչ եւ լինեն քաղաքականութեան յեղաշրջումները, պիտի անպատճառ ամրապնդեն Հայի իրաւունքը առյաւէտ գլուխ կանգնելու իւր երկրի պատմութեանը մէջ իբր միակ հաստատաբնակ յառաջդիմական տարրը մօտաւորագոյն Արեւելքում։

# ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻ

Գրքի մի գլուխը նուիրուած է Հայաստանի կրօնական Մայրաթոռ Էջմիածնին եւ հայկական Եկեղեցիին։ Այստեղ ընթերցողը պիտի գտնէ Հայաստանի Քրիստոնէութեան պատմութեան մի ուրուագիծը դուրս բերուած անթերի մանրամասնութեամբ եւ հետաքրքրաշարժ դասաւորութեամբ։ Դիոկղետիանոսի հրամանաւ (281-305 Թ. Ք.) քրիստոնեաների դէմ հանուած հալածանքից բաւական ժամանակ առաջ էր երբ Հայաստանի թագաւորը պաշտօնապէս ընդունեց նոր կրօնը, եւս այսպէս Քրիստոնէութիւնը դարձաւ պետական կրօնք Հայաստանում մի երեսուն տարի առաջ քան նորա յաղթանակը Արեւմուտքում, Մելվիան Կամուրջի վճռական գործողութեամբ (312), եւ մօտ հարիւր տարի առաջ քան Թէոդոս Ա.ի հրովարտակը հեթանոսական պաշտամունքի դէմ։ Հայաստանի առաջին Լուսաւորչի մէջ մեր հեղինակը տեսնում է անձնական մեծ արժանիքներ որոց շնորհիւ անտարակոյս նա կարողացաւ այնքան ահագին ոյժ բանեցնել մի անգամից տակն ու վրայ անելու մէկ ամբողջ երկրի կրօնական հիմքը եւ դառնալու թագաւորի մենտորը թէ՛ կրօնական եւ թէ՛ միանգամայն աշխարհական գործերում։ Հեթանոսութեան տեղ Քրիստոնէութիւնը տեղաւորելու նորա բռնած մեթոդների եւ արդի քաղաքակիրթ ազգերի գործադրած մեթոդների մէջ Պարոն Լինչ գտնում է էական նմանութիւն, անտարակոյս, այն տարբերութեամբ որ

արդի մեթոդները նուազ բռնադատական են եւ աւելի աստիճանաբար են ներգործում ։ Սակայն այն հեռաւոր ժամանակների համար Ս. Գրիգոր Լուսաւորչի ի կիր արկած դրութիւնը հիացման արժանի է համարւում հեղինակի տեսակէտով ։ Նորա կատարեալ ու վճռական յեղաշրջման շնորհիւ հեթանոսութիւնը թէպէտեւ չ՚ոչնչացաւ, բայց ուժասպառ եղաւ անվերականգնելի կերպիւ, այնպէս որ հին կրօնի թաքուն ախոյեանների դաւերն ու խլրտումները այլ եւս երբեք չկարողացան մահացու հարուած պատճառել Լուսաւորչի հիմնած սկզբունքներին ։ Ընդհակառակն, պետական ամեն փառքով ու պատւով նորա սպառազինած կրօնքը կամաց կամաց անքակելի կծուծներով խճճուեցաւ Հայ ազգի ինքնագիտակցութեան հետ, եւ առաւ նորա խորարմատ յամառութիւնից կամ սքանչելի հերոսութիւնից մի տարօրինակ անշարժութիւն որը այնքան աւելի ամրապնդուեցաւ որքան որ մի նոր սպառնալիք էր տեսնւում դրսից ։ Սկզբից ի վեր եկեղեցական հաստատութեան վէմը եղած է եւ է կաթողիկոսի անձնաւորութիւնը ։ Մեր հեղինակը չէ կարողանում գտնել քրիստոնէական կազմակերպութիւնների միջեւ այս բարձր պաշտօնի յար եւ նմանը ։ Նորա մօտ թագաւորի պաշտօնը պարզապէս մի խաբուսիկ փայլ էր ։ Կաթողիկոս պատուանունը ըստինքեան անյաւակնոտ մի տիտղոս է որ տրւում էր նուիրապետական կենտրոնից հեռու Արեւելքի լիազօր արքեպիսկոպոսներին ։ Ս. Գրիգորի եւ նորա յաջորդի քա՚նապետական ձըգտումները եւ թեկնածութեան յաւակնութիւնները այնքան համեստ էին որ Փաւստոս Բիւզանդացին թըխում է «Ծայրագոյն Կաթողիկոս Կաթողիկէից» փըքուն տիտղոսը Կեսարիոյ եպիսկոպոսների համար, նոցա ձեռնադրական գերադաս աստիճանը արտայայտելու

դիտումով։ Օտար աշխարհների կղերական պաշտօնակիցներից պատուի ինչ համեստ տեղ էլ որ նշանակուած լինէր նորա համար Քրիստոնէական Եկեղեցիի նուիրապետութեան դասում, իւր բնիկ երկրում, սակայն, նորա ունեցած դիրքը իբրեւ Կաթողիկոս Հայաստանի չափազանց մեծափառ մի դիրք էր։ Կաթողիկոսական պաշտօնը ժառանգական էր Լուսաւորչի գերդաստանի մէջ, եւ այդ գերդաստանը արքունիքից ընծայ էր ստացել մեծատարած հողեր որ գրաւում էին տասն եւ հինգ նահանգներ եւ պարունակում զանազան իշխանավայել բնակարաններ։ Հայրապետական պալատը Աշտիշատումն էր, Ս. Յովհաննու Կարապետի եւ Աթանագինէի մատուռների մօտ եւ ոչ շատ հեռի Հայաստանի Մայր աթոռից։ Նորա ընդարձակ պատշգամից բացւում էր այն տեսակ հրաշալի մի դաշտային ու լեռնային տեսարան որ կարող էր գրգռել ամենահարուստ աշխարհականի նախանձը։

Երբ Ս. Գրիգորի թոռները չէին յօժարում կրելու կաթողիկոսական պաշտօնի բեռը, աթոռը յանձնւում էր Աշտիշատի երեւելի կղերականներից մէկին, մինչ անարժան ժառանգները ընկնում էին զինուորական կոչումի եւ աշխարհային զեղխութիւնների ետեւից։ Թագաւորի ընտանիքից էր սովորաբար հարսնացու տրւում Լուսաւորչի զարմի արու անդամներին եւ, միանգամայն, նոցա մատուցւում էին շատ մեծ պատիւներ որ վայել էին միմիայն թագաւորներին։ Ամեն անգամ որ թագաւորը իւր ընթացքով շարժում էր կաթողիկոսի արդարացի զայրոյթը, հոգեւոր խըրատներ եւ նոյն իսկ կծու յանդիմանութիւններ չ՚էին ուշանում Հայրապետի բերանից թափուելու նորա գլուխին։ Եթէ օրինաւոր ժառանգի հրաժարումով կաթողիկոսական աթոռը մնում էր պարապ, այս պա-

բողային Եկեղեցականութիւնը չէր որ կատարում էր յաջորդի ընտրութիւնը, այլ Թագաւորը, ազնուականները, եւ զինուորականները։ Այս զանազան առիթներին կաթողիկոսական պաշտօնը փոխանցւում էր բուն ժառանգից մի օտար անձի, բնականաբար, երկրի արդէն գոյութիւն ունեցած որոշ կարգ ու կանոնների համաձայն եւ մեր հեղինակը աւելի ենթադրում է թէ դոքա օրինակուած լինելու են բազմաստուածեանների եւ Հրեաների քահանայապետական ընտրողական կանոնների հիման վրայ։ Լուսաւորչի թոռներից երկուսը, մէկը չորրորդ դարում միւսը հինգերորդ դարում, նոր փայլ աւելացրին հայ Եկեղեցական հաստատութեան վրայ։ Ներսէս Առաջին ներմուծեց ընտիր բարենորոգումներ բարձրագոյն հոգեւորական վարչութեան մէջ։ Սահակ Մեծն տուեց ժողովուրդին սեփական նորագիւտ այբուբէնը։ Տրդատի յաջորդների գահը փշրուեցաւ առաջին քրիստոնեայ Թագաւորի մահից գրեթէ մէկ դար վերջը, մինչդեռ Ս. Գրիգորի յաջորդների գահը դիմացաւ տասն եւ վեց դարերի փոթորիկներին եւ մնում է իբր ամուր եւ ուշագրաւ մի կոթող մինչեւ ներկայ օրը։

Հայկական եկեղեցիի ազգային նկարագիրը գըլխաւորաբար ծագում է առել Ս. Գրիգորի կանոնադրութիւններից, բայց նորա ուղղակի շառաւիղ Ներսէս Առաջինն էր որ մէկ գծի վրայ դրեց նորան հաւէտական կայունութեան Եկեղեցիի հետ ներքին զարգացման եւ կարգապահութեան հարցերի մասին։ Հարեւան Յոյն Եկեղեցիի հետ ունեցած ընտանեկան նմանութիւնը լիապէս վերագրելի է այս Կաթողիկոսին։ Վանքն է տակաւին եկեղեցական կազմակերպութեան առանցքը. այս ժամանակից Ներսէսը, եւ յուցէ Բարսեղ Կեսարացիի աշակերտն էր որ սփռեց վանքեր եւ մենաստաններ

երկրի ամեն կողմերում։ Միատեսակ կանոն հաստատուեցաւ զանազան վանական միաբանութիւնների համար, եւ պարտք դրուեցաւ աշխարհականների վրայ հոգեւորապէս հնազանդել մի շարք առողջապահական կարգադրութիւններին (պատուէրների) որոնցից մէկն էր հեռումնալ մսեղէն կերակուրից։ Աղքատներն եւ անկար հիւանդները տեղաւորուեցան հիւանդանոցներում, եւ մուրացկանութիւն անելն արգիլուեցաւ։ Մարդասիրական մի նոր օրէնք ստիպողական պարտք էր դնում հասարակութեան վրայ ուտելիք տանել աղքատների եւ հիւանդների հանրային կամ մասնաւոր բնակարանները։ Իւրաքանչիւր գաւառում հիմնուեցաւ դպրոց նպատակ ունենալով կրթել ժողովուրդը յունական եւ ասորական լեզուների ուսման մէջ։ Մեծ կաթողիկոսի ամեն մի գործը կրում է վսեմ դիտաւորութեան եւ գերազանց եռանդի դրօշմը։ Նորա նպատակն էր վեր կանգնեցնել ժողովուրդին իւր քայքայուած բարք ու վարքից եւ տալ նորան կեանքի մի նոր եւ առողջ ուղղութիւն։ Բայց ճիշտ իւր բարձր ծրագրի գործադրութեան մասին նա կռուի բռնուեցաւ Թագաւորի հետ եւ գաղտնապէս թունաւորուեցաւ նորանից 374 ին։

Ներսէսի մահը բաց է անում մի այլ դարագլուխ Հայկական Եկեղեցիի պատմութեան մէջ։ Մի կողմից նորա հաստոյթները կրճատուեցան, միւս կողմից նա իսպառ անջատուեցաւ հռոմէական կայսրութեան Եկեղեցիից—մի իրողութիւն որ առիթ տուեց շատ ծանր հետեւանքների։ Ակնյայտնի է թէ Ներսէս պակաս գտնուեցաւ իւր երկրացիների հոգեկան տրամադրութեան ճիշտ չափը առնելու եղանակին մէջ. իւր բարոյական պարտաւորութիւնները կատարելու անզուսպ փափաքն էր պատճառը որ նա մէկ անգամից ջանաց երթալու խիստ հեռուն եւ ի գլուխ հանելու խիստ

չատ բան։ Նորա անաչառ խստապահանջ կարգադրութիւնների դէմ ազդեցիկ շրջաններում ծագած դժկամակութիւնից առիթ քաղելով, Թագաւորը սկսեց անարգել քարուքանդ անել իւր զոհի բարձրացրած շէնքը։ Վանատունները խափանուեցան, մենաստանները աւերուեցան եւ նոցա մէջ ապրողները մատնուեցան հալածանքի։ Բաց ի այս, Տրդատի հրամանաւ Եկեղեցիին ընծայուած հողերի մեծագոյն մասը կրկին դարձաւ պետական սեփականութիւն։ Վերոյիշեալ հաստատութեան պատկանած իւրաքանչիւր եօթնական կալուածներից հինգի եկամուտը յատկացուեցաւ արքունի Գանձին։ Տարակոյս չկայ ամենեւին թէ ժողովրդային պաշտպանութիւնը կազմ եւ պատրաստ էր ի նըպաստ այն յեղափոխութեան որ Թագաւորը ձեռք առաւ հռոմէական կայսրութեան Եկեղեցիի վերաբեմամբ։ Ամեն ժամանակ Հայ ժողովուրդը իբր արդար իրաւունք էն նկատել պինդ կպած մնալ իրեն ինքնուրոյն ազգային քաղաքականութեանը, եւ նախամեծար էն համարել աւելի փչանալ քան թէ միախառնուել իրեն հարեւանների հետ։ Սուրբ Գրիգորի տան հակառակորդ եւ արքայական չահի հլու կամակատար մի եպիսկոպոս, Աղուանների գերդաստանից, ձեռք ձգեց կաթողիկոսական թափուր աթոռը։ Կեսարիայի համաձայնութեանն իսկ դիմումն չեղաւ այդ մասին, եւ ո՛չ էլ նոր կաթողիկոսը մեկնեցաւ Կապադովկիայի մայրաքաղաքը ձեռնադրութիւն ստանալու համար ըստ ընդունուած սովորութեան։ Հայ վեհապետի ցոյց տուած կրօնական կռուի այս հրաւէրը իւր հակազդեցութիւնը ունեցաւ։ Սուրբ Բարսեղ ժողով կազմեց եպիսկոպոսներից, եւ վըրէժխնդրութեամբ լի շրջաբերական ղրկեց Հայ եպիսկոպոսներին եւ Թագաւորին։ Այդ պատգամի զօրութեամբ Հայաստանի կաթողիկոսը զրկւում էր եպիս-

կոպոսական ձեռնադրութիւն կատարելու իրաւունքից։ Երկու կողմի այս փոխադարձ սրտնեղութեան արդիւնքը բուռն հակառակութեան առարկայ էր եղել նոյն իսկ հայկական Եկեղեցիի մէջ։ Կղերականութիւնը բաժանուել էր երկու հակառակ բանակի, մէկը հետեւում էր Թագաւորին եւ Աղուանից Տանը, միւսի նշանաբանն էր հաւատարիմ մնալ Ս. Գրիգորի գերդաստանին, եւ ճանաչել Կեսարիայի ձեռնադրական իրաւունքի օրինաւորութիւնը։ Հայաստանի մեծագոյն մասի հետզհետէ անկումը պարսկական ազդեցութեան ներքեւ եւս աւելի մղում տուեց Պապ Թագաւորից սկսած քաղաքականութեանը, եւ երբ, դարի վերջանալու միջոցներին, կաթողիկոսական աթոռը կրկին անցաւ Լուսաւորչի մի շառաւիղին, Կեսարիայի հետ նախկին կապը վերահաստատելու փափաք յառաջ չ'եկաւ այլ եւս։

## ԿՐՕՆԱԿԱՆ

Քանի յառաջ էր ընթանում ժամանակը, այնքան նորանոր պատճառներ էին վրայ գալիս աւելի եւս լայնացնելու Հայ եկեղեցիի եւ կայսրութեան եկեղեցիի միջեւ բացուած մեծ խրամատը։ Պարսկական գըրաւումը եւ Արշակունեաց հարստութեան վերջնական կործանումը պզտիկ ապացոյցներ չէին բիւզանդական ազդեցութեան յօժար բացակայութեան որն որ պարսկական քաղաքականութիւնը ոչ մէկ առիթ չէր փախցնում աւելի եւս հեռացնելու Հայերից։

Հայերէն այբուբէնի գիւտը Մեսրոպի ձեռքով եւ Թարգմանչաց դպրոցի հաստատումը մեծն Սահակի

հայրապետութեան օրով (390–430) ակն յայտնի նշաններ էին թէ մինչ մի կողմանէ ջանք էր ի գործ դրւում ներմուծել յունական զարգացումը եւ մղումն տալ Քրիստոնէութեան ծաւալմանը, միւս կողմանէ գործի մէջ գաղտնի հաշիւ կար մշակելու եւ պատրաստելու ժողովուրդի զօրեղ ձգտումները դէպի կրօնական բացարձակ անկախութիւն։ Օքսֆորդի համալսարանի հայագէտ պրոֆէսոր Կոնիբիէր ենթադրում է թէ հայերէն տառերի գիւտը տեղի ունեցաւ Պարսիկ կառավարութեան դրդումով որպէս զի Հայերը, տէր դառնալով իրենց սեփական ազգային գրելու արհեստին, զերծ մնան բիւզանդական ազդեցութիւնից։ Այսուամենայնիւ Հայերը քաղաքականապէս չ'էին մօտենում Պարսիկներին, իսկ կրօնապէս Արեւմուտքի ատելութիւնն էին միայն բարդում իրենց գլուխին։ Ջէզօքութեան այս տրամադրութեան հետեւանօք էր անշուշտ որ Հայ ազգի ինքնուրոյն խելքը իւր եկեղեցիի վարդապետութեան վրայ կոխեց այնպիսի մի դրօշմ որ կայսրութիւնից վաւերացուած դրօշմը չէր։ Քաղկեդոնի ժողովը (451), ուր Հայերը ներկայացուցիչ չ'ունէին, հռչակեց Քրիստոսի երկու բնութիւն կրելու սկզբունքը հետեւեալ խօսքերով. «Քրիստոս ըստ իւր Աստուածութեան համագոյակից է Հօր, իսկ ըստ իւր մարդկութեան, բացի մեղքերից, բնութեամբ մէկ է մեզ հետ։ Ա՛յս մի եւ նոյն Քրիստոսը ճանաչւում է երկու բնութեամբ անլուծելի միաւորուած, մի եւ նոյն ժամանակ որոշ»։ Տասնեւչորս դար առաջ էջմիածնում գումարուած մի սուրբ ժողովի մէջ, Հայ եկեղեցին ազդուապէս ժխտեց Քաղկեդոնում նուիրագործուած վարդապետութիւնը։ Հայ ազգը, հետեւաբար, Քրիստոսաբանութեան խորհուրդի մասին ունեցած իրեն ուրոյն մեկնութեամբը, տարբերւում է թէ՛ յունական

եւ թէ՛ նաեւ հռոմէական եկեղեցիից։ Հայերը անբանաւոր են նկատում երկու բնութեան ընբռնումը, այլ ընդունում են թէ Քրիստոսի մէջ կայ մէկ անձ եւ մէկ բնութիւն, մէկ կամք եւ մէկ զօրութիւն։ Նոցա ժամերգութեան մէջ այդ վարդապետութիւնը արտայայտւում է հետեւեալ խօսքերով. «Ո՛վ Աստուած, Աստուած Սո՛ւրբ, Աստուած Ամենակարո՛ղ, Աստուած Յաւիտենակա՛ն որ խաչուեցար մեզ համար»։ Միեւնոյն ժամանակ նոքա հերքում եւ երկդիմի են յայտարարում Եւտիքեսի ուսումը, եւ նզովք կարդում Նեստորին եւ նորա հետեւողներին։ Եւտիքէս ուսուցանում էր թէ Քրիստոսի մարմինը չ՚պէտք է նկատել իբր ճիշտ նոյնպէս կազմուած ինչպէս է մեր մարմինը։ Մինչդեռ հայ Եկեղեցին դաւանում է թէ Աստուած մարդ եղաւ բառի բովանդակ իմաստովը։

Մեր հեղինակը հակամէտ է խորհելու թէ այս Քրիստոսաբանութիւնը գուցէ մարմնացումն եւ ոյժ տըւեց ժողովուրդի զգացումներին, բայց նա մատնանիշ է անում թէ բուն իսկ այդ Քրիստոսաբանութիւնն է պատճառը որ հայերը թշնամացան ոչ միայն կայսրութեան եկեղեցիի հետ, այլ նաեւ Պարսից իշխանութեան հպատակ զանազան ազգերից կազմուած Քրիստոնէական լայնափիւռ հասարակութեանը հետ։ Բեթ-Լապատի Սինոդի որոշմամբ (483 կամ 484) Պարսկաստանի Քրիստոնէական եկեղեցիները իրենց ծոցի մէջ ողջունեց նեստորականութեան թռուցիկ ուժերը, եւ ընդունեցին նեստորական դաւանութիւնը։ Վրացիները իրաւ է, մի առ ժամանակ հետեւեցին Հայերի գլխաւորութեանը, որի հետ նոցա եկեղեցին ուղղակի կապուած էր։ Բայց այս դաշնակիցները իրենք իրենց բաժանուեցան վեցերորդ դարի վերջին, եւ անցան Քաղկեդոնի վարդապետու-

թեան կողմը։ Որքան դարերը թաւալում էին դէպ ի յառաջ այնքան հաւատալիքի այլազան խրամատները աւելի էին լայնանում այդ քրիստոնեայ ազգերի՝ միջեւ եւ դեռ մինչեւ այսօր կրօնական կծու ատելութիւնը խիստ ուշագրաւ մի երեւոյթ է Արեւելքի Քրիստոնէութեան մէջ։ Պատմական դէպքերի բերմունքով ոչ սակաւ անգամներ Հայերի առաջ ներկայացուել է երկու վիճակ ընտրելու. մէկը կամ միւսը, եւ նոքա ընտրել են մարտիրոսութիւն եւ քաղաքական ստրկութիւն, միմիայն որպէս զի վտանգի տակ չը ձգեն իրենց դաւանած վարդապետութիւնը։ Երուսաղեմի եկեղեցիների մէջ խաչը վերստին գնելուց յետոյ, Հերակլ կայսրը երբ այցելեց Հայաստան, հայոց զօրքերը մերժեցին բանակել նորա զօրքերի հետ։ Միջին դարերում, երբ Սասանեանները արդէն մոռացուել էին, եւ երբ նոցա յաջորդող խալիֆաները իրենց կարգով մօտենում էին իրենց քայքայմանը, պինդ-գլուխ Հայ հոգեւորականութիւնը զօր էր անում երկրորդ անգամ մկրտելու երեխաներին եթէ առաջին մկրտութիւնը կատարուել էր Յոյն քահանայի ձեռքով։ Միութիւն յառաջ բերելու ամեն տեսակ փորձեր եղան, բայց ի զուր։ Որքան աւելի հրապուրիչ էին Յոյների առաջարկները, այնքան աւելի էր սաստկանում Հայերի ատելութիւնը նոցա վերաբերմամբ։ Ոչ էլ Հռոմայ պապերը կարողացան ձեռք բերել դըրանից աւելի լաւ մի յաջողութիւն։ Էջմիածնի գանձարանի վրայ նոքա աւելացրին գեղարուեստական մեծարժէք ընծաներ, նոցա առաջար՛ների հետեւանքը, սակայն, պարապ դուրս եկաւ։ Թէպէտեւ այս տեսակ կամակոր վարմունքը պարզապէս սպաննեց Հայաստանի քաղաքակրթութեան դատին, բայց մեր հեղինակը խորհում է թէ այդ անքաւելի հանգամանք

կրող վարմունքի վրայ նայելու է աւելի արգահատանքով քան թէ զայրոյթով։ Իրաւ է թէ Հայը ըստ ամենայնի յառաջդիմութեան ընդունակ մի տարր է, ուստի եթէ տեղի ունեցած չ'լինէին այդպիսի յամառութիւններ այսօր գուցէ բոլորովին տարբեր ու նախանձելի լինէր այդ ժողովուրդի մտաւորական եւ քաղաքական վիճակը։ Հայերը մաքառել են ամեն տեսակ յուսահատական վտանգների դէմ անկորուստ պահելու համար իրենց ցեղային ուրոյնութիւնը, եւ ազգի ստուար մասը զոհ է գնացել այդ պայքարների մէջ. հաւանօրէն այս է պատճառը որ մի առանձին սարսափով էին դիտում ո եւ է նպաստաւոր առաջարկ որ մտադրում էր իրենց իրենցից ուժեղ օտարից։ Պատմութիւնից քաղած դաս այն է թէ ո՛չ մի ժողովուրդ, նաեւ, ո՛չ մի քրիստոնէական կազմակերպութիւն, կարող պիտի լինի յաջողել իր մէջ չուռ տալու Հայերին եթէ հետամուտ լինի խոտորեցնել նրանց իրենց սեփական համոզումներից, եւ խուչընդոտներ հանէ նոցա առջեւ իրենց սեփական հասկացողութեամբ յառաջ վարելու իրենց սեփական փրկութեան գործը։

Հեղինակի կարծիքով, նոյն իսկ այսօր մտքերի անհրաժեշտ բարեշրջումն գրեթէ չէ տեսնւում կրօնական խտրականութեան զգացումի մէջ։ Հայ եւ Յոյն եկեղեցիների գոյութիւն ունեցող դիրքը իրար հանդէպ դեռ եւս կարելի է սահմանել այն միեւնոյն բառերի մէջ որ գործ էին ածում սրանից ութը դար առաջ, երբ ասում էր թէ Յոյները փառք էին տալիս Աստուծոյ որ իրենք Հայերի նման չեն. Հայերն եւս իրենց կարգին մեծ փառք էին տալիս Աստուծոյ որ իրենք Յոյների նման չեն։ Հեղինակը դիտում է թէ, բացի վարդապետութիւնից եւ ծիսակատարութիւնից, ներկայ ժամանակի ճանապարհորդը պիտի նշմարէ նա-

եւ չօշափելի տարբերութիւն Յոյն եւ Հայ եկեղեցիների միջեւ։ Սուրբ պատկերների — իկոնների — հետքն անգամ չէ տեսնում հայ տուների մէջ, մինչդեռ չկայ օրթոդոքս տուն առանց իկոնի։ Ինչ վերաբերում է Հռոմայ եկեղեցիին, հաւատքի անդունդը աւելի խոր է իւր եւ նորա միջեւ քան թէ իւր եւ Յոյնի։ Յոյն եկեղեցիի նման Հայ եկեղեցին մերժում է Filioque-ը, եւ, հարկ չկայ ասելու թէ, չէ ընդունում պապի անսխալականութիւնը։

## ՄԻՋԻՆ ԴԱՐ

Գրքի տասն եւ ութերորդ գլխում հեղինակը կատարում է ուսումնասիրական եւ գեղարուեստական մի պտոյտ Հայաստանի միջնադարեան պատմութեան մէջովն։ Իւր կրկնակի նպատակն է պատմել Անի մայրաքաղաքի տարեգրութեան գլխաւոր դէպքերը, եւ, միաժամանակ, ընդարձակօրէն ուրուագծել Միջին Դարերի Հայկական թագաւորութեան վաւերական յիշատակագրութիւնները։ Այդ գլուխի եօթանասուն եւ հինգ երեսների վրայից Լինչի գրիչը սլանում է գիտական պերճաբանութեամբ։ Նորա զգացումների ել եւ էջը տեղ տեղ այնքան բուռն եւ ազդեցիկ է որ Հայ ընթերցողը մի վայրկեան պէտք սկսի խորհել թէ հեղինակի երակների մէջից դիւրազգած Հայի արիւնն է հոսում. Նորա սիրտը, կարծես, խորտակւում է, ճակատագրական դառն ձախորդութիւնների հանդէպ, եւ հոգին վեր է բարձրանում ի տես անձայն աւերակների ձայնաւոր փառաւորութեան։

Մեր հեղինակը յատուկ կարեւորութիւն է ընծայում Հայաստանի միջնադարեան անցքերի պատմութեանը, ըստ որում բանի տեղ չ'դրուած այդ նիւթի ուսումնասիրութեան մէջ է որ տեսնում Հայերի այժմեան անկեալ վիճակի բացատրութիւնը։ Անշուշտ այս պիտի լինի պատճառը որ նա առանձին ուշադրութեամբ է առաջնորդում իւր ընթերցողին այդ նիւթի քննութեան լաբիւրընթոսի մէջից եւ բերում լոյս աշխարհ հանում նորան մեր ապրած գարագլխի դրան չէմքի առաջ։ Հայ ժողովուրդի բնական զարգացումը կանգ առնուեցաւ Սելջուկական նուաճումներից, եւ նորա է'ն յաջողակ ներկայացուցիչները որոնեցին իրենց համար նոր հայրենիքներ։ Մի խումբ կտրիճներ ապաւինեցին Կիլիկիայի լեռները եւ այնտեղում հիմնեցին մի փոքրիկ թագաւորութիւն որը դիմացաւ մօտ երեք հարիւր տարի (1080—1375)։ Ցեղային յամառութեան օրինակը այս գաղթականութիւնն եւս ցոյց տուեց իւր երկարատեւ դիմադրութեամբն Հռոմայ պապի գերիշխանութիւնը ճանաչելու մասին։ Սակայն երբ քրիստոնեայ աջակից եղան Խաչակիրներին, եւ այս պատճառաւ նոցա բարեկամները համարուեցան հակառակորդ—թշնամի Եգիպտոսի խալիֆաներից, որոնք նուաճեցին երկիրը եւ այսպէսով հանգցրին Հայոց անկախութեան՝ այդ վերջին ճառագայթը։ Նոցա թոռների մնացորդը դեռ եւս ամրացած ապրում է Զէյթունի սարերում եւ անկախութեան զգացումը տակաւին եռ է գալիս նորա ջղերի մէջ։ Սելջուկների աշխարհակալութիւնից յետոյ Հայ ժողովուրդի ցիրուցան լինելու մի այլ գլխաւոր երեւոյթն էր Անիի բնակիչների գաղթումը դէպ ի Լեհաստան, Մոլդաւիա, եւ Գալիցիա, Աստրախան՝ Կասպից Ծովի հիւսիսային ափերը, եւ այն տեղից դէպի Խրիմ։ Այս հեռաւոր գաղթականութիւն-

ներից ոմանք դիմացել են մինչեւ ներկայ օրը ։ Նոցանից ոմանք թոյլատուութիւն էին ձեռք բերել պահպանելու իրենց սեփական օրէնքները , եւ միջնադարեան Հայ թագաւորների օրէնսգիտութիւնը որոշակի նշմարւում է Լեմբերգի գաղթականութեան դատաստանագրքի մէջ ։ Այս քաղաքը կառավարւում էր Հայ երեւելիներից , Լեհական թագաւորների մասնաւոր արտօնութեամբ , եւ այս առանձնաշնորհումը դեռ պահպանւում է մինչեւ ներկայ ժամանակը ։

Անիի աւերման տխուր յիշատակագրութիւններից յետոյ մեր հեղինակը թափանցում է ճարտարապետութեան պատմութեան մթնոլորտի մէջ եւ ասում է թէ մեծարժէք կարեւորութիւն ունեցող մի դաս կարելի է առնել Բագրատունեաց հարստութեանց մայրաքաղաքը այցելեցուց , եւ անհետացած մի քաղաքակրթութեան կենդանի վկայութիւնը ուսումնասիրելուց ։ Այդ մեռած քաղաքի ամեն մի քարակոյտի առջեւ բարձրանում է Հայ ցեղի անցեալ քաղաքակրթութեան անջնջելի ապացոյցը ։ Անիի յիշատակարանները պայծառ լոյս են սփռում Հայ ժողովուրդի առանձնայատկութեան վըրայ , եւ աչքի առջեւ են գնում Հայ ազգի պատմութեան մէկ հիանալի պատկերը ։ Դոքա չ'են թողում տարակոյսի ո եւ է մի տեղ մարդուս մտքի մէջ թէ այս ժողովուրդը իրաւամբ արժանի է վերաբերուելու այն փոքրաթիւ ցեղերի կարգին որոնք ցոյց են տուել իրենց ընդունակութիւնները դէպի բարձրագոյն զարգացումն ։ Դոքա հանդէս են բերում Հայերին իբրեւ ճարտար եւ համապատշաճ միջնորդներ , մի կողմից , Հռոմից բիւզանդական կայսրութեանը ժառանգ մնացած քաղաքակրթութեան եւ , միւս կողմից , Արեւելքի ազգերի քաղաքակրթութեան միջեւ ։ Դոքա հանդիսաւորապէս յայտարարում են այն ողբերգական յանկարծականութիւնը

*որով այս ցեղի բնաջնումը խամրեցաւ ճիշտ այնպիսի մէկ ժամանակ երբ նա տէր էր դարձել մի որոշ չափի քաղաքական ազատութեան, եւ երբ նորա գործնական հնարաւորութիւնները սկսել էին պտուղ արտադրել։ Անիի անկումից յետոյ հայ ճարտարապետները օգտակար եղան միայն իրենց մահմեդական վարիչների ճաշակին, եւ Սելջուկ աշխարհակալութեան յաջորդող երկար դարերի ընթացքում նոցա հայրենակիցների ուշիմութիւնը ծառայեց Ասիայի կէս բարբարոս ժողովուրդների կամայական շահերին, մինչդեռ նոցա ունակութիւնները եւ բարուց նկարագիրը հետզհետէ խոնարհեցան գլխիվայր, եւ դարձան նուաստ։*

*Մեր հեղինակը մեծ ցաւ է զգում դէպի Անիի գեղեցիկ աւերակներն ցոյց տրուած անհոգութեան համար։ Մէկը միւսի ետեւից քայքայում են Հայերի պատմական արժանաւորութեան այդ միակ ապացոյցները եւ դոցա անհետացումով ոչինչ պիտի մնայ Հայաստանում որ օտար ճանապարհորդին զգացնել տայ մեր ժողովուրդի վաղեմի փառաց նշանը։ Հարուստ Հայերը, ասում է Լինչ, ահագին գումարներ են ծախսում Էջմիածնի պայծառութեան համար։ Արդեօք պիտի չ՛գտնուի մէկը որ, ի մխիթարութիւն ապագայ սերնդեան, կորուստից ազատ պահէ իրենց ազգային հանճարի այս չքնաղ նմոյշները։*

# ՀԱՏՈՐ Բ.

# ԹՐՔԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՀՄԱՆԸ

Հ. Լինչի գործի երկրորդ հատորը նուիրուած է հին Հայկական Թագաւորութեան այն հարաւ-արեւմտեան մասին որ այսօր գտնուում է Օսմանեան լուծի տակ։ Ռուսական Հայաստանի աշխարհագրական հետազօտութիւններ կատարելիս մեր հեղինակը իրեն աջակից է ունեցել Հերման Աբիխի ընտիր աշխատասիրութիւնը, մինչդեռ Թրքական Հայաստանի աշխարհագրութիւնը ուրուագծելու համար նա պարտաւորուած է եղել ապաւինել գրեթէ ամբողջապէս ուղղակի իւր անձնական եւ մասամբ իւր բարեկամների քննութիւններին։ Այս ճանապարհորդութիւնից առաջ Հայաստանի այդ բաժինը մի պղտոր միջավայր էր աշխարհագրական տեսակէտից։ Բայց այժմ կը բաւէ ուշի ուշով կարդալ այս նիւթին վերաբերող գլուխը եւ, ըստ այնմ, ուսումնասիրական ակնարկներ ձգել մեծ քարտէզի վրայ ըմբռնելու համար թէ նա որպիսի նուրբ ճշգրտութեամբ է պարզաբանութիւն տուել երկրի սահմանային դրութեանը, եւ որոշել այն մասերից որոնք դեռ եւս մնում են իբր մի տեսակ մութ հողեր աշխարհագրական գիտութեան մէջ։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Հ. Ինչ մեր միտքն է ձգում մի իրողութիւն որ հակառակ իւր թարմութեան, առասպելական ձեւ է առել մեր հանրային երեւակայութեան մէջ։ Նա ասում է թէ, երբ 1878ին, Ռուսօ-Թրքական պատերազմի վախճանից յետոյ, Եւրոպական պետութիւնների գլխաւոր քաղաքագէտները մէկտեղ եկան Բերլինի Վեհաժողովում, իրենց առաջ խնդրամատոյց ունեցան Հայ ժողովուրդից պատուիրակներ, որոնցից մէկն էր Խրիմեան Հայրիկ ամենայն Հայոց ներկայ կաթողիկոսը։ Ի պատասխան լիազօրների հարցափորձերին թէ Օսմանեան կայսրութեան ո՞ր բաժինների վրայ է որ Հայերը տակաւին պնդազարդում են իրենց պատմական անունը, պատուիրակները իրենց ծոցից դուրս հանեցին Կիպերտի մի քարտէզը եւ աշխատեցին նորա վրայ մատով ցոյց տալ մի տարածութիւն գունաւոր յատուկ գծով շրջապատուած։ Իւր երեսի վրայ այդ հետաքրքրական աւելացրութիւնն կրող Կեպերտեան քարտէզը իւր համար այժմ հանգիստ ննջում է Բերլինի Արտաքին Գործոց Նախարարութեան արխիվի մէջ, եւ մեր հեղինակը Գերման կառավարութեան հաճութեամբ, պատեհութիւն է ունեցել ձեռք առնել այդ քարտէզը իւր ուսումնասիրական նպատակին գոհացումն տալու դիտումով։ Այդ գունաւոր գիծը սկսում էր պարսկական սահմանագլխից եւ Թուրքօ-ռուս սահմանագծի հետ զուգընթացաբար ուղղւում էր մինչեւ Սեւ Ծով, որի ափերովը երկարում է մինչեւ Տիրէպօլի եւ այդ տեղից, երբ

արեւմտեան սահմանագիծ, իջնում էր մինչեւ Կիզիլ-Ջիբուք-Չայի Եփրատի հետ խառնուելու կէտը, իւր մէջ առնելով Կիւմիւշխանէ, Ակն եւ Եփրատ։ Հարաւային կողմի այդ գիծը շարունակւում էր Կիզիլ-Ջիբուք-Չայից դէպի Տիգրանակերտ Սղերտի հիւսիսադէմն, Կոր-դեաց վայրենի լեռների մէջից դէպի Շատախ եւ միա-նում էր պարսկական սահմանի վրայ այն կէտին ուր-տեղից որ սկսել էր արդէն։ Այս էր ահա այն տարա-ծութիւնը որի համար Հայ պատուիրակները խնդրում էին Լիազօրներից տալ վարչական մի անջատ կազմակեր-պութիւն։ Պատուիրակները ցանկանում էին որ այդ նորաձեւ Հայկական նահանգը կառավարուէր հայ պաշ-տօնեաների ձեռքով մի հայ ընդհանուր-կառավարիչի իշխանութեան տակ, եւ այս բարձր պաշտօնեան նշանակ-ուէր Բ. Դանից Մեծ պետութիւնների հաւանութեամբ։ Առ այս, Լիազօրները ուզեցին տեղեկանալ թէ ինչպէս էր արդեօք հայ եւ մահմետական ազգաբնակութիւննե-րի յարաբերական թիւը այդ խնդրուած երկրում։ Պատուիրակները ցոյց տուին մի վիճակագրութիւն, ո-րից երեւում էր թէ Էրզրումի, Վանայ եւ Բիթլիսի վիլայէթներում (Սղերտը դուրս հանուած) մահմեդա-կանների գումարն էր 528,000, եւ ոչ-մահմեդականնե-րի թիւը 1,172,000։ Պրուսիոյ մայրաքաղաքում հաւաք-ուած Եւրոպայի դիւանագիտութեան իմաստունները գուցէ դպրոցում կարդալիս լսել էին մի պատմական Հայաստանի անունը, բայց դրանից այն կողմ չէր ան-ցնում նոցա հմտութիւնը երկրի աշխարհագրութեան մասին, բնականաբար ինկատ իսկ չառին երկրի սահ-մանաւորման հարցը ուր մնաց որ համաձայնէին յա-տուկ ինքնավարութիւն տալ նրան։ Խոստովանելով, սակայն, թէ արդարեւ թրքական տէրութեան ինչ ինչ տեղերում կան Հայ պարունակող գաւառներ, այդ առ-

թիւ նոքա պարզապէս ներմուծեցին դաշնագրի մէջ մի
յօդուած որով Բ. Դուռը պարտաւորւում էր բարենորո-
գումներ գործադրել «Հայերով բնակուած նահանգնե-
րում»։

Լիազօրները վերադարձան ամեն ոք իւր երկիրը,
գոհ իրենք իրենցից եւ իրենց կատարած գործից։ Եւ-
րոպան իսպառ մոռացաւ Հայերին, ո՛չ էլ պետութիւն-
ները հաւաքաբար ցոյց տուեին մինչեւ ներկայ օրս
գէթ ամենափոքր հետաքրքրութիւն Հայկական հար-
ցի մէջ։ Միայն Անգլիան ձեռք առաւ խնդիրը փոքր
ինչ լրջօրէն։ Բայց լորդ Բիկոնսֆիլդի հեռատես քա-
ղաքականութեան անտեղի նկատառումը պատճառ եղաւ
Անգլիային յետ կենալ ծեծելուց երկաթը մինչ տակա-
ւին տաք էր։ Երբ Գլադստոնի կառավարութեան կար-
գը եկաւ գործ տեսնել Հայկական մանուածապատ
հարցի հետ, նա չէր կարող յուսալ բարեկամական խոր-
հուրդներով ազդել Թուրք կառավարութեան վրայ, քա-
նի որ պաշտօնի վրայ չգտնուած միջոցին Գլադստոն եւ
իւր համախոհները ամեն տեսակ նախատինք եւ նը-
ւաստացումն էին թափել Թիւրքիոյ գլխին,

Անգլիոյ Կ. Պոլսի դեսպան Գոշէն, Գլադստոնի
վարչութեան հրահանգով, փորձ փորձեց դիւանագիտա-
կան պարզաբանութեան մէջ դնել այդ խնդրի յարա-
կից դժուարութիւնները։ Բեռլինի Դաշնագրից յետոյ
մի քանի հիւպատոսական ձեռնհաս պաշտօնեաներ ղըր-
կուեցան Անգլիայից դէպի ամբողջ Փոքր Ասիա յանձ-
նարարութիւն ունենալով տեղեկագիր պատրաստել երկ-
րի ընդհանուր վիճակի եւ այն անհրաժեշտ բարենորո-
գումների մասին որոց Թրքական վարչութիւնը կա-
րող էր պէտք ունենալ։ Այդ տեղեկագիրները հետաքրքը-
րական եղաւ Կապոյտ Տետրակի ընթերցողների համար,
բայց Հայկական հարցի համար Անգլիական դեսպանը

չկարողացաւ քաղել նրանցից այն պէտքական տեղեկութիւնները որոց հիման վրայ ուզում էր կառուցանել իւր ձեռք բերելիքը ։ Իրենք Հայերն էլ, որոց համար դեսպանը աշխատում էր, նորան ընձեռեցին ծուռ վիճակագրութիւններ, եւ ամենեւին չէ երեւում որ ո եւ է գրական վստահութիւն ներշնչած լինեն նորան իրենց դատի լրջութեան վերաբերմամբ ։

Այդ վիճակագրութիւնները Ներսէս պատրիարքից յանձնուեցան Գօշէնին որ, հիւպատոսների եւ պատրիարքի, նպատակին անօգտաւէտ տեղեկութիւնների հանդէպ շուարած հետեւեալ կերպիւ գրեց Լորդ Գրանվիլին 1880 յուլիս 13 ին ։ «Իմ զօրաւոր համոզումն է թէ պետութիւնները չ՚են կարող հետեւել ո եւ է մի ծրագրի եւ ոչ էլ մի գործ տեսնել մինչեւ որ չիմանան իրական փաստերը ազգաբնակութեան մասին ։ Չէ կարելի գործ անել սխալ հիման վրայ, եւ ես համոզուած եմ զգում թէ չկայ մէկը որ ապահով փաստ ունենայ իւր ձեռքի տակ ։ Պատրիարքի թուանշանները այնքան չափազանցուած են որքան Դրան թուանշանները փոքրացուած են միւս կողմից ։ Դարձեալ, ի՞նչպէս անել Թափառական Քիւրդերի հետ ։ Ամեն բան պէտք է կախումն ունենայ երկու տարբեր ցեղերի եւ կրօնների ֆիզիքական ուժից ։ Եթէ Հայերը փոքրամասնութիւն են վտանգաւոր պիտի լինի տալ նոցա այն վարչական դրութիւնը որը պիտի տայինք եթէ նոքա մեծամասնութիւն լինէին, այս բանը վտանգաւոր պիտի լինէր բուն իսկ Հայերին» (Կապոյտ տետրակ. Թուրքիա Նօ. 6, 1881, երես 16) ։ Եւ, դարձեալ, յուլիս 13 թուակիր մի ուրիշ նամակով գրում է. «Բարենորոգումների ներկայ ծրագիրների վերաբերմամբ, պատրիարքի նամակը այն տեսակ տարտամ դարձուածներով է միտք արտայայտում որ շատ քիչ օգուտ կարելի է քաղել նրանից խնդրի լուծումը

լուսաբանելու համար» (Նոյն թիւ 20)։

Այս ամենի հետեւանքը այն եղաւ որ, ո եւ է որոշ ծրագիր չգրուեցաւ Դրան առջեւ, եւ ինչ որ աւելի կարեւորն է, ո եւ է որոշ քաղաքականութիւն չ'կազապարուեցաւ անգլիական դեսպանի կամ միւս պատասխանատու դեսպանների մտքի մէջ։ Անգլիոյ գրգռիչ գործունէութիւնը Փոքր Ասիայում, եւ Դրան գլխին թափուած տեղեկագիրները նորա վարչութեան յոռի սխտեմների վերաբերմամբ, երեւում է սրտի վրդովում պատճառեցին ոչ միայն Թիւրքիային այլ նաեւ Եւրոպական պետութիւններին։ 1881 փետրուար 10 ին Անգլիոյ Արտաքին Գործերի Նախարարը հետեւեալ յայտարարութիւնը արեց։ «Գերմանական կառավարութեան յարուցած առարկութիւնների հետեւանօք, Պարոն Գօշէն յանձնարարութիւն չպիտի ստանայ յառաջ տանելու Հայկական հարցը Կ. Պոլիս վերադառնալուց յետոյ»։ Այսպէս ուրեմն Բիսմարքի մէկ բառը բաւական եղաւ ջուրը ձգել Հայկական բարենորոգումների ամբողջ խնդիրը որի համար Անգլիան աշխատում էր մի ո եւ է լուծումն գտնել։

Մեր հեղինակը կարծում է թէ Հայկական պարզ խնդիրը առեղծուածի փոխուեցաւ Բերլինի Դաշնագրի սահմանած որոշումով։ Այդ դաշնագիրը յիշում է Հայերով բնակուած նահանգների մասին։ Ի՞նչպէս կարելի է լուծել այս պարբերութիւնը։ Հայերը կարեւոր քանակութեամբ ցանուցիր եղել են Փոքր Ասիոյ բովանդակ մակերեւոյթի վրայ։ Այս ցրուածութիւնը համեմատաբար հնաւուր պատմական անցքերի հետեւանքն է։ Բերլինի Վեհաժողովը ձեւացնող պետութիւնների համար պահանջել Դռնից բարենորոգումների ներմուծումն հայերով բնակուած նահանգներում, եւ հսկել նորա միջոցների անթերի կատարմանը, գրեթէ այնքան մի դըժ-

ուարին ձեռնարկ էր իսկապէս, որքան եթէ Եւրոպան միտք յայտնէր իւր խնամակալութեան տակ առնելու ամբողջ Թրքական կայսրութիւնը։ Խնդիրը գուցէ պարզուէր եւ դիւրին լուծումն ստանար եթէ ապացուցուէր թէ կային որոշ գաւառներ ուր Հայերը կազմում էին մեծամասնութիւն, եւ ուր նոքա կարող էին պատրաստել կառավարելու համար պէտք եղած ոյժը, վայելելով մի որոշ աստիճանի տեղական ինքնավարութիւն՝ մնալով հանդերձ իբր Սուլթանի հպատակներ։ Բանից երեւում է որ ո՛չ Հայերը ո՛չ էլ Բրիտանական հիւպատոսները կարողացել են մէջ տեղ դնելու այս տեսակ մի լուծման համար պահանջուած վկայութիւնը։ Պարոն Լինչ դիտել է տալիս թէ Ասիական հարցերի հետ գործ ունեցող Եւրոպական դիւանագէտներին մի բան է պակասում. նոքա պէտք ունեն սերտ ծանօթութեան Ասիական աշխարհագրութեան վերաբերմամբ։ Հայկական հարցի մասին կատարած իւր երկար հետազօտութիւնից նա որոշակի տեսնում է թէ քաղաքագէտները ամենեւին ուշադրութեան չեն առել խնդրի այս կողմը։ Հայ պատուիրակների ծրագիրը առաջադրեալ հայկական նորակազմ նահանգի շրջանակի մէջ ներփակում էր բնական գծից դուրս ընկած երկիրներ որոնք տնտեսական եւ քաղաքական կապերի տեսակէտից գլխովին անհամանման էին, եւ մեր հեղինակը ասում է թէ քաղաքական խելագարութեան մի արարք պիտի լինէր ճգնել իրար հետ դարբնելու նրանց մէկ սոսկ Ընդհանուր Կուսակալի իշխանութեան տակ։ Բրիտանական հիւպատոսները իրենց տեղեկագիրներում համանման սխալանքի մէջ են ընկել։ Օրինակի համար, հայկական նահանգների ազգաբնակութիւնը հաշուելիս, շրջանակի մէջ են անցկացրել գծից դուրս ընկած լայնածաւալ գաւառներ, ինչպէս

է Վանայ նահանգին պատկանող Հէքեարի գաւառը ուր հայ բնակիչները շատ քիչ են, եւ բոլորովին ցանուցիր, եւ ուր թէ՛ երկրի եւ թէ՛ ժողովուրդի բնութիւնը այնպէս վայրենի է եւ անհամբոյր որ նոքա դժուարութեամբ կարող էին ղեկավարուել Հայկական կենտրոններից։

Մեր հեղինակը երկարօրէն խօսում է այն պատճառների մասին, որով մի կողմից Թուրք կառավարութիւնը ուզում է պակաս ցոյց տալ Հայերի թիւը, եւ միւս կողմից իրենք հայ գիւղացիները ճգնում են պակաս ցոյց տալ իրենց գումարը, որպէս զի ազատուեն արու անդամների համար վճարած զինուորական խիստ ծանր տուրքերից։ Այսպէս ուրեմն արժանահաւատ վիճակագրութիւնների անգոյութիւնից նա ի զուր է համարում հաշուի առնել թէ Հայ ազգաբնակութիւնը ի՞նչ քանակութիւններով է բաժանուել Օսմանեան Կայսրութեան բովանդակ տարածութեան վրայ։ Հայ պատրիարքները հայերի ընդհանուր գումարը ներկայացրին Բերլինի Վեհաժողովին իբր 3.000.000 հոգի։ Պարոն Լինչ շատ չափազանցուած է նկատում այս թիւը։ Մի հայ կղերական գրող, որ պատրիարքարանի կողմանէ Հայաստան ղրկուած քննիչներից մէկն էր, իւր Թուրքաբնակ հայրենակիցների համագումարը հաշւում է 1.263.000 հոգի։(*) Գալով մեր հեղինակին, նա բաւական է համարում ենթադրել թէ Սուլթանի Հայ հպատակները մէկ ու կէս միլիոնից աւելի լինելու են, որոնցից գուցէ մի կէս միլիոնը բնակում է Թրքական Հայաստան կոչուած տարածութեան վրայ որ իր մէջ է ներփակում Վանայ, Բիթլիսի, Խարբերդի, Տիգրանակերտի եւ Էրզրումի այս հինգ նա-

(*) Վահան վարդապետ Պարտիզակցի—տես „Ճերիտէի Շարգիէ" 15 Դեկտեմբեր 1886.

հանգները։ Մնացեալ մէկ միլիոնը սփռուած են Կայսրութեան այլ եւ այլ մասերում, ձեւացնելով բաւականին շատ հասարակութիւններ առաւելապէս բազմամարդ քաղաքներում։ Նախ քան 1895 ի կոտորածը Կ. Պոլսի Հայերի թիւն էր 180.000 հոգի որոնցից 80.000 ը ժամանակաւոր գաղթականներ էին Թրքական Հայաստանից, մինչդեռ միւս 90.000ը այլ եւս հաստատուն գաղթականներ էին։ Ուրիշ կարեւորութեան արժանի խումբեր հանդիպում են հիւսիսային Սիրիայում եւ Կիլիկիայում ուր, բացի քաղաքներից, Զէյթունի ամուր լեռները ծածկուած են կտրիճ հայ շինականի խրճիթներով։ Փոքր Ասիոյ քաղաքները Եփրատից մինչեւ Բրուսա եւ Զմիւռնիա իրենց բնակիչների շարքում պարունակում են մեծաքանակ հայազգի քաղաքացիներ։ Մի եւ նոյնը կարելի է ասել ցած երկիրների քաղաքների մասին, սկսեալ Պարսկական ծոցից մինչեւ Տիգրանակերտ։ Տրապիզոնը ունի մի բազմամարդ եւ ծաղկող հայ գաղթականութիւն, ինչպէս նաեւ Սեւ Ծովի ափերի վրայ կառուցուած բարգաւաճ քաղաքների մեծագոյն մասը։ Իսկապէս Հայը ամենուրեքեան է, մօտաւորագոյն Պարսկաստանի հիւսիսային նահանգից մինչեւ Միջերկրական Ծովը եւ Հնդկական ովկիանոսը։ Պարոն Լինչ, սակայն, չէ հաւատում թէ աշխարհիս վըրայ ապրող բոլոր Հայերը միասին վեր առած 3,0000,00 ից աւելի են։ Կլոր հաշուով նոքա բնակուած են հետեւեալ վայրերում.—

| | |
|---|---|
| Հայկական սարահարթ (Ռուսական եւ Թրքական նահանգներ . . . . . . . . | 906,984 |
| Կաւկաս եւ Անդր–Կաւկաս . . | 450,000 |
| Աստրախան եւ Բեսարաբիա . . | 75,600 |
| Ասիական Թիւրքիոյ միւս մասն | 751,500 |

| | |
|---|---|
| Եւրոպական Թիւրքիա . . . . | 186,000 |
| Ատրպատական (*) . . . . | 28,890 |
| Նոր Ջուղա եւ շրջակայք Պարսկաստանի(*) | 14,110 |
| Բուլղարիա եւ Արեւելեան Րումէլի | 5,010 |
| Ռումանիա . . . . . . . . | 8,070 |
| Աւստրիա . . . . . . . . | 1,230 |
| | 2,427,394 |

Խնդրի առարկայ եղող Թրքական Հայաստանի վերոնշանակեալ հինգ վիլայէթներում հայ ազգաբնակութեան առաւելութիւնը զանազան աստիճաններ վերայ է. այսպէս, մահմեդական բնակիչների թիւի հետ համեմատած, Հայերը աւելի մեծ ոյժ ունեն Վանայ վիլայէթում քան ո եւ է ուրիշ տեղում: Այստեղ, եթէ դուրս ձգուի Հէքիարիի գաւառը, նոքա գրեթէ մէկ-երրորդով գերազանցում են ազգաբնակութեան մահմեդական տարրին: Բուն իսկ Վան քաղաքում Հայերը մօտ երկու անգամ աւելի են Մահմեդականներից: Բիթլիսի վիլայէթում նոքա մեծամասնութիւն են Մուշի շրջակայքում, եւ Բուլանըխի արգաւանդ գաւառում՝ Վանայ ծովից դէպի հիւսիւսային արեւմուտք: Միւս կողմանէ, նոքա մահմեդականների թիւից յետ են մնում Խարբերդի նահանգի մէջ, եւ Տիգրանակերտի վիլայէթութեան Բալու գաւառում: Էրզրումի կուսակալութեան մէջ հազիւ գտնուի ո եւ է շրջանակ ուր նոքա թւով պակաս չլինեն իրենց մահմեդական հարեւաններից, եւ հաւաքաբար վեր առած չորս մահմեդականի դէմ մի Հայ է ընկնում: Մեր հեղինակը, սակայն, ազդարարում է իւր ընթերցողին թէ Հայ տարրի յարաբերական զօրութիւնն ի հաշիւ առնելիս, այնքան էլ շատ մեծ կարեւորութիւն ընծայելու չէ թիւերի ստորադասութեանը: Իւր այս ասածին բա-

(*)Լորդ Քերզընի "Պարսկաստան". երես 548 և 493.

ցատրութիւն տալու համար նա յառաջ է բերում մի
քանի ապացոյցներ որոնք նա համարում է իբր արժա֊
նի եւ անհրաժեշտ իւր ընթերցողի ուշադրութեանը։
Նախ եւ առաջ, երկրի ամենաարգասաբեր բաժինը
Հայերի ձեռքումն է։ Վանայ լճի հիանալի շրջակայ֊
քը, Բուլանըխի, Մուշի, եւ Խարբերդի ընդարձակ
դաշտերը բնակուած են Հայ գիւղացիներով որոնք ոչ
միայն մահմեդական գաղթականներից պակաս չար֊
քաշ չեն այլ դեռ նրանցից շատ աւելի աշխատասէր
ու յառաջդիմական են։ Հայերի ունեցած մի ուրիշ
առաւելութիւնն է նոցա նպաստաւոր աշխարհագրա֊
կան դիրքը Քիւրդերի եւ Թուրքերի բաղդատմամբ։
Հայ ազգաբնակութիւնը յօրինում է աստ տեղ տեղ
հոծ եւ տեղ տեղ ցանցառ, մի չարայարեալ բազմամ֊
բոխ որ սփռւում է սարահարթի մի ծայրից միւսը՝ ա֊
րեւելքից դէպի արեւմուտք, եւ որպէս դուրս ցց֊
ուած մի ժայռ անջատում է մահմեդական բնակիչ֊
ների երկու ճիւղերը իրարուց՝ Քիւրդերին դէպի հա֊
րաւ, եւ Թուրքերին դէպի հիւսիս։ Դարձեալ, Հայ
տարրի համերաշխութիւնը, թէ՛ քաղաքական եւ թէ
ընկերական տեսակէտից, ուշադրութեան առնելու ար֊
ժանի մի իրողութիւն է։ Եւ վերջապէս, պէտք է աչ֊
քի առաջ ունենալ այն գլխաւոր տեղը որ Հայերը
գրաւում են երկրի տնտեսական ասպարէզում, եւ չը
մոռնալ այն յայտնի ապացոյցը թէ Թուրքիոյ նա֊
հանգների Հայ ազգաբնակութիւնը ընդունակ է խիստ
արագ աճման ապրուստի բարեբար պայմանների տակ։
Եթէ արհեստն ու երկրագործութիւնը տակաւին պահ֊
պանում են իրենց խղճալի գոյութիւնը, այդ նոքա
պարտական են Հայ գիւղացիին։ Եւ մեր հեղինակը
իբր վճռական կարծիք յայտնում է թէ Հայ շինակա֊
նի յառաջացումը նշանակում է երկրի յառաջդիմումը,

իսկ նորա հեռացումը նշանակում է առիթ տալ երկրի քայքայմանը ։ Եւ սակայն , հեռացման հոսանքը շարունակւում է նորանոր ծաւալով ։ Առաջին Ելքը տեղի ունեցաւ 1839 ին երբ Պասկեւիչի բանակը ետ քաշուեցաւ դէպի Ռուսական հողը ։ Այդ Թուականից ի վեր գաղթումը շարունակւում է առաւել կամ նուազ , նայելով հունձքերի լաւութեան կամ վատութեան եւ Քիւրդերի սանձեալ կացութեան կամ սանձարձակ ասպատակութեան ։ Պարոն Լինչ ականատես է եղել մի քանի գաւառներում ուր Հայ գիւղացիները ճիգ էին թափում մի կերպ վճարել իրենց կառավարական պարտքերը եւ թոյլտւութեան ստանալ հեռանալու երկրից , իսկ շատեր պարզապէս փախչում էին իրենց ապաւէնը գտնելու ռուսական հողի վրայ ։ Միայն մի քաղաքական փոփոխութիւն հարկաւոր է արագաբար անապատի վերածւող այս երկիրը չրջելու՝ բարգաւաճ եւ յառաջդիմական միջավայրի ։ Սարաւանդի Հայ ազգաբնակութեան ետեւում կանգնած են նոցա արենակիցները որոնք ապրում են Փոքր Ասիոյ նուաղ անկարգ գաւառների մէջ ։ Լաւագոյն դարագլուխի հէնց սկզբին նոցանից շատերը անձկանօք պիտի դիմեն իրենց ցեղի վաղեմի հայրենիքը ։ Եւ այս երկիրը , որ նոյն իսկ իւր ամենավայրի անկիւններում դեռ պահպանում է հայ քաղաքակրթութեան աւանդութիւնները եւ որ զարդարուած է հայ ճարտարապետութեան աւերակներով , պիտի ձեռք առնէ իւր հին կարգ ու սարքը էականապէս նոր ոգւով ։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Պարոն Լինչի քաղաքական տեսութիւնը Հայկա՛կան շարժման մասին կարող է հաճոյ չթուիլ մեզանից ոմանց, բայց նա մտածում է իբր մի քաղաքագէտ որ արդեամբ բարեացակամ է Հայ ժողովըրդին, ապացոյց իւր բարոյական եւ նիւթական անհագին զոհողութիւնները որ դրել է մեր հայրենիքի ուսումնասիրութեան եւ նորա դատի պաշտպանութեան համար, իւր պատկառելի գործով։

Հեղինակը մատնացոյց է անում թէ 1894—95ի կոտորածները տեղի ունեցան Թրքական Հայաստանի սահմանագծից դուրս։ Այս ճշմարիտ է մինչեւ իսկ Սասունի վերաբերմամբ որը ընկնում է Մուշից հարաւ, մինչդեռ Սվազ, Տրապիզոն, Տիգրանակերտ, Մարաշ, եւ Այնթապ գտնւում են բուն Հայկական կենտրոնից շատ հեռու։ Նա տեսնում է երկու շարք պատճառներ իբր պատասխանատու Հայ զգացման վերջի պայթիւններին այնպիսի կէտերի վրայ որոնք ընկնում են ազգային պատմական բնավայրից բոլորովին դուրս, եւ ուր Հայ ժողովուրդը կազմում է ըստ ինքեան մի աննշան փոքրամասնութիւն։

Առաջին եւ գլխաւոր պատճառն է քաղաքական եւ ընկերային անհաւասարութիւնը քրիստոնեաների եւ մահմեդականների միջեւ։ Իրականապէս ճշմարիտ չէ թէ կրօնական ազատութիւնը բռնաբարուած է Հայերից, ինչպէս մի քանի կողմնակիցներ պնդում են անխորհուրդաբար։ Հեղինակը ապացուցանում է թէ ընդհա-

կառակն, կրօնական պաշտամունքի ո եւ է արգելք չը կայ սուլթանական հողի վրայ։ Մարդ ընդհակառակն զարմանում է գրեթէ չափազանց համարձակութեան հասած ազատութեան համար որ թոյլատրուած է զանազան դաւանութիւնների հետեւողներին։ Նոյն իսկ Կ. Պոլսում, զորօրինակ, Յոյներին թող է տրուել կատարելու իրենց աղմկալի փողոցային կրօնական տօնախմբութիւնները, թէպէտ եւ այս վարմունքը իսկապէս անախորժ է եւ հակառակ մահմեդական խտապահանջութեանց, եւ ջերմեռանդ միւսիւլմանը փողոցում ետ ետ է քաշւում խաչ ու խաչուարներով ու քրիստոնեայ քահանաների բազմութեամբ շրջապատուած մեռելական յուղարկաւորութիւնների առաջից։ Գաւառներում քրիստոնէական զանգակի ձայնը արձագանք է տալիս ձորերի մէջ այս կամ այն բլուրի վրայ թառած վանքերից։ Քաղաքներում կիրակնօրեայ երեւոյթը շատ չէ տարբերւում քրիստոնեայ պետութիւնների քաղաքների կիրակնօրեայ երեւոյթից։ Առուտուրը դադարում է, խանութները փակ են, ժամերգութիւնը լսւում է եկեղեցիներից։ Ինչ որ ժխտուած է Քրիստոնեաներին՝ այդ քաղաքական հաւասարութիւնն է։ Նոքա թոյլատրուած են բայց նոքա հարկատու են, որովհետեւ մնում են անհաւատներ՝ օրէնքից աւելի հզօր նախապաշարման զոհեր։ Իսկ ինչ վերաբերում է մասնաւորապէս Հայերին, նոքա խստիւ արգիլուած են հրացէն ունենալու իրաւունքից եւ չեն կարող ընդունուիլ զինւորական ծառայութեան մէջ։ Վարչական բարձրագոյն պաշտօնները փակ են նոցա առաջ։ Իսկ նահանգային կառավարութիւնների մէջ նոցա մասնակցութիւնը գրեթէ զéroի է հաւասարում։ Ի նպաստ քաղաքական հաւասարութեան հանդիսաւորապէս յայտարարուած հրովարտակները մնացել են անգործադրելի, եւ յուսահատ սրտեր ի զուր ակնկառոյց

սպասում են օրէնքի խոստումներին։ Միեւնոյն ժամանակ Արեւմուտքի ձայնը լսելի էր լինում աւելի բարձր եւ աւելի մօտ, եւ արեւելեան Եւրոպայի օրինակը դարձաւ իբր յոյսի փարոս ապստամբական ոգու արծարծմանը մի անգամ ընդ միշտ ազատուելու համար միւսիւլմանական լուծից։

Այսքանը Հայկական վերջի շարժման պատճառների մէկ շարքին համար։ Բայց, կարելի է հարցնել. ինչո՞ւ շարժումը հիմք գտաւ բուն սահմանից դուրս ընկած ցանուցիր հասարակութիւնների մէջ որոնք իբր զոհաբեր պատանդներ մատնուեցան միւսիւլման պետութեան զայրոյթին։ Լինչ ասում է թէ շարժումը սկսեց այդ տեղում որովհետեւ չէր կարող սկսել մի այլ տեղում, քանի որ 1890 ի եւ 1891 ի բուն Հայաստանի մէջ տեղի ունեցած պայթիւնները զսպուեցան ջլատիչ խստութեամբ։ Յեղափոխական կուսակցութեանց համար յայտնի էր թէ բնիկ հողի վրայ ապրող իրենց հայրենակիցների ոգին թուլացել էր այլ եւս։

Մեր հեղինակը վկայում է թէ բուն Հայաստանի Հայերի իրաւանց բռնաբարումը շա՛տ աւելի մեծ էր եւ զրկանքը շատ աւելի ծանր, այսուամենայնիւ վերջին փորձառութիւնից նոքա լա՛ւ հասկացել էին թէ իրենց ոչինչ էր մնում բայց միայն տոկալ լուռ եւ մունջ առանց նոր փորձի դիմելու իրենց մարդկային իրաւունքների վերահաստատման համար։ Հետեւաբար հարկը այնպէս պահանջեց որ իւր ծննդավայրում զսպուած շարժումը պայթեցաւ նոր հողի վրայ։

Լինչ ապացուցանում է թէ եթէ Դուռը հետեւէր իւր 1890 ի պատշաճաւոր խստութեամբ ճնշելու քաղաքականութեանը կոտորածներ չէին կարող տեղի ունենալ, բայց մէ՛կ կողմանէ Հայ գործիչների ճիգերի հետեւանքը եւ միւս կողմանէ տեղային կա-

ռավարական իշխանութիւնների չարամէտ արարքները ծագում տուին նախ Սասունի կոտորածին 1894 ին, ապա 1895 ի յաջորդական կոտորածներին, որոնք տակն ու վրայ արին ամայացրին երկրի գաւառները եւ Հայկական սարահարթի մեծ քաղաքներից շատերը, բայց որոնցից գլխաւորն եւ տարօրինակն էր Օսմանեան Կայսրութեան մակերեւոյթի վրայ սփռուած բոլորովին անջատ Հայ հասարակութիւնների եղերական դէպքը։

Հեղինակը այնպէս է գտնում թէ այս ցիրուցան Հայ հասարակութիւնների վիճակը չէր ներկայացնում դժկամակութեան ո եւ իցէ մասնաւոր շարժառիթ, եւ նա չէ հաւատում թէ յեղափոխական շարժումը, որին նոքա ամենքը մասնակցեցան մի որոշ չափով, ա՛յդ տեղերում էր առել իւր նախնական ծնունդը կամ ընտացել իւր յախուռն աճումը։ Այդ հասարակութիւններից շատ քիչերը առիթ ունէին կեանքի եւ մահուան պայքար մղելու ասպատակ Քիւրդերի դէմ, քանի որ այս խաշնարած յելուզակները ապրում են նոցանից շատ հեռու։ Միւս կողմանէ հայրենի հողից դուրս այդ հայերը մեծ մասամբ բարգաւաճ քաղաքացիներ էին քաղաքների մէջ ապրող։ Առաւել կամ նուազ կերպիւ նոքա ենթակայ էին այն մի եւ նոյն զրկանքներին որոց անխտրաբար ենթակայ են Սուլթանի բոլոր միւս քրիստոնեայ հպատակները։ Հայկական դատը, սակայն, այս տեսակ ընդհանրական զրկանքի հիման վրայ հիմնուած չէ, այլ այդ դատը ունի իւր արդարանալի եւ բանաւոր շարժառիթը։ Թրքական Հայաստանի հարցը, ամեն տեսակէտով, պարզապէս վարչային արդար դրութիւն հաստատելու մի պահանջ է։ Կայսրութեան այս մասի վրայ ապրողները Հայեր եւ Մահմեդականներ են միայն. մէկը հալածուող է, եւ միւսը մասնակի հալածող։ Հայի քրտինքով ձեռք բերած աշխա-

տանքի պտուղը չմրունալ քամում եւ յափշտակում է իր ձեռքից։ Հակառակ այս իրողութեան, Պարոն Լինչ ստուգապէս համոզուած է թէ 1895 ի կոտորածները մահմեդական տարրի ինքնաբուխ կատաղութեան արգասիքը չէին Քրիստոնեաների դէմ։ Այլ ամենքը, գրեթէ ամենքը, կազմակերպուել էին արտաքուստ։ Հայկական նահանգների հեռատես Մահմեդականները շատ լաւ հասկանում են թէ Հայերի անհետացումից անմիջապէս յետոյ կարգը պիտի գայ իրենց։ Նոքա, իրաւ է, պիտի չ'խողխողուեն արտաքին աւազակախումբերից, սակայն կուլ պիտի գնան Քիւրդերից։ Արդէն մի քանի մահմեդական գիւղեր, նորա ճանապարհորդութեան ժամանակ, զոհ են եղել Քիւրդերի ասպատակութեանը։ Հեղինակը չէ մեղադրում այս իրենց ընդածին արհեստի համար այլ դատապարտում է նորանց որոնք անհեռատեսութեամբ ազատ ասպարէզ են թող տալիս այս տեսակ արարքներին։

Անցնելով Հայկական խնդրի ընդհանուր կացութեանը, Պարոն Լինչ հարց է դնում թէ մի՞թէ անհնար է Հայաստանի համար գտնել գործնական յատուկ մի լուծումն, անշուշտ առանց մաս դպցնելու Օսմանեան կայսրութեան ամբողջական բարենորոգմանը։ Այս հարցին նա տալիս է հաստատական պատասխան, պայմանաւ որ խնդրի լուծումին ձեռնարկողները նախ եւ առաջ պէտք է հետամուտ լինեն գիտնալու նորա աշխարհագրական հանգամանքը որպէս զի կարողանան գընահատել այդ հանգամանքների էական արժէքը քաղաքական տեսակէտից։ Հեղինակը երեւում է մեծ աշխատութիւն է թափած երկար քննաբանութեամբ լուսաբանել այս կէտը նրա վրայ հրաւիրելով Եւրոպայի եւ, մանաւորապէս, Մեծն Բրիտանիոյ աշխարհավար-

ների ուշադրութիւնը ։ Հաւաքական դիտողագիրներ եւ բարենորոգման ծրագիրներ գործնական շատ աննըշան արժէք կարող են ունենալ մի այնպիսի շրջանակի համար որի կառավարչական բաժանումները տնտեսապէս եւ քաղաքականապէս չեն համապատասխանում իրար ։ Ուստի անկարելի է հիմնաւոր եւ տեւական լուծումն տալ Թուրքիայի Հայկական խնդրին առանց նոր բաժանումների եւ նոր սահմանների տակ դնելու արդի կառավարչական շրջանները ։

Նոր բաժանման սկզբունքը պէտք է լինի միախմբել այն գաւառները որոնք բնականից պատկանում են իրարու, եւ դարձնել նահանգները ըստ կարելոյն համասեռ։ Մեր հեղինակը կարծում է թէ այս սկզբունքի գործադրութեան շնորհիւ, մի ժամանակ, հընարաւոր պիտի լինի լուծումն տալ Քրդական խնդրին։ Այս սկզբունքի հիման վրայ հարկ է կազմել երեք մեծ նահանգներ։ Մէկը ձեւանալու է Հայկական սարահարթի եւ Սեւ ծովի միջեւ գտնուած լեռնոտ գաւառներից , եւ կարող է անուանուել Սեւ Ծովի կառավարչութիւն։ Տրապիզոնի կուսակալութեան արդի շրջանակը մինչեւ մէկ աստիճան յարմար է գալիս այս նպատակին , բայց նորա մէջ ներփակելու է Էրզրումի կուսակալութեան մի քանի մասերը ինչպէս է Թորթում եւ Օլթիի շրջակայ գաւառները ։ Երկրորդ կառավարչութիւնը ձեւանալու է բուն Հայկական սարահարթից , եւ նորա սահմանագծութիւնը հարկաւոր է կատարել ըստ կարելոյն համաձայն այն ազգային սահմաններին որոնք ճշգիւ որոշուած են Լինչի ներկայ աշխատասիրութեան մէջ ։ Երրորդը լինելու է Քիւրդիստանի կառավարչութիւնը ։ Սա պիտի բովանդակէ բաւական ընդարձակ մի տարածութիւն , սկսեալ Տիգրանակերտի հարաւ-արեւելեան կողմի Կիրկուկ եւ Սուլէյմանիէ գաւառներից եւ

Խարբերդի հիւսիս–արեւմտեան սահմանագծից։ Մուսուլ, Ճէզիրէ, եւ Տիգրանակերտ լինելու են վարչութեան խարիսխները, ըստ որում ստորին երկիրների այս քաղաքները, կառուցուած լինելով ճիշտ յարմար դիրքերի վրայ, կարող են ծառայել իբր կենտրոններ, այդ տեղերից հսկելու համար վրանաբնակ Քիւրդ ցեղերին երբ նոքա ձմրան սկզբին սովորաբար չւում են իրենց լեռներից դէպի Տիգրիսի ձախակողմեան կամ արեւելեան ափերին մօտակայ երկրագործական գաւառները։ Զինուորական ամուր կայաններ կարելի է հաստատել լեռնային շրջանակի մէջ եղած Քիւրդիստանի գլխաւոր քաղաքներում։

Այս երեք կառավարչութիւններից, Հայկական սարահարթի բաժանումը, Լինչի կարծիքով, ղեկավարելու է մի նպատակայարմար կենտրոնից, որը պէտք է լինի ո՛չ Էրզրում եւ ո՛չ Վան։ Հեղինակը նկատում է Խլաթ Խնուս կամ Մանազկերտ իբր բնականօրէն յարմարեցուած խնդրի պահանջների լրացման համար։ Այս երեք փոքր քաղաքներից եւ ոչ մէկը այնքան հեռու է Քիւրդական սարերից, որ կողմից մի միայն նոր կառավարչութիւնը կարող է ենթարկուել Քիւրդ սանձարձակ տարրի ասպատակութիւններին։ Այս երեքի տեղն էլ շատ նպաստաւոր են փոխադարձ հաղորդակցութեան համար Հայկական գլխաւոր գաւառների հետ։ Ցեղերի անցքը Քիւրդիստանից դէպի նոր կառավարչութիւնների շրջանակի ներսը պէտք է խստիւ արգիլել։ Եւ այս ընթացքը կասեցնելու համար սարսափելի մի ոյժի հարկ չկայ, այլ կը բաւէ կազմակերպել մի բանիբուն ոստիկանութիւն, որը միաժամանակ կարող պիտի լինի նաեւ ղեկավարել ներկայումս Քիւրդ ցեղերով բնակուած Հայկական Սարահարթի գաւառները։

Հեղինակը տարակոյս չունի թէ այս տեսակ բա-

րենորոգումներ ընաւ վեր չեն Կ. Պոլսի կենտրոնական կառավարութեան կարողութիւնից ։ Նա հաւատում է թէ այս կարգի փոփոխութիւնները երբէք չեն վնասի Օսմանեան կայսրութեան ընդհանուր զինուորական վարչութեանը այլ նոյն իսկ կարելի է օգտաւէտ կը լինին նորա զուտ զինուորական շահերին ։ Թիւրքերը, ասում է Լինչ, ամենեւին երկիւղ կրելու չեն զինուորական տեսակէտից, այլ պէտք է լաւ ի միտ առնեն որ եթէ իրենց կայսրութիւնը կործանուելու լինի, պիտի կործանուի աւելի քաղաքային պաշտօնէութեան մեծ թերութիւններից քան թէ զինուորական ։ Եւրոպան, իւր արդի բոլոր անխղճահարութեամբ մէկտեղ, պիտի չ՛ կարողանայ ներողամիտ աչքով նայել այս աստիճան յառաջ գնացած քաղաքային յոռի կառավարչութեան վրայ ։ Օսմանեան կայսրութեան Եւրոպական բարեկամները կամ դաշնակիցները մէկը միւսի ետեւից պիտի ստիպուեն մէկդի քաշուել ։ Կանուխ կամ ուշ երիտասարդ Գերման կայսրութիւնը պարագաների բերմունքից պիտի հարկադրուի բռնելու այն միեւնոյն դիրքը ինչպէս իւր անդրանիկ քոյրը՝ Մեծն Բրիտանիա ։ Միեւնոյն ժամանակ Ռուսական հողին յարակից նահանգներում սպառնալի արագութեամբ աճում է մի այնպիսի կացութիւն որ արդէն իսկ հրաւիրում է եւ կարող է շուտով պահանջել Ռուսիոյ միջամտութիւնը ։ Ռուս քաղաքագէտները միայն սպասում են յարմար րոպէին օգուտ քաղելու աշխարհի վրայ պատահելիք շարժումներից, Ռուս գունտեր արդէն կեցած են մի աննշան հեռաւորութեան վրայ Էրզրումից ։ Իսկ այս բերդը ուղղակի իշխում է դէպի Փոքր Ասիոյ ներսը եւ դէպի մայրաքաղաքը տանող ճանապարհների վրայ ։ Ո՞վ կարող է հերքել թէ Հայկական սարահարթի ներկայ կացութիւնը այնքան ծանր չէ որքան ծանր էր Եւրոպական նահանգներում երբ

Ռուս զօրքերը անցան Պրութ գետից 1877 ին։

Հեղինակը լիովին համոզուած է թէ Հայկական հարցի կարգադրումը մեծապէս նպաստաւոր է Օսմանեան կայսրութեան գոյութեան համար, եւ թէ վերոնշանակեալ տեսակի փոփոխութեանց գործադրութիւնը կախուած է Կ. Պոլսի կառավարութեան ինքնաբուխ կամքից։ Թիւրքիոյ առներեւոյթ բարեկամները բայց իրական թշնամիները, ասում է Լինչ, կարող են ջանալ կասկածներ զարթեցնելու այս մասին, եւ անտարակոյս պիտի պնդեն թէ բարենորոգման այդ բարակ քողի տակ ծածկուած է Հայաստանի անկախութեան ուրուականը։ Բայց այս տեսակ մի ելք, եթէ նոյն իսկ հնարաւոր լինէր հեռաւոր ապագայում, պէտք չէ մտատանջութեան մէջ ձգէ Օսմանեան ղեկավարներին մինչ այն աստիճան որ նոքա վտանգի տակ դնեն իրենց ապագայ սերնդեան շահերը։ Սուլթանների իշխանութեան հետ կրօնքով եւ հասարակական շահերով կապուած միլիոնաւոր մահմեդականները եթէ երբէք անզօր գտնուեն զսպելու Հայերի փառասիրութիւնը եւ պարտաւորուեն տեղի տալ Հայկական մի Ինքնավարութեան, մեր հեղինակը հաւատում է թէ այդ ազատագրեալ ազգի անկախ դրութիւնը սոյն պարագային սքօղեալ մի օրհնենք պիտի լինի Թիւրքիոյ գոյութեան անվթար պահպանման համար, որովհետեւ Հայերի համակրանքի ծանրութեան նժարը անտարակոյս Օսմանեան կայսրութեան կողմը պիտի հակուի պահանջեալ հարկին։ Լինչի կարծիքով, սակայն, Հայկական Թագաւորութեան վերականգման այս խօսքերը պարզապէս քամի են եւ ծայրայեղապէս աւելորդ լուրջ ուշադրութեան։ Այսօրուայ Հայերը չունեն ղեկավարող պետեր եւ ոչ էլ այնպիսի մի դասակարգ որից հնարաւոր լինէր դուրս բերուելու նպատակի համար պահանջուած ա-

առաջնորդողները։ Իններորդ դարում երբ նոքա ազատուեցան մահուան դուռն հասած խալիֆայութեան ձեռքից, ունէին իրենց զանազան աստիճանի իշխաններն ու ազնուականները։ Այդ գերդաստանները անյայտացել են առանց ոեւէ հետք թողնելու։

Ենթադրելով թէ անկախութեան վաղեմի գաղափարը վերստին իրականանայ, այդ պարագային մեր հեղինակը հաւանական է համարում թէ քսաներորդ դարի Հայերը իրենց առաջ պիտի գտնեն քաղաքական մի այնպիսի սահմանադրութիւն որը ազդեցիկ մի կայսրութեան ամբողջ ընդարձակ տարածութեան վրայ նոցա կատարելի գործունէութիւնները պիտի սահմանափակէ պարզապէս մի չնչին պետութեան նեղ շրջանակի գործունէութեան մէջ։ Այս տեսակէտով, Լինչ Հայ ցեղի բուն շահերի համար օգտակար է տեսնում տեղական ազգային բարենորոգումներ քաղաքականօրէն անբաժան կապուած Օսմանեան Կայսրութեան շահերի հետ որպէս զի իրենց աստիճանաբար աճումով միանգամայն հնարաւորութիւն ունենան ազդեցիկ դեր կատարել ամբողջ կայսրութեան գործերում։

Վերադառնալով բացարձակ անկախութեան հարցին հեղինակը դիտել է տալիս թէ Բուլղարիոյ դէպքը չէ կարելի իբր օրինակ վեր առնել Հայաստանի համար, Այնտեղ Քրիստոնեաները կազմում էին ազգաբնակութեան ստուար մեծամասնութիւն, եւ նոքա չունէին կաշկանդիչ կապեր Օսմանեան կայսրութեան միացեալ մասերի հետ. ինչպէս որ Հայաստանը ունի։ Բացի այս, Հայերը չունեն, եւ իրենց գտնուած պայմանների մէջ հաւանական էլ չէ որ կարողանան ունենալ բաւականաչափ ոյժ այդպիսի մի նպատակ իրականութեան հասցնելու համար։ Հակառակ այս ամենին, հարցնում է Պարոն Լինչ, եթէ անկախութեան ուրուակա-

նից այնքա՛ն սարսափողները դեռ ճգնեն յառաջ բերել ուրիշ լուրջ պատճառաբանութիւններ, ի՞նչ պիտի ուրեմն իրենք առաջարկէին Հայոց խնդրի կարգադրման համար։ Եթէ նոքա զսպեն Քիւրդերի սանձարձակ սապատակութիւնները, սրանով նոքա կարծում են օգնած պիտի լինեն Հայերին, մինչդեռ, եթէ շարունակեն այս ընթացքի մէջ թողնելու գործը, նոքա պարզապէս հետզհետէ պիտի տեսնեն այդ նահանգները աւերակ դարձած, ինչ որ Ռուսիա, իւր սեփական սահմանագծի շահերի եւ ապահովութեան համար, պիտի ստիպուի եւ պիտի Եւրոպայից հրաւիրուի գրաւելու։

Թրքական Հայաստանի կարգադրութեան հարցը չէ վերաբերում միմիայն Վոսփորի Տիրապետողներին։ Եւրոպան միշտ ցոյց է տուել իւր սերտ հետաքրքրութիւնը միջամտելով Թուրքիոյ գործերին, եւ յատկապէս երաշխաւորութիւն է ստանձնել ապահովելու բարւոք կառավարութիւն Հայերի համար։ Հեղինակը ասում է թէ, եթէ կրկին միջամտութեան պահանջ յառաջ գալու լինի, Եւրոպան լաւ կ'անէր եթէ իւր միջամտութիւնը հիմնէր ամենալայն սկզբունքների վրայ, ոչ ի նպաստ Հայերի միայն, այլ նաեւ ի նպաստ Մահմեդականների։ Հայկական սարահարթի վրայ կազմակերպուած մէկ հատիկ նոր նահանգի կառավարումը չէ նմանում Ասիական Թուրքիոյ վարչութեան վրայ հսկելու դժուարակնճիռ ձեռնարկին։ Նա դիտում է թէ իւր առաջարկած պայմանները այնքան բանաւոր են որ կարելի է իբր պահանջ դնել Բ. Դրան առաջ, դոքա ո եւ է տեսակէտով չեն բռնաբարում Սուլթանի իրաւասութիւնը, եւ դոցա գործադրումը բոլորովին դիւրին է։ Նա կարծում է թէ, եթէ Եւրոպա վերստին ձեռք առնելու լինի խնդիրը, լաւագոյն է որ ընդունէ միայն մէկ սահման նոր ընդհանուր-կառավարչի անձնաւո-

րութեան վերաբերմամբ։ Նա, անշուշտ Հայազգի լինելու չէ, բայց կարող է լինել հենց մի Մահմեդական եւ Սուլթանի մի հպատակ։ Կամ թէ այդ պաշտօնի համար կարելի է նշանակել մի Եւրոպացի։ Տնտեսական եւ վարչական կողմից, սակայն, այդ նահանգը բոլորովին անջատուելու է Կ. Պոլսոյ կենտրոնական կառավարութիւնից, եւ մի փոխարութիւն հարկ պիտի լինի նահանգային գանձին կազմակերպելու համար պահանջուած նպատակին համապատասխանող մի ոստիկանութիւն։ Նոր կառավարիչը պիտի իշխէ մի այլատարր Մահմեդական մեծամասնութեան եւ, թեւով նոցանից խիստ սուր, մի ամփոփ Հայ փոքրամասնութեան վրայ։ Բայց նորա պաշտօնը արդիւնաւոր դարձնելու համար անհրաժեշտ է որ իշխանութեան շրջանակը կազմուած լինի տնտեսապէս եւ բնականօրէն իրարու նրման գաւառներից, եւ նորա իրաւասութեան սահմանի մէջ բնաւ առնելու չէ՛ լեռնային երկրի դժուարին մասերից, այլ մի միայն հեղինակի սահմանագծած տարածութիւնը որ ներփակում են աշխարհիս ամենարնաւոր երկրագործական գաւառներից մի քանիսը։

Կ. Պոլսում եւ Ասիական Թուրքիոյ միւս քաղաքներում ապրող Հայերի պէտքերին բաւականութիւն տալու համար, մեր հեղինակը գոհացուցիչ է գտնում 1863ի սահմանադրութիւնը որ Սուլթան Աբդ-ուլ-Ազիզի կողմից շնորհուած է Հայերին եւ որի շատ յօդուածների իրաւունքը հետզհետէ առնուած է Հայ հասարակութիւնից։ Այդ սահմանադրութեան թարգմանութիւնը գտնում է այս հատորի յաւելուածի մէջ։ Նորա գլխաւոր նպատակն եւ ուղղութիւնն է արտօնութիւն տալ Հայերին կանոնաւորապէս տնօրինելու եւ վարելու իրենց հասարակութիւնների ներքին գործերը։ Այդ հասարակութիւնները միշտ առանձնաշնորհումն են

ունեցել կառավարելու իրենց սեփական հիմնարկութիւնները, ինչպէս օրինակ վանքերը, եկեղեցիները, հիւանդանոցները եւ դպրոցները։ 1863ի Սահմանադրութիւնը ունի իւր մէջ կատարելագործեալ եւ ռամկավարական բոլոր էական պայմանները վերոյիշեալ տեսակի հաստատութիւնների կազմակերպութեան եւ հսկողութեան համար։ Ժխտում է ոեւ իցէ միջամտութիւն կառավարութեան կողմից այս զուտ ներքին գործերում բաց ի ծայրայեղ պարագային։ Հեղինակը չէ կարողանում յղանալ Հայ ժողովուրդի համար մի աւելի լաւ բան քան սահմանադրական այդ կանոնագիրն որը ասպարէզ է տալիս Հային մշակելու իւր խելքը իւր ընկերային հարցերի մէջ, վարժեցնելու իւր ունակութիւնները ռամկավարական եւ ընտրողական սկզբունքների համար, եւ պատրաստելու վերացականութիւնից գործնական նպատակի ծառայող անհատներ։ Լինչ, սակայն, նախազգուշացնում է թէ, եթէ երբէք այդ սահմանադրական իրաւունքը վերահաստատուի, Հայերը պէտք է խոյս տան մի թակարդից, այսինքն, չփորձեն դարձեալ քաղաքական զէնքի փոխելու այդ առանձնաշնորհեալ իրաւունքը

## ԷՐԶՐՈՒՄ

Այս բերդի քաղաքական եւ տնտեսական դիրքի մասին հեղինակը նուիրում է մանրամասնօրէն լիակատար հետազօտութիւն։ Ներկայ պայմանների տակ Էրզրումը ամենակարեւոր ռազմագիտական կէտն է ամբողջ արեւելեան Թուրքիոյ հողի վրայ։ Հիւսիսից, հարաւից, եւ արեւելքից նա կարող է անառիկ համար-

ուել։ Եթէ Թուրքիա ծովի վրայ իր հակառակորդներին դիմադրելու. չափ մի նաւային տէրութիւն եղած լինէր, շատ երկար ժամանակ պիտի անց կենար մինչեւ որ Ասիական կայսրութեան այս ամբարտակը խորտակուէր Ռուսական յարձակումից։ Սրանումն է կայանում մի առաջնակարգ ծովային պետութեան Թուրքիային աջակից լինելու իսկական արժէքը։ Այլապէս, նորա կացութիւնը շատ անյոյս պէտք է նկատել եթէ այս տեսակ մի աջակցութիւն յառաջ գալու չլինի։ Իւր Սեւ ծովի նաւատորմիղի անվիճելի դիրքով, Ցարը անշուշտ պարզապէս կարող է ծիծաղել Էրզրումի անդիմադրելի ամրութիւնների վրայ։ Միայն հարկ պիտի լինի Ռուսական գունտերին յառաջխաղացումը դէպի Բասէն, Թուրք բերդապահ զօրքերի ուշադրութիւնն իրենց վրայ կենտրոնացնելու դիտումով բուն հարուածը սակայն պիտի գայ Բերդի Թոյլ կողմից, այսինքն, արեւմուտքից եւ այս նպատակաւ կը բաւէ որ Ռուսական զօրքերի մի ստուար բանակ ցամաք դուրս գայ Տրապիզոնի նաւահանգստից։ Զպիտի լինի մի ո եւ է խոչ որ արգիլէ նոցա ընթացքը ուղիղ ճամբով յառաջանալու Էրզրումի վրայ։ Կարճ խօսքով, ոչ թէ Կարսը եւ Երեւանը, այլ Սեւաստապօլըն ու Օդեսան են փոթորիկի իսկական կենտրոնները ուրտեղից պիտի դուրս պրծնեն Ռուսական գունտեր որոնք պիտի աւլեն Օսմանեան Կայսրութիւնը Ասիայի երեսից։ Խնդրի այս կէտը չօչափելիս, Լինչ զանց չէ առնում յիշելու այն գիծն որով Էրզրումի անկումից յետոյ, Ռուս բանակը հաւանօրէն պիտի շարունակէ իւր յառաջխաղացումը դէպի արեւմուտք։ Մինչեւ Երզնկա Եփրատի հոսանքը պիտի լինի ձլխաւորապէս, ապա, հիւսիսակողմեան ափերի բարձունքներից կտրելով այդ գետը, Ղարահիսարի ճանապարհից Ցարի զօրքերը իրենք

իրենց պիտի գտնեն Փոքր Ասիայում։ Այս ուղղութեամբ յառաջանալիս նոքա պիտի չհանդիպեն ո և է արգելքի։ Միւս կողմանէ՝ երկրորդ յառաջացումը կարող է տեղի ունենալ Մուշ քաղաքի մօտից լեռների միջով և Արածանի կամ Մուրատ գետի հոսանքի վերևով։ Երկրաչափի կարկինի տեսքից բոլորովին զուրկ այս դժուարանցանելի ճանապարհները հաւանօրէն կարող պիտի լինեն մի առ ժամանակ ուշացնել բայց ոչ արգիլել պատերազմի մըրկալից հոսանքը դէպի ցած երկիրները ուր, Տիգրանակերտի կողմից. Հիւսիսի այդ փոթորիկը կարող է սպառնալ փոքր Ասիոյ հարաւ—արևելեան գաւառներին։

Յիշելու արժանի է թէ այս վերջին դարի ընթացքում, Էրզրումի բերդը գրեթէ երեք անգամ ընկաւ Ռուսական զօրքերի ձեռքը։ 1829ին առնուեցաւ Պասկեւիչի ձեռքով, որի գունտերը նորա գնացին դէպի հիւսիս մինչև Գիւմիւշխանէ և միայն տասն և ութ մղոն էր մնացել Տրապիզոն հասնելու համար։ Խաղաղութեան պայմանների համաձայն բերդը վերադարձուեցաւ Թուրքիային։ Էրզրում նմանօրինակ ճակատագրի ենթարկուեցաւ 1855 ին Կարսի անկումի ժամանակ։ Բայց այս անգամ փրկուեցաւ Ռուսաց ուրիշ կողմերում կրած ձախորդութիւնների և Խրիմի պատերազմի չուտափոյթ վերջաւորութեան շնորհիւ (Դաշնագրութիւն Փարիզի, Մարտ 1856)։ 1877 ին Ռուսները կտրեցին անցան Դէվէ Բոյինի պատնէշը, որ այդ օրերում սպառազինուած չէր պաշտպանութեան համապատշաճ միջոցներով, այսուամենայնիւ նոքա նախապէս ետ մղուեցան ծանր կորուստով երբ հողապատնէշի արևելեան ծայրից ուզեցին յարձակմամբ տիրել ամրոցներին։ Անձնատուութիւնը տեղի չունեցաւ մինչև 1878ի Յունուար ամիսը երբ Ցարի բանակը մէկ անգամ ևս

մօտ Էրզրումի պարիսպներից ներս ։ Բայց Սան Ստեֆա-
նոյի (Մարտ 1878) եւ Բերլինի (Յուլիս 1878) դաշնա-
գրութիւնների հիման վրայ Էրզրումը երկրորդ եւ գու-
ցէ վերջին անգամը լինելով դարձաւ կրկին Օսմանեան
սեփականութիւն ։ Այդ պատերազմից ի վեր Սուլթանի
կառավարութիւնը գործնական փորձառութեամբ վեր-
ջապէս հասկացած է երեւում Էրզրումի կարեւորութեան
կենսականութիւնը իւր երկրի պաշտպանութեան հա-
մար , եւ ,եթէ ապագային այդ մարտկոցները սպառազին-
ուած լինեն ամենանոր ձեւի թնդանօթներով եւ պաշտ-
պանուած լինեն իրենց կոչումին հմուտ զինուորական
ոյժերով , Էրզրումը դեռ պիտի կարողանայ պատերազ-
մական փառքի յաղթանակներով պսակել իւր ճակատը
եւ մի առ ժամանակ եւս պահպանել իւր գոյութիւնը
ո՛չ թէ Եւրոպական դիւանագիտութեան գրիչի. շնոր-
հիւ այլ բուն իսկ իւր սեփհական սուրի զօրութեամբ։

Այս բերդը ոչ միայն Թրքական Հայաստանի
ռազմագիտական բանալին է , այլ նաեւ պաշտպանում
է նորա առեւտրական ամենակարեւոր ճամբաները ։
Եւրոպայի եւ հիւսիսային Պարսկաստանի միջեւ կա-
տարուած վաճառականութեան գլխաւոր ուղին անց է
կենում Էրզրումից ։ Առաջին անգամ Ջենովացիները
հիմնեցին այս երթեւեկութիւնը եւ բեռնաբարձ ջորի-
ների եւ ուղտերի շարքեր անդադար անցնում էին այդ քա-
ղաքի միջից ։ Ջենովացիների անհետացումից շատ երկար
ժամանակ վերջն իսկ Էրզրումի ծաղկեալ վիճակի մասին
տեղեկութիւն ենք ստանում ժեզուիտների գրուածնե-
րից. այսպէս Հայր Թոմաս Շարլ Ֆլեօրեան տասն եւ
եօթներորդ դարի երկրորդ կէսին իւր Ներկայ վիճակ
Հայաստանի (Փարիզ 1694) գործի մէջ նկարագրում է Էր-
զրումը իբր բազմամարդ եւ մեծահարուստ քաղաք, եւ
իբր առեւտրական կենտրոն Հալէպի , Զմիւռնիոյ , Կ.

Պոլսոյ եւ Պարսկաստանի հետ ։ 1690 ին այդտեղ բնակում էր Անգլիական առեւտրական մի գործակալ եւ Հնդկաստանի հետ եղած վաճառականութեան մէկ մասը կատարւում էր Էրզրումի ճանապարհով ։ 1836 ին Սեւ Ծովի վրայ շոգենաւային հաղորդակցութիւն հաստատուելուց յետոյ, Միջերկրականի նաւահանգիստների կամ Կ. Պոլսոյ եւ Էրզրումի միջեւ եղած ցամաքային ճանապարհները հետզհետէ դադարեցան գործածութիւնից ։ Միւս կողմանէ, վաճառականութիւնը մեծ մղում ստացաւ Պարսկաստանի հետ եւ այն թըւականից մինչեւ ներկայ օրս ամեն տարի աւելի եւ աւելի է զարգանում ։ Փոխանակ Փոքր Ասիոյ մի ծայրից միւսն անցնող դանդաղ կարաւանների շարքերին, այժմ Եւրոպական շոգենաւերը դուրս են հանում իրենց ապրանքը Տրապիզոնի նաւահանգստում, եւ այստեղից ուղտերով փոխադրում են Թաւրիզ Էրզրումի եւ Հայկական դաշտերի միջից ։ 1842 ին Տրապիզոնում արտահանուած ապրանքների գումարն էր Պարսկաստանի համար 32,000 ծրար ։ 1896 ին այս ապրանքների կշիռը հասել էր 5000 թոնի ։ Այժմ Եւրոպայից Պարսկաստան փոխադրուած տարեկան ապրանքի արժէքը հասնում է 6,000,000 ռուբլիի ։ Այս վաճառականութեան երկու երրորդ մասը պատկանում է Մեծն Բրիտանիային ։ Հեռինակը ենթադրում է թէ Տրապիզոնից դէպի Էրզրում, Բայազէդ եւ Թաւրիզ, եւ այնտեղից դէպի Թեհերան եւ Հնդկական սահմանագլուխը մի երկաթուղիի գծի շինութիւնը կարող է մեծ կարեւորութիւն ունենալ Եւրոպայի համար ընդհանրապէս, եւ Անգլիոյ համար մասնաւորապէս ։ Այսպիսի մի գծի գոյութիւնը մեծագոյն զարկ կարող է տալ նաեւ Հայկական նահանգի տնտեսական զարգացմանը ։

Էրզրումի ազգաբնակութիւնը, մանաւանդ Հայ

տարրը, սաստիկ պակասել է տասն եւ իններորդ դարի ընթացքում։ 1827 ին այդ տեղ ապրում էին 130,000 հոգի, թէեւ մի ուրիշ աղբիւր մասնանիշ է անում իբր 80,000 կամ 100,000 հոգի։ Այս վերջին գումարից մօտ 24,000 ը զուտ Հայ լուսաւորչական էին։ 1829 ի գըրաւումից յետոյ երբ հետեւեալ տարին Ռուսական զօրքերը ետ քաշուեցան, նոցա հետեւեցին 60,000 ից աւելի Հայեր։ Մօտակայ քաղաքներն ու դաշտերը գրեթէ դատարկուեցան Հայ ազգաբնակութիւնից, նահանգը ամբողջովին քայքայման վիճակի հասաւ եւ բուն իսկ Էրզրումի բոլոր բնակիչների թիւը 15,000 ից աւելի չէր 1835 ին եւ միայն 120 Հայ ընտանիքներ էին մնացել քաղաքի մէջ։ Լինչի առաջին այցելութեան ժամանակ բնակիչների թիւը 40,000 ի էր բարձրացել, ի բաց առեալ բերդապահ զօրքերը։ Թուրք պաշտօնական հաշուով այդ գումարից 26,500ը Մահմեդականներ են, 10,500 հոգին Հայեր, եւ մօտ 2,900ը Պարսիկներ, Յոյներ եւ օտարականներ։ 500ի չափ Հայեր ոչնչացան 1898 ի կոտորածի ժամանակ, Հեղինակը վկայում է թէ քաղաքը շատ արագ կերպիւ վերստացաւ իւր նախկին վիճակը, եւ անտարակուսելի է նկատում թէ Հայ բնակիչների գումարը կարող է քիչ ժամանակում գերազանցել իւր նախկին թուից բաւական է միայն որ այդ ժողովուրդը փոքր ինչ հանդուրժելի պայմանների տակ դրուի կառավարութեան կողմից։ Տարեկան մօտ 40,000 ուղտեր են անցնում Էրզրումից, եւ նոցա տէրերը մօտ 900 000 ռուբլիի առուծախ են անում այդ տեղ։ Ուստի, այսպիսի մի առեւտրական կենտրոն բարեկեցիկ Հայերի ձեռքով մեծ օգտակարութիւն կարող է ընծայել բուն քաղաքին եւ նոյն իսկ շրջակայ գաւառներին։

Էրզրումի կենդանի նկարագրութիւնից անցնե-

լով պատմականին, մեր հեղինակը դիտում է թէ այս քաղաքը թէեւ չէ վերաբերում խոր հնութեան, այսուամենայնիւ շատ դարեր է անց կացրել իւր ձիւնափայլ գլուխից: Հայ կաթողիկոսներից մէկի Թախանձանօք Թէոդոս Բ. կայսեր օրով (408–450) այս բերդը կառուցուեցաւ Կարին նահանգում մի շատ հին աւանի կողքին եւ կոչուեցաւ Թէոդոսուպոլիս եւ Հռոմէական կայսրութեան համար ծառայում էր իբր առաջին պատնէշ Պարսկական յարձակումներին դէմ դնելու: Հռոմի հետ ունեցած մի պատերազմի մէջ 502 ին Պարսից Թագաւորը առեց այս բերդին, բայց քիչ յետոյ Անաստասիոս կայսեր ձեռքով անցաւ Հռոմին: Յուստինիանոս կայսրը ընդարձակեց եւ աւելացրեց ամրութիւնները, բայց վեցերորդ դարում վերստին ընկաւ Պարսից ձեռքը: Կրկին վերադարձուած լինելու է, որովհետեւ յիշատակւում է թէ 629 ին Հերակլ կայսրը Հայ եպիսկոպոսների ժողով գումարել տուաւ այդտեղ: 647 ին Թէոդոսուպոլիսի ճակատագիրը կապուեցաւ Արաբական աշխարհակալութեան հետ, եւ աւելի քան հարիւր տարի յետոյ Բիւզանդացիները կարողացան կրկին անգամ մտնել նորա պարիսպներից ներս, Կոնստանդին Ե. ի օրով: Այս կայսրը քանդուքար արեց պարիսպները, սորկութեան սատիճանի հասցրեց բնակիչների կացութիւնը, եւ դէպի Կ. Պոլիս եւ Թրակիա տեղափոխեց Հայերի մի ահագին բազմութիւն: Սակայն, այս դէպքից շատ քիչ ժամանակ յետոյ երեւում է քաղաքը վերաշինուեցաւ Մահմեդականներից, եւ կարեւոր դեր կատարեց Լեւոն կայսեր (886–911) եւ նորա որդի՝ Կոնստանդին Պերփիռուժէնի (911–959) պատերազմների մէջ որոնք մղուած էին Բաէն դաւառի Արաբների դէմ։

Մահմեդական աշխարհակալութեան ալիքները այս

միջոցին ամեն կողմից արշաւում էին Արեւելեան Կայսրութեան վրայ: Տասն եւ երեքերորդ դարի վերջում Թէոդոսուպոլիսը ընդ միշտ դադարեց Յունական տիրապետութիւնից: Նախ Թողրուլ Բէն Գըլըճարսլան անուն մի մահմեդական իշխանի սկսաւ պատկանել, եւ ապա անցաւ Իկոնիոյ սուլթանի ձեռքը: Սելջուկ սուլթանը ծանօթ էր իբր «Տէր Էրզրումի» ճիշտ ինչպէս որ նորա Օսմանցի յաջորդները կրում էին «Տէր Կարսի» տիտղոսը: Սելջուկների տիրապետութեանը յաջորդեց նոցա նուաճող Թաթարների տիրապետութիւնը Տասն եւ հինգերորդ դարի առաջին կէսում Էրզրումը Թիւրքմէնների ձեռքի տակ էր: Օսմանցիները տիրեցին նրան Մուհամէդ Բ.ի իշխանութեան օրով: Եւ այդ ժամանակից ի վեր մնում է անբաժան Օսմանեան լուծից:

Էրզրում անունը յիշատակւում է Միւսիւլմանական ժամանակներից, բայց նորա ճիշտ ծագումը անյայտ է: Կարող է նշանակել Հռոմէական հող (Արաբերէն՝ Արդ, Թուրքերէն՝ Արզ), կամ գուցէ կարող է բաղադրուած լինել Հռոմ բառից եւ շրջակայքում գտնըւող Արծն կամ Արզն անպարսպապատ քաղաքի անունից: Հեղինակը բոլորովին հաւանական է գտնում թէ այս քաղաքը հնագոյն ժամանակում կոչուած լինելու է Արզն կամ Արծն Հռոմայ, տարբերելու համար մի այլ Արծն քաղաքից որ ընկնում էր Հայաստանի հարաւային կողմը: Մի քանի պատմագիրների վկայութեամբ չորս հատ Արծն կային Հայաստանի այլ եւ այլ կէտերում: Ըստ տեղային աւանդութեան այս չորս Արծններից առաջին Արծն քաղաքի տեղը ընկնում է ներկայ Էրզրումի հիւսիս արեւմտեան դին, Կարբար գիւղի մօտ՝ Եփրատի աջակողմեան ափերի վրայ: Տասն եւ մէկերորդ դարի վերջին այս տեղը աւարի առնուեցաւ Թուրքերի ձեռքով, եւ ըստ Սէն-Մարտէնի, կոտորա-

ծից ողջ Միացողները ապաւինեցին Թէոդոսուպոլիսի պարիսպների ներսը եւ նորա վրայ փոխանցեցին իրենց նախկին բազմամարդ քաղաքի անունը։ Այսպէս թէ այնպէս հին Հայկական Կարին անունը դեռ մինչեւ այսօր չարունակւում է տրուել այս քաղաքին եւ հաւանօրէն այդ անունից է բղխում նաեւ Արաբական Կալիկալա կոչումը։ Արեւելեան կայսրութեան յիշատակարանները դեռ եւս նշմարւում են Էրզրումի մէջ։ Եւ պատմութեան շղթան չէ փշրուել մի այնպիսի ձեւով որ անճանաչելի դարձնէր Հռոմէական բերդի նոյնութիւնը Օսմանցի Թուրքերի Ասիական տիրապետութեան այս բանալիի հետ։ Միայն թէ, դերերը փոխուած են. առաջ Մահմեդական Պարսկաստանն էր որ այդ բանալիով Արեւելքից աշխատում էր բանալ իւր առջեւ Կ. Պոլսի Քրիստոնեայ Կայսրութեան դուռը։ Այսօր Քրիստոնեայ Ռուսաստանն է որ այդ մի եւ նոյն բանալիով միտքը դրել է բանալ իւր առաջ Կ. Պոլսի Միւսիւլման Կայսրութեան Դուռը։

# ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ ՎԱՆԱՅ

Գրքի մօտաւորապէս 130 էջերը նուիրուած են Վանայ երկրին։ Պատկեր, նկարագրութիւն եւ հնագիտութիւն վերազանցում են մինը միւսին։ Եւ Վանը իւր երբեմնի փառաւոր Կայսրութեան արշալոյսից մինչեւ իւր ներկայ հոգեվարքի վերջալոյսը մեր աչքի առջեւ պատկերանում է այս երեսների մէջ։

Տեղական առածը ասում է. Վանը այս աշխարհում եւ դրախտը հանդերձեալ։ Հեղինակը դիտել է տալիս թէ, այս նմանողութիւնը կարող էր առ դարացի դառնալ մարդկային բաղդաւորագոյն պայմանների տակ։ Մինչդեռ այժմ, այդ երկրային դրրախտը մարդ արարածի չարութեան շնորհիւ մի կատարեալ դժոխքի է փոխակերպուած. բնակիչները ապրուստի տարրական հաճոյքից անգամ զուրկ են, եւ կեանքը անհանդուրժելի է։ Երկրի պատուականութեան մասին գաղափար ստանալու համար բաւական է միայն մի պտոյտ անել շրջակայքում, կամ միջնաբերդի ժայռի գլուխից դիտել չորս կողմը։ Հիւսիսում ջրերի մէջից մեր աչքի առաջ սփռւում է Իտալական միտեսարան՝ մի Վեզուվ կամ մի Էտնա, իրենց օձապտոյտ շրջականերով որոց տեսքը, սակայն, մեզ սթափեցնում է թէ Ասիայումն ենք գտնւում։ Ճիշդ մեր հանդէպ, դէպ երկինք ցցուած լեռների երկարաձիգ պատնէշը յիշեցնում է Նորվեգեան ափերի ամենավայրենի տեսարանը։ Ինչպէս բուն քաղաքի մի-

ջից նմանապէս եւ ծովակի ամեն ծայրերից, Վարագայ կարճ սուր կատարը տեսնւում է հիանալի երեւոյթով 4500 ոտք դէպի վեր բարձրացած ջրերի երեսից, եւ երեկոյեան արեգակնամուտը արտացոլում է բիւրաւոր երանգներով։ Ծովակը այնքան մեծ չէ որ կարողանայ աչքից անջատել այս զանազան առարկաները, եւ մէկ ակնարկով կարելի է նշմարել չորս կողմի բոլոր տեսարանները որոց արտասովոր գեղեցկութիւնը լցնում է ուղեւորի հոգին ինքնաբուխ ըղմայլումով։ Այս ծովակի վրայ, հակառակ իւր փոքրութեան, կայ սակայն մի առանձին երեւոյթ որ տալիս է նրան Ովկիանոսի ամեն դիւթական առանձնայատկութիւնները։

Վանայ երկիրն մի բոլորովին նոր եւ տարբեր տպաւորութիւն է անում գիտնական ուղեւորի վրայ։ Հեռաւոր քաղաքակրթութեան յիշատակներ լիառատ են ամենուրեք, եւ այդ անհետացեալ քաղաքակրթութեան ոգին յետադարձ սաւառնում է դէպի մեզ հին հին դարերի միջից։ Այստեղ ստորերկրեայ ամրաշէն ջրմուղներ, այնտեղ հսկայական ահռելի ճարտարապետութեան հետքեր ցոյց են տալիս թէ անծանօթ ժամանակներում այս երկրի բնակիչների ճարտարութիւնը իշխում էր բնութեան վրայ, եւ անզգալօրէն մեր երեւակայութեան առջեւ պատկերանում են դաշտեր՝ կտրուած երկայնաձիգ մեծ ու լայն ճանապարհներով, գետեր՝ կապուած կամուրջներով, եւ ոռոգման ջրեր՝ բերուած հեռու տեղերից։ Մեր հետաքրքրութիւնը եւս աւելի է սաստկանում ի տես սեպագիր արձանագրութիւնների որոնք խորապէս փորագրուած են այլ եւ այլ պարիսպների եւ մարդկային ձեռագործի կարծր քարերի վրայ, բայց այդ հետաքրքրութիւնը բարձրանում է տենդային աստի-

ճանի երբ աչք ենք ածում Վանայ ժայռի վրայ յըստակօրէն տեսնում է թէ այս ժայռի բարձունքից է որ երբեմնի հզօր կայսրութեան իշխանական գաւազանը տարածւում էր մօտաւոր եւ հեռաւոր երկիրների վրայ։ Իր ուղղահայեաց զահավէժ կողերը արձանագրութիւնների մի կատարեալ մատենադարան են ներկայացնում. ամբողջ երեսը լի է սեպագիրներով տեղ տեղ ջնջուած մարդկային ձեռքերից։ Գետնի երեսից վեր ահագին բարձրութեան վրայ նըշմարուող քառակուսի-կտրուած խորշերն ակնյայտնի ցոյց են տալիս թէ դոքա ժամանակաւ եղել են ժայռի մէջ փորուած սենեակների դռներ։

Արդեօք ո՞վ է եղել այն ժողովուրդը որ այդչափ ճարտարօրէն փորագրել է վայելուչ սեպագրերը այս կանոնաւոր շարքերը, եւ ովքե՞ր էին արդեօք այն թագաւորները որ բազմում էին դաշտի մէջտեղ բնութեան հրաշակերտ ձեռքով կառուցուած այս հիանալի հսկայական Գահի բարձունքներում, որի արեւմտակողմեան պատուանդանները իջնում են դէպի ծով եւ ծփծփում նորա ալիքներից։ Հայեր, Պարսիկներ, Արաբներ, Սելճուկներ, Թաթարներ, Թիւրքմէններ, Թուրքեր՝ ամենքը եկան ու անցան կամ մնացին, եւ սակայն նոցանից ոչ մէկը կարող եղաւ մեկնութիւն տալ միջնաբերդը զարդարող այդ արձանագրութիւնների խորհրդաւոր գաղտնիքին։ Նոքա կամ կարծեցին գտած լինել այդ գաղտնիքի լուծումը արեւելեան առասպելական աղբիւրների մէջ, կամ գոհ մնացին լոկ ենթադրելով թէ այդ արձանագրութիւնները ոչ այլ ինչ են եթէ ոչ թալիսմաններ, կնքուած գանձեր դարեր առաջ թաղուած այս ժայռի ծոցում։ Մեր ներկայ դարին էր վերապահուած թափանցելու այդ գաղտնիքի խորը, որը իսկապէս հա-

զարաւոր տարիների մթութեան մէջից լոյս աշխարհ է բերում Լինչի աշխատութիւնն դրած ժամանակ։

Տասն եւ իններորդ դարի բուն սկզբին, մինչ Ասորական քաղաքների գետնի տակից երեւան հանողները կամ դեռ չէին ծնուել կամ տակաւին որոջում էին իրենց մանկական օրօրոցի մէջ, մի երիտասարդ Ֆրանսացի գիտնական Ժան Անտուան Սէն Մարդէն, արդէն յափշտակուած էր կարդալով Մովսէս Խորենացիի նկարագրութիւնը Վանայ արձանագրութիւնների մասին։ Նորա թախանձագին ջանքերի շնորհիւ Ֆրրանսական կառավարութիւնը 1827 ին Հայաստան ղրկեց մի գիտական առաքելութիւն յանձին Գերմանացի Պրոֆ. Ֆրէդրիխ Էդուարդ Շուլցի որ սպանուեցաւ Քիւրդերից, բայց նորա խուզարկութեան արդիւնքը՝ Վանայ քառասուն երկու արձանագրութիւնների օրինակներով ու մեկնութեամբ՝ հրատարակուեցաւ 1828 ին Սէն-Մարտէնի ձեռքով։ Անգլիացի Լայարդ 1850-ին իւր նոր ուսումնասիրութեան մէջ ցոյց տուեց Շուլցի մեկնութեան սխալականութիւնը։ Վանայ արձանագրութիւնը երկար ժամանակ վարանումների եւ մոլորումների մէջ պահեց հնագէտներին։ Անգլիացի արեւելագէտ դոկտոր Հինքսի կողմից մասնաւոր յաջողակ ջանքեր եղան գտնելու այդ սեպագրերի խորհրդաւոր բանալին, սակայն առեղծուածը մնաց անլուծելի դեռ չատ երկար տարիներ, մինչ, միւս կողմանէ, Հայաստանի այլ եւ այլ մասերում ճանապարհորդների ձեռքով հաւաքուած արձանագրութիւնների օրինակները հետզհետէ բազմանում էին։ Օքսֆորդի համալսարանի պրոֆէսոր Սէյսի մի քանի տարի աշխատասիրելուց յետոյ վերջնականապէս գտաւ Վանայ սեպագրերի ընթերցման գաղտնիքը, ուստի նորա շնորհիւ է որ մենք այսօր հնարաւորութիւն ունենք հասկնալու նոցա խօսքը, եւ աւելացնելու մի

նոր լեզու եւ մի նոր ժողովուրդ հին Արեւելեան աշխարհի թանգարանի մէջ: Սէյսի հետեւողութեամբ Գերմանացի հնագէտ եւ ճանապարհորդ պրօֆէսոր Լեման եւ դոկտոր Բելք գտան ու կարդացին նորանոր արձանագրութիւններ: Եւ, այսպէս, մի անհետացեալ անծանօթ քաղաքակրթութիւն գերեզմանի մէջից դուրս բերուեցաւ մեր առաջ:

Մենք այժմ գիտենք ո՞վ է շինել Վան քաղաքը եւ որոց ձեռքով են փորագրուել միջնաբերդի ճակատի անհամար սեպագիրները: Եւ ամեն մի նորագիւտ արձանագրութեան երեւումով աւելի եւս ենք ծանօթանում այն փառաւոր ինքնակալութեան հետ որ առնուազն երկու դար շարունակ մարտնչում էր Ասորեստանի դէմ հին աշխարհի տիրապետութեան ասպարէզի վրայ: Իշխող ժողովուրդի իսկական անուանակոչութիւնն է Խալդիք կամ որդիք Խալդիսի, ճիշդ ինչպէս որ Ասորիք եւս իրենց անունը առնում են իրենց Ասուր աստուծոյ անունից: Պետութեան սահմանադրութիւնը աստուածապետական էր, որ Խալդիս աստուածը գրաւում էր գերագոյն տեղը: Մնացեալ աստուածները համարւում էին իբր նորա պաշտօնեաները եւ ամբողջ երկիրը, թւում է թէ, նորա անունով էր յորջորջւում: Խալդիսն էր որ իւր զայրոյթի շանթերը թափում էր ամեն նոցա դէմ ով համարձակում էր ոչնչացնել արձանագրութիւնները, եւ նորա հետ՝ իբր մի տեսակ երրորդութիւն՝ զուգաւորուած էին օդի աստուածը եւ արեգակն աստուած: Խալդիսի աթոռը Դհուսպաս քաղաքն էր՝ արդի Վանը, եւ թագաւորը կատարում էր իւր բոլոր աշխարհակալութիւնները նորա անունով: Դհուսպասը Բիայնիա աշխարհի մայրաքաղաքն էր, եւ նորա թագաւորը կոչւում էր թագաւոր Բիայնայի:

Գրականութեան ընթացքում որոշակի կարելի է նշմարել Բիաինա բառի աղաւաղումը դէպի արդի Վան բառը: Պտղոմէոսի եւ մինչեւ Կեդրոնոսի գրուածների մէջ այդ անունը յիշատակւում է իբր Բուանա կամ Վուանա: Ժամանակի ընթացքում երկրի անունը սկսած է յատկացուել քաղաքին, մինչ, միւս կողմանէ, քաղաքի անունը փոխանցուել շրջակայ գաւառին, եւ, այսպէս, Հայ մատենագիրներից մականուանուել է Դոսպ կամ Տոսպայ գաւառ: Վանայ ինքնակալների ժամանակակից եւ հակառակորդն եղող Ասորեստանի ղեկավարները իրենց հիւսիսակողմեան թագաւորութեանը տալիս էին Ուրարդու կամ Ուրարտու անունը: Այս այն մի եւ նոյն կոչումն է որ երեւում է Ս. Գրքի մէջ մեզ ընտանի Արարատ ձեւափոխութեամբ:

Խալդիք կամ Խալդիսի որդիները երեւան են գալիս պատմութեան այս նորայայտ գլուխի մէջ առնուազն ութ եւ կէս դար Քրիստոսից առաջ: Նոցա լեզուն ո՛չ Սեմական էր եւ ո՛չ Հնդկա–Եւրոպական, ուստի անհնար է նոցա ազգակից համարել Ասորիների հետ որոնք Սեմական են, կամ Հայերի հետ, որոնք պատկանում են Հնդկա—Եւրոպական Գերդաստանին: Նոքա իշխում էին Հայաստան երկրի վրայ Հայերի հրապարակ դուրս գալուց առաջ, եւ պէտք է ենթադրել թէ, ցեղերի շարժման միջոցին, Հայերը, գաղթելով այդ կողմերը, վերջնականօրէն ցան ու ցիր են արել Խալդիսի որդիներին եւ տապալել նոցա իշխանութիւնը: Խալդիսի կայսրութիւնը մեծ բաղդաւորութիւն է ունեցել իւրեն մայրաքաղաք ընտրելով Վանայ նման մի տեղ: Ասորական պատմութիւնը սկսում է այս քաղաքի հիմնարկութիւնից աւելի առաջ, որովհետեւ Ասորական արձանագրութիւններից յայտնի երեւում է թէ նոցա թագաւորնե-

րը դէպի հիւսիս արշաւած ժամանակ իրենց դէմ գտնում էին Նաիրի կոչուած երկրի դաշնակցական փոքր իշխաններին ։ Մինչեւ Ալաշկերտի դաշտը երեւի վերաբերում էր այդ դաշնակցութեան, ըստ որում Մանազկերտի մօտ գտնուած մի սեպագրից տեսնում է թէ Թակլաթ-Փալասար Ա. 1100 տարի Քրիստոսից առաջ այդ տեղում յաղթեց Նաիրիի թագաւորների միացեալ ուժերին ։ Այս թուականից մօտ երկու եւ կէս դար յետոյ միայն առաջին անգամ յիշւում է Ուրարդուի ինքնակալի անուններ ։ Այս թագաւորը կոչւում էր Արամ եւ նորա մայրաքաղաքը հաւանօրէն գտնւում էր Վանայ ծովի հիւսիսային կողմը, Արզասկու անունով ։ 857ին կամ 856ին Արամ յաղթուեցաւ ու փախաւ իւր մայրաքաղաքից Նորա քաղաքները մինչեւ Եփրատի ակունքները գրաւուեցան Սալմանասարի զօրքերից 845ին կամ 844ին ։ Ուրարդուի մի այլ թագաւորի մասին իմանում ենք, այս անգամ, Վանայ արձանագրութիւններից ։ Այդ ինքնակալն էր Սարդուրիս Ա., որ Քրիստոսից 833 տարի առաջ հիմնեց Վանայ բերդը ։

Հարաւային երկիրներից յարձակումն գործող մի կայսրութեան դէմ դնելու համար այս տեղից աւելի յարմար դիրք անկարելի էր գտնել Հայաստանի մէջ ։ Հայկական պատմութեան յետագայ շրջաններում տէրութիւնների եւ ժողովուրդների շարժումները տեղի են ունեցել արեւելքից դէպի արեւմուտք, կամ փոխադարձ ։ Այս տեսակ հոսանքների դէմ Վան, անշուշտ, չէր կարող մի մեծ արգելք ներկայանալ, եւ եթէ կարողանար իսկ, ազգերի այդ հոսանքները դիւրաւ կարող էին շեղել իրենց ընթացքը մի քիչ աւելի դէպի հիւսիս ։ Այս տեղի բուն ռազմագիտական արժէքը այն պարագային միայն մեծապէս գնահատելի է դառնում երբ թշնամի ուժերի չու կէտը ընկնում է Միջագետքում ։ Սոյն ուղղութեան վրայ Վան պատսպարուած է, ուղղաթէք սարերի ար-

տաքին կամ Իրանեան կամարի գրեթէ ամենաանցանելի բաժինով որը կատարելապէս պաշտպանում է Հայաստանի դիրքը։ Ասորի նախայարձակները պարտաւորուած էին անհագին շրջան կատարել թշնամի երկիրը հասնելու համար, եւ տարակոյս չկայ թէ բոլոր նպաստաւոր պայմանները գտնւում էին նոցա հիւսիսաբնակ հակառակորդների կողմը։ Եւ առհասարակ սոքա կամ յաջողւում էին բնաջինջ անել Ասորեստանի զօրքերին, կամ եթէ յաղթւում էին յետ քաշուելով փակւում էին իրենց մայրաքաղաքի պարիսպների ներսը մինչեւ որ փոթորիկը անցնէր։ Մայրաքաղաքի սոյն անպարտելի դիրքի շնորհիւն էր, երեւի, որ Արգիստիս Ա.ի յաջորդների օրով այս պետութիւնը արագօրէն զօրացաւ եւ շատ հեռուն տարածեց իւր սահմանները, եւ այս՝ մի այնպիսի ժամանակ, երբ Ասորեստանը կառավարւում էր Շամշի-Ռաման եւ Ռաման-Նիրարիի նման պատերազմասէր ինքնակալներից։ Թակլաթ-Փալասար Գ.ին էր վերապահուած հասնել մինչեւ Վանայ պարիսպների առաջ։ Բայց այս հսկայական անեղ թագաւորն անգամ չկարողացաւ տիրել բերդին։ Սեպագրերից յայտնւում է թէ Վան, հակառակ իւր յարատեւ պատերազմներին Ասորեստանի հզօր ինքնակալների հետ, մինչեւ 626 տարի Քրիստոսից առաջ տակաւին մնում էր անսասան եւ անառիկ։

Որչափ որ նորագիւտ տեղեկութիւններից յայտնի է, Վանայ կայսրութեան գլխաւոր կազմակերպութիւնը պատկանում է Արգիստիս Առաջինին որ կոչւում էր Թագաւոր Նայիրիի եւ որ երեւի հենց այդ դաշնակցական պետութեան գլխաւորն էր։ Նորա որդին Իսպուինիս եւ թոռը Մինուաս մէկ անգամից ընդարձակեցին տէրութիւնը, նորանոր շէնքեր աւելացրին Վանայ միջնաբերդի վրայ եւ երկրի անունը գրին Թա-

գաւորութիւն Բիայնայի կամ Վիայնայի։ Այս Մինուասն
է որ առաջին անգամ ձեռնարկեց կառուցանել այն
հիանալի ջրանցքը որ այժմ անուանւում է Շամիրա-
մագետ, եւ որ Խօշաբայ ջրերը բաշխում է Վանայ շրր-
ջականներին։ Սոյն հիման վրայ, Լինչ կարծում է թէ
Այգեստանի կառուցումը վերագրելու է Մինուասին,
թէպէտեւ այն ժամանակ Այգեստանը հաւանօրէն գըտ-
նուելիս պէտք է լինէր աւելի դէպի հարաւ։ Մինուասի
յաջորդների օրով Վանայ տէրութիւնը հասաւ իւր զօ-
րութեան գագաթնակէտին։ Արաքսի հովտի մանր թա-
գաւորութիւնները ամբողջապէս ձուլուեցան Վանայ
կայսրութեան մէջ, ինչպէս նաեւ Մեծ Քաղաքը, որ շատ
ժամանակ յետոյ ծանօթ եղաւ Արմաւիր անունով, եւ
որ բարձրանում էր Արաքսի ափերի վրայ ի պատիւ Վա-
նայ աստուծոյն։ Գրեթէ ամբողջ Հայաստան երկիրը
հպատակում էր Վանայ ծովի ափերում բազմող ինք-
նակալներին, եւ սոցա յաղթական արշաւանքներն
արձանագրող սեպագրեր գտնւում են արեւելեան կող-
մից մինչեւ Ուրմիոյ լճի հարաւային գաւառները եւ ա-
րեւմտեան կողմից, մինչեւ Մալաթիա։ Դեռ մինչեւ այ-
օր չ'են գտնուել արձանագրութիւններ որ ապացուցա-
նէին թէ այս Կայսրութեան սահմանները անցնում էին
Սեւանայ լճից եւ Հասան-Ղալէից աւելի դէպի վեր՝

Հեղինակը դիտել է տալիս թէ կանոնաւոր պե-
ղումներ դեռ իսկապէս չեն կատարուել Վանայ կայս-
րութեան աւերեալ հին քաղաքների եւ բերդերի տե-
ղերում։ Եւ տարակոյս չկայ ապագայ պեղումների շը-
նորհի շատ նոր լոյս պիտի սփռուի այս անհետացեալ
պետութեան, նորա ժողովուրդի, եւ արուեստի աստի-
ճանաւոր զարգացման մասին։ Առ այժմ գրեթէ մէկ հատ
կանոնաւոր պեղումն է եղել, այն եւս 1879ին եւ 1880-
ին Վանայ Անգլիական հիւպատոս Կապտէն Կլէյտոնի

եւ Հորմուզդ Ռասամի ձեռքով Այգեստանի վրայ նայող բլուրներում որ կոչւում է Թոփրաք-ղալէ: Գետնուղի-ներ փորել տրուելով երեւան եկան հին քաղաքի աւե-րակներ. որոց շէնքերը կառուցուած են եղել արեւի տակ չորացրած աղիւսներով: Ձեռնարկի ամենագլխաւոր ար-դիւնքն էր մի մերկ տաճարի երեւումը: Այսուամե-նայնիւ նա պարունակում էր բազմաթիւ պղնձեայ վա-հաններ սեպաձեւ արձանագրութիւններով, քանդակ-ուած եւ դրուագուած նախշուն գծերով եւ անասուն-ների նկարներով: Սոցանից ոմանք այժմ գտնւում են Բրիտանական թանգարանում եւ միւսները Բերլինի թանգարանում: Սոքա ներկայացնում են ուխտի ըն-ծաներ որ թագաւորների կողմից ձօնւում էին Խալդիս աստուծոյն: Այս տաճարի պատերը չինուած են հսկա-յական խոշորութեամբ սրբատաշ քարերից: Մի քանի նը-շաններից ակնյայտնի է թէ յատակը մի տեսակ մոզա-իքով էր զարդարուած, եւ դուռները պղնձից են եղել: Մուտքի, առաջ գտնւում էր փորուած մի ահագին մար-մարիոն, որ հաւանօրէն գործածւում էր զոհաբերութեան համար: Բելք եւ Լեհման նոր պեղումներ կատարեցին Թոփրաք–Գալէում 1898 ին: Նոքա փորեցին տաճարի շէնքը մինչ հիմքը հասնելով եւ գտան ստորերկրեայ մի անցք, որ տանում է դէպի ընդարձակ մի խորշ: Այս տարածութիւնը ծառայելիս է եղել իբր ջրամբար, ուր ջուրը բերւում էր մօտակայ աղբիւրից արհեստական ջրմուղի միջոցաւ: Գտնուեցաւ նոյնպէս գինիի մի մա-ռան հսկայական կարասներով, ոմանք փորագրուած Վա-նայ տառերով եւ մէկը Պարսկական սեպաձեւ արձանա-գրութեամբ: Տաճարից անջատ, փոքր ինչ հեռուն, յայտ-նուեցաւ մի այլ բաժին ուր դրուելիս են եղել Խալդիս աստուծոյն զոհ մատուցուած անասունների եւ գերի բռնուած մարդկային էակների ոսկորները: Այս երկու գիտնականները գտան նաեւ արծաթէ, պղնձէ, եւ երկ-

թէ բազմաթիւ առարկաներ, ի մէջ այլոց զանազան տեսակի զէնքեր եւ զարդարանքներ: Սակայն այս պեղումի գիտական մեծ արժէքը կայանում է նրանում, որ յայտնի եղաւ թէ Թոփրաք–Ղալէն հնադարեան Ռուսաս քաղաքն է եղել: Տաճարի մէջ գտնուած ասպարների վրայ յիշուող ամենահին թագաւորն է Ռուսաս Բ. ի անունը, եւ միանգամայն նոցա պարունակութիւններից իմանում ենք թէ այդ տաճարը կառուցել կամ վերանորոգել է Ռուսաս Գ. ի ձեռքով ի պատիւ Խալդիս աստուծոյն:

Թէպէտեւ Վանայ Կայսրութիւնը մշտական պատերազմների մէջ էր Ասորեստանի հետ, նորա քաղաքակրթութիւնը, սակայն, հաւանօրէն ծագումն է առել Միջագետքի դաշտերից: Ասորական թագուհու Հայ թագաւորի հետ սիրահարման առասպելը ըստ ինքեան ի յայտ է բերում Նախա–Հայկական ժողովուրդների խնամիական կապակցութեան աղօտ գաղափարը: Արայ եւ Շամիրամ ոչ այլ ոք են բայց եթէ Թամուզ եւ Իստար աստուածուհին որի անունը յիշուած է երեւում Վանայ Մինուաս թագաւորի մի սեպաձեւ արձանագրութեան մէջ: Յունական դիցաբանութեան Ադոնիսն եւ Աֆրոդիտէն եւս նոյն առասպելական համանման դէմքերն են ներկայացնում: Ինչ եւ լինի այս առասպելաբանութեան ամենասկզբնական տիպը, այնքանը ճշմարիտ է, թէ պատերազմների համար Հայկական անանցանելի լեռները չեն կարողացել դիմադրել Միջագետքի անյիշատակ ժամանակներից սկսած քաղաքակրթութեան անցնելուն դէպի հիւսիս, տարածելով իւր արուեստն եւ գիրը Հայաստանի դաշտերի վրայ: Վանում գտնուած ամենահին արձանագրութիւնները փորուած են Ասորական նշանագրերով եւ լեզուով: Մինչդեռ Սարդուրիս Ա. ի յաջորդների արձանագրութիւնները, թէպէտ շարագրուած են Վա-

նա լեզուով, ցոյց են տալիս սակայն չնչին շեղումն Նինուէում գործածուած սեպաձեւ գրութիւնից: Ապացուցանող փաստեր կան թէ Խալդիսի Կայսրութեան անհետացումից երկար ժամանակ վերջն իսկ Ասորական ազդեցութիւնը դեռ տատանւում էր Հայկական երկրի վրայ: Ո՞ր ժողովուրդից, եւ ո՞ր Թուականից արդեօք այս ինքնակալութիւնը գետին տապալուեցաւ, եւ նորա տաճարներն ու պալատները կրակի բաժին եղան: Առ այժմ անկարելի է ո եւ է պատասխան գտնել այս հարցերին: Միմիայն արձանագրութիւններից կարելի էր իմանալ այդ, բայց նրանցից քաղուած պատմութիւնը այնպիսի մի թերի հանգամանք է պարունակում որ մեր հեղինակը կարծում է թէ այդ շրջանի աղէտներն եւ նոցա սկզբնապատճառները մութի մէջ պիտի մնան, որովհետեւ Վանայ արձանագրութիւնները չեն կրում ո եւ է թուական, մի կարեւոր կէտ, որով զանազանւում են Ասորական արձանագրութիւններից: Ժամանակագրութիւնը, հետեւաբար կարելի է լինում ճշդել երբ նրանցում յիշուած է լինում Ասորի մի թագաւորի անունը, կամ թէ երբ Ասորական արձանագրութեան մէջ նշանակուած է լինում Ուրարդուի ժամանակակից մի թագաւորի անունը: Ասորական տարեգրութիւնների մէջ յիշատակուած կայ թէ Վանայ Սարդուրիս Գ. թագաւորը մի ինչ որ պատգամաւորութիւն է ղրկել Նինուէ 644 թուին Քրիստոսից առաջ: Ուստի Լինչի ենթադրութեամբ, Վանայ կայսրութիւնը յարատեւած լինելու է իւր անկախութիւնը առնուազն մինչեւ Աշուր-Բանի-Պալի կամ Սարդանապալ Յունացի մահուան թուականը՝ մօտ 626 Ն. Ք.: Ինչպէս կարելի է տեսնել Յոյն մատենագիրների գործերից, այս թուականը բերում դուրս է հանում մեզ Արեւելեան պատմութեան արշալոյսի հան-

դէպ։ Հերոդոտոսի էջերում Հայաստան երկիրը, ինչպէս նաեւ Ասորեստանը, կազմում են Դարեհի եւ Քսերքսէսի մեծ կայսրութեան մասունքներ (521 486 եւ 485-465 Ն. Ք.), եւ այս նոր շրջանը իւր ետեւից թողել է մի ամենագեղեցիկ յիշատակարան Վանայ ժայռի վրայ։ Նորա հարաւակողմեան ճակատին, իւր ոտքի տակ փռուած պարսպապատ քաղաքի դէմ յանդիման, փորագրուած երեւում է Պարսկական յաղթանակի երեքլեզուեան յիշատակարանը «Մի մեծ աստուած է Որմիզդ, որ աստուածներից ամենամեծն է, որ ստեղծել է այս երկիրը, որ ստեղծել է այդ երկինքը, որ ստեղծել է մարդկութիւնը, որ տուել է երջանկութիւն մարդին, որ արել է Քսերքսեսին թագաւոր, միակ թագաւոր բազում թագաւորների, միակ տէր բազմաց։ Ես եմ Քսերքսես մեծ թագաւորը, թագաւոր թագաւորաց, թագաւոր բազմալեզու գաւառների, թագաւոր հեռաւոր եւ մօտաւոր այս մեծ երկրին, որդի Աքեմենեան Դարեհ թագաւորին։ Ասում է Քսերքսես թագաւորը. իմ հայրը, Դարեհ թագաւորը, արեց շատ գործեր Որմիզդի պաշտպանութեան շնորհիւ, եւ այս բլուրի վրայ նա հրամայեց շինել մի սեղան եւ մի պատկեր, բայց արձանագրութիւն չը շինեց։ Յետ որոյ ես պատուիրեցի այս արձանագրութիւնը գրուի։ Թող Որմիզդ, բոլոր աստուածների հետ միասին, պաշտպանէ ինձ, իմ թագաւորութիւնը, եւ իմ գործը»։

Անջնջելի կերպիւ աղեղնաձեւ փորագրուած այս սիգապանծ յայտարարութիւնից աւելի քան հարիւր տարի առաջ Ասորական կայսրութիւնը արդէն դադարել էր գոյութիւնից։ Նինուէն ամայի էր դարձել 606 ին Ն. Ք, իւր հպատակ Բաբելոնացիներից։ Այս երկիրների պատմութեան մի ամենակարճ շրջանին մէջ ցեղագրական ընդարձակ փոփոխութիւններ տեղի ունեցան։ Նոր ազգեր դուրս եկան տեսարանի վրայ։ Կի-

մերեան վրանաբնակները, Սկիւթական վայրենի ցեղերից անմիջապէս յետոյ, արշաւեցին դէպի հարաւ Կաւկասի հիւսիսակողմեան երկիրներից, եւ մրջիւնի բազմութեամբ ծաւալուեցան Նորագաղթ երկիրների երեսին ։ Նախկին թագաւորութիւնները ղողդողացին եւ վայր ընկան մարդկային այս նոր յորձանքին մէջ ։ Ճիշդ այդ շրջանումն է որ մենք առաջին անգամ սկսում ենք լսել Հայ անունը ։ Բոլոր եղած վկայութիւններից այն եզրակացութեանն ենք յանգում թէ Հայերը ներս են մտել իրենց պատմական բնակավայրը արեւմուտքից, երբ մէկ ճիւղը Հնդկա—Եւրոպական ժողովուրդների այն մեծ գաղթականութեան, որոնք Եւրոպայից, նեղուցների վրայով, անցան դէպի փոքր Ասիա եւ գուցէ եկան հենց ուղղակի Սեւ ծովի հիւսիսակողմեան մեծ դաշտերի իրենց նախնական օջախներից ։ Ինչպէս նոցա արենակիցների մի նախընթաց սերունդը, արշաւելով կենտրոնական Եւրոպա, իրենց առաջից քշեցին Ետրուսկեան, Լիգուրեան եւ Բասքեանց հին ցեղերին, այնպէս նաեւ (Հայերը) Արմէնները. երեւում է, եկան գրաւեցին Սկիւթական ասպատակութիւններից հաւանօրէն ամայացեալ այս տարածութիւնը, եւ Խալդիսի վաղեմի տէրութեան հպատակների փոխարէն իրենք դարձան տէր այդ նոր երկրին որը իրենց անունով այսօր կոչւում է Արմենիա ։

Հերոդոտի էջերից կարելի է հասկանալ թէ այս յեղափոխութիւնը տակաւին կատարուած չէր առնուազն Քրիստոսից հինգ դար առաջ ։ Պատմագիրների այս նախահօր տեղեկութիւններից ակնյայտնի է թէ Հայերը ապրում էին Հալիսի եւ Տիգրիսի ակունքների շրջակայ լեռնոտ երկրի մէջ սփռուելով դէպի Միջերկրական եւ հասնելով Կիլիկիա ։ Միւս կողմանէ, Խալդիք կամ Ուրարդացիք բոլորովին չ'էին անհետա-

ցել, թէպէտ եւ ըստ երեւոյթին նոքա տեսնում է չեն զիջած հպատակ վիճակի մէջ մնալու։ Ուստի, հալածուելով Հայերից, այդ նախկին տիրապետները հարկադրուած են եղել ապաւինել դէպի անառիկ լեռներ։ Նոքա ամրացան անմատչելի սարերում եւ ապրում էին ասպատակութեամբ, մերթ ընդ մերթ արշաւելով դաշտերի վրայ։ Մեր հեղինակը անտարակուսելի է համարում թէ մի օր երեւան պիտի գան պատմական նշխարներ ապացուցանող թէ Խալդիսի իրաւազուրկ որդիները ապաստան են գտել մասամբ Հայաստանի հիւսիսային սահմանագլխի լեռների մէջ եւ մասամբ հարաւային սահմանագլխի։

Այս է պատճառը, հաւանօրէն որ հիւսիսակողմեան սահմանի անհիւրընկալ բարձունքների վրայ ընդ երկար գոյութիւն է ունեցել Քալդիա անունը (Խաղդիա)։ Յունական եւ Բիւզանդական մատենագիրների գործերում կարելի է պատահել այս անունին որ նոքա տալիս էին այդ կողմի մէկ գաւառին եւ այնտեղ ապրող ժողովուրդին։ Պարոն Լինչ այս մասին յառաջ է բերում մի այլ վկայութիւն Կաստիլեան դեսպան Դոն Ռիւ Գոնզալէս Կլավիգոյի ճանապարհորդութիւնից 1404 ին։ Այս դեսպանը ճամբայ ելնելով Տրապիզոնից դէպի Երզնկայ երրորդ օրը ճանապարհորդելիս է լինում Քաղդիա Նահանգի ձիւնապատ լեռների միջով դէպի Ծանիկի դղեակը որ բարձրանում է մի ժայռի վրայ, եւ վաղորդեան երեկոյին հասնում է Քաղդիոյ Իշխանի դղեակը ուր բոլոր կարաւանները անցագին էին վճարում։ Մեր հեղինակը ենթադրում է թէ արդի Կիւմիւշխանէն է եղել Քալդիոյ Իշխանի այդ մայրաքաղաքը եւ այդ անուան յիշատակը տակաւին պահւում է այդ տեղ։

Հարաւակողմեան լեռնագօտիի վրայ, սակայն, այնքան դիւրին չէ ճշդել այդ վաղեմի ժողովուրդի ապաստանած բնակավայրը։ Թէ նոքա ստուգիւ ապրում էին նաեւ այդ մասերում՝ այդ ապացուցւում է Քսենոփոնի պատմութիւնից երբ նա Պարսկաստանից յետ էր դառնում ողջ մնացած տասն հազար զօրքերով։ Տիգրիս գետի Բոհթան ճիւղից անցնելիս նա դիմադրութեան է հանդիպում Քաղդէական զօրքերից կամ, աւելի ճիշտն ասած, Քաղդիական վարձկաններից։ Քսենոփոնի գրքի մէջ նոքա նկարագրուած են իբր անկախ ոգիի եւ պատերազմասէր բնութեան տէր մարդիկ, եւ Կորդուացիների—ներկայ Քիւրդերի—նման պաշտպանում էին իրենց քաղաքական ազատութիւնը։ Մարդ հակամիտւում է խորհելու թէ Ջուլամերկ գաւառի շրջակայքում այժմ գոյութիւն ունեցող Քաղդէացիները կամ Ասորի Քրիստոնեաները մի գուցէ անհետացեալ ցեղի բեկորներն են։ Այս այնպիսի դժուարակնճիռ մի հարց է որի մասին անկարելի է ո եւ է կարծիք յայտնել մինչեւ որ բացորոշ ապացոյցներ ձեռք չբերուեն Վանայ հընագարեան թագաւորութեան հպատակների ծագումի եւ ցեղային արենակցութիւնների վերաբերմամբ։ Քաղդէացի Քրիստոնեաները ենթադրւում է փախել են այդ լեռների վրայ Միջագետքի դաշտերից Լանգթէմուրի ժամանակ։ Միւս կողմանէ, մի քանի գիտնականներ ստուգաբանական եւ նախնատիպ ահագին զանազանութիւն են գտնում Խալդիս աստուծոյ հետեւող ժողովուրդի անուանակոչութեան եւ Բաբելոնական Քալդեների կամ Քաղդէացիների անունի միջեւ։ Այսու ամենայնիւ մեր հեղինակը կարծում է թէ առ այժմ դեռ անկարելի է ժխտել ազգակցական կամ կուլտուրական կապի հաւանականութիւնը այդ երկու ցեղերի միջեւ։

Թէպէտեւ Վանայ թագաւորութեան ամբողջ պարագայքը դեռ հազիւ թէ դուրս են եկել իրենց մանկական աստիճանից, սակայն եւ այնպէս արդէն ձեռք բերուած տեղեկութիւնները բաւական մեծ լոյս են սփռում Հայաստանի վաղեմի պատմութեան եւ բուն իսկ Հայ ազգի վրայ։ Իւր գործի առաջին հատորում հեղինակը մանրամասնօրէն ցոյց տալուց յետոյ Հայ տարեգրութեանց գլխովին մթութիւնը Արշակունեաց հարստութեան երեւումից առաջ, երկրորդ հատորում եւս յիշատակում է թէ Դարեհին եւ դասական մատենագիրներին իբր Արմէնն ծանօթ ժողովուրդը միշտ սովորութիւն է ունեցել ինքն իրեն կոչել Հայ անունով։ Նոքա հաւատում են թէ իրենց Հայկ նախահայրը գաղթեց Բաբելոնից դէպի հիւսիսային արեւմուտք եւ վերջնականօրէն հաստատուեցաւ Վանայ ծովի ափերում։ Նոքա անուանում են իրենց սկզբնական թագաւորների շարքը «Հայկազանց հարստութիւն», եւ առասպելական ձեւով պատմագրում են այդ հարստութեան վաղեմի կռիւները Ասորական տէրութեան դէմ։ Նոցա պատմագիրները ընդունում են թէ իրենք զուրկ են այդ շրջանի ազգային տարեգրութիւններից, եւ ողբում են իրենց նախահայրերի անգրականութեան համար։ Մեր հեղինակին թւում է թէ Հայ պատմաբանները մեզ ներկայացրել են Խալդիների պատմութեան պղտորուած եւ առասպելականացեալ դէպքերը, շփոթ կերպիւ միախառնուած բուն իսկ Արմէնիա Հայ ցեղի պատմական դէպքերի հետ։ Թէ Վանայ թագաւորների ժողովուրդը Հայեր չէին, այդ ապացուցուած է նոցա լեզուի որոշիչ յատկանիշով։ Թէ նոցա կայսրութիւնը Քրիստոսից դեռ առնուազն վեց եւ կէս դար առաջ գոյութիւն ունէր, այս եւս անտարակուսելի մի իրողութիւն է։ Թոփրաք-Գալէում չէ գտնուել մի ոեւէ

քան որ կարողանար մեզ իրաւունք տալ կարծելու Հայկազանց հարստութեան գոյութիւնը այդ վայրերում։ Միւս կողմանէ, Քսենոփոնից տեղեկանում ենք թէ փոխադարձ անվստահութեան մի շրջանից յետոյ, նուաճուած Խալդիները խնամիական կապերով խառնուեցան իրենց տիրապետող Հայերի հետ։ Այս պարագային Հայերը մի որոշ աստիճան ժառանգած լինելու են այդ անհետացեալ ժողովուրդի արիւնը որ դեռ այն դարերում տուել էր Հայաստանին մի յայտնի քաղաքակրթութիւն։

Հայերը, բոլոր կարող եւ աշխարհակալ ցեղերի նման, շատ բան փոխ առին հին բնակիչների զարգացումից եւ հասած կատարելութիւններից։ Նոցա հընագոյն քաղաքները — Վան, Արմաւիր, եւ գուցէ Մանազկերտ եւ Արճէշ — Վանայ թագաւորների հիմնարկութիւններ են։ Վանից դէպի հարաւային արեւելք, Հայոց Ձորում իբր թէ Հայկ նահապետից կառուցուած Հայկաշէն անուանով յայտնի քաղաքը, նոր հնագէտների նոյն իսկ առաջին փորձերից երեւան եկաւ թէ պարզապէս Խալդիական մի քաղաք է եղել, եւ նորա աւերակների վրայ ակներեւ են այդ ցեղի քաղաքակրթութեան յատուկ նշանները։ Պարսկական ազդեցութիւնները աւելի տեսանելի տպաւորութիւն են թողել Հայ ցեղի վրայ, եւ այս աւելի բնական է, քանի որ Խալդիները իբր հպատակ ժողովուրդ չէին կարող իրենց ցեղային բնաւորութիւնն եւ պաշտամունքը փոխանցել Հայերի վրայ, մինչդեռ Պարսիկները, իբր տիրապետող տարր շատ բան կարող էին արած լինել այդ ուղղութեամբ։ Եւ հաւանօրէն այս լինելու է պատճառը որ Հայերի գերագոյն Աստուածը նախաքրիստոնէութեան դարերում Վանայ բնիկ սեպագիրների Խալդիսը չէր այլ Քսերքսէսի արձանագրութեան Որմիզդը, որ ստեղծել է այս երկիրը, որ ըստեղծել է այդ երկինքը, որ ստեղծել է մարդկութիւնը։

# ՎԱՆ

## ԵՒ

# ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

Նախա—Հայկական թագաւորների շրջանի բեկորներից դուրս, յետագայ պատմական երկար դարերից ոչինչ է մնացել Վանում, բացի Սարակինացոց ժամանակի եւ նոցա ամենաընտիր ճարտարապետութեան ոճովն կառուցուած եւ նախշերով ու արաբական յիշատակագրութեամբ պճնազարդուած մի մզկիթի մնացորդներից։ Հեղինակը նկատում է թէ ամբողջ այդ կողմի երկիրը ենթակայ է շարժական ազդեցութիւնների։ Եւ այդպէս ըստ աւանդութեան կարծւում է թէ բուն իսկ Վանայ ժայռի մեկուսացումը արդիւնք է մի բուռն երկրաշարժի որ անջատել է նրան իւր արեւելակողմեան յարակից սարերից։ Այսպիսի ծանր երկրաշարժներ հաւանօրէն պատահած լինելու են նաեւ պատմական դարերի ընթացքում։ Վանայ վաղեմի տաճարները, նորա նախկին փառահեղութեան շէնքերի հետ միասին, երեւում է ոչնչացուել են ամենահին ժամանակներում։ Բարոն Լինչ լիովին հաւաստի է համարում Մովսէս Խորենացիի վկայութիւնը թէ Վան վերաշինուած լինելու է Արշակունեաց հարստութեան առաջին թագաւորի ձեռքով։ Պոնտոսի Միհրդատ թագաւորի ժամանակակից

մի այլ Արշակունի իշխան այստեղ հաստատեց Հրեայ գաղթականութիւնը իրենց քահանայապետով միասին։ Այս Հրեայ գերիների թիւը ենթադրւում է 18,000 ընտանիքի էր հասել Քրիստոսի չորրորդ դարում, բայց նոքա կրկին գերի տարուեցան, այս անգամ, դէպի Պարսկաստան Սասանեանց նորածագ տէրութեան Շապուհ թագաւորի ձեռքով։ Ոչ Արշակունիք եւ ոչ Սասանեանք, երեւում է, առանձին կարեւորութիւն են ընծայել Խաղդիսի պետութեան մայրաքաղաքին. ըստ որում Ասորական իշխանութեան անկումից յետոյ, Ասիական աշխարհի քաղաքականութեան կենտրոնները իսկապէս նշանաւոր փոփոխութիւններ էին ենթարկուել։ Եւրոպան արդէն սկսած էր երեւիլ Արեւելեան բռնապետութիւնների յեղաշրջւող բեմին վրայ, եւ բուն այժմ կռիւը Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ էր։ Երբ խալիֆաների Մահմեդական պետութիւնը գրաւեց կրակապաշտ Սասանեանների տեղը, Պարսկաստան եւ Հայաստան կազմեցին նորածին կառավարութեան մի մասը։ Այդ շրջանում յոյսի մի նոր արշալոյս կար բացուած քրիստոնեայ Հայերի առաջ։ Իրենց կրօնակից Բիւզանդական կայսրութեան թելադրութեամբ եւ աջակցութեան վրայ յենած նոքա կարող պիտի լինէին ամրացնել Վան քաղաքը Արաբների դէմ, որոնք իրենց արշաւանքները յառաջ էին մղում Բաղդադից եւ հարաւային դաշտերից։ Այսպիսի նկատումներով էր որ ծնունդ առաւ Վասպուրականի թագաւորութիւնը եւ մի ժամանակ ծաղկեցաւ միջին դարերում, իրեն մայրաքաղաք ունենալով Վան։ Մեր Հեղինակը պատմական ակնարկ ձգելիս այս նոր թագաւորութեան վրայ, ցաւում է այդ շրջանի Հայերի իրար մէջ ունեցած անմիաբանութեան համար. որովհետեւ, եթէ չը լինէր այդ անմիաբանութիւնը, Հայերը անտարակոյս առաջին կարգի

կարեւոր դեր կարող պիտի լինէին խաղալ այն ժամանակի աշխարհային շարժումներում ։ Մենք տեսնում ենք Վանայ այդ շրջանի մանր Թագաւորներին մի կողմից գլուխ ծռելիս Սելճուկ արշաւանքին , եւ , միւս կողմից , կեղծաւորական դիրք բռնելիս Բիւզանդական կայսրութեան հանդէպ ։ Բիւզանդացիք բարբարոսութեան մրրիկից քշուելուց յետոյ , Վան այլ եւս ընդ միշտ դադարեց ընդհանուր քաղաքական նշանակութիւնից։ Բայց նորա հզօր միջնաբերդը դարերի ընթացքից յետոյ իսկ դեռ եւս մնում էր անաղարտ , մինչեւ որ Լանկ-Թէմուր եկաւ խորտակեց նորա պաշտպանողական անառիկ դիրքը ։ Տասն եւ վեցերորդ դարի սկզբին , այս քաղաքը անուանապէս վերաբերում էր պարսիկ տէրութեան մինչ իրականապէս գտնւում էր Զիդէբէգ քիւրդ ցեղապետի իշխանութեան տակ այնպէս որ նա նոյն իսկ դրամ էր կոխում իւր անունով իբր իշխան Վանայ ։ Բայց Շահ Իսմայիլ Ա. ի (1502–1254) զօրավարը երկար պաշարումից յետոյ տիրեց քաղաքին, եւ իշխանազուրկ արաւ Զիդէբէգին ։ Վան միայն շատ քիչ ժամանակ մնաց պարսկական լուծի ներքեւ , որովհետեւ 1534 ին քաղաքի բանալիները յանձնուեցան Սուլթան Սուլէյման Ա. ի յաղթական վէզիրին , եւ , այսպէսով , Օսմանցի Թուրքերը դարձան տէր պարսկական սահմանագլխի սոյն կարեւոր բերդին , եւ դարձրին նրան իրենց կայսրութեան ամենազօրաւոր տեղերից մէկը ։

Հեղինակը վկայում է թէ հակառակ երկար դարերի աղէտաբեր յեղափոխութիւններին Հայ ժողովուրդը ոչ միայն չ՚ոչնչացաւ այլ ընդհակառակն դեռ մինչեւ այսօր առաւելակշիռ քանակութեամբ պահպանում է իւր գոյութիւնը քաղաքում եւ շրջակայքում ։ Առնուազն 2,500 տարի կայ յորմէ հետէ այս ցեղը անսասան պինդ կանգնած մնում է Վանայ ծովի ափերում ,

եւ, բնականաբար, այլ եւս վարժուել է տեսնելու կայսրութիւնները գալիս եւ անցնելիս, քաղելով իրենց կողոպուտի հունձքը Հայ շինականից։ Հայի պատմութեան հեռանկարը ներկուած է երեւում այնքան ահռելի աղէտներով, որ մեր հեղինակը չէ հաւատում թէ այս ցեղը կարող է խորտակուել իւր վերջին մեծ դժբաղդութիւններից կամ իւր արդի յուսահատական կացութիւնից։ Հայերի բեղմնաւորութիւնը ոչ նուազ նշանաւոր է քան նոցա տոկունութիւնը, եւ նոցա ներկայութիւնը անհրաժեշտ է երկիրը շահագործող պաշտօնեաներին։ Չ'է կարելի ասել թէ այս վերջին դարի ընթացքում Հայ ժողովուրդի վիճակը շատ մխիթարական է եղել Վասպուրականի կողմերում, եւ սակայն, ցեղային աճումը մեծապէս զգալի կերպիւ է յառաջ գնացել նոյն իսկ գերազանցելով Մահմեդական տարրի աճումին։ Անգլիական հիւպատոս Բրանտ յիշատակում է թէ 1838 ին Վանը պարունակում էր ոչ նուազ քան 7,000 ընտանիք որոնցից միայն 2,000 ը Հայեր էին։ Այս գումարը ներկայացնում է մօտ 35,000 բնակիչ, որոնցից 25,000ը Մահմեդական էին եւ 10,000ը Հայեր։ Հեղինակի առաջին այցելութեան միջոցին, Այգեստանն էլ մէջն հաշուելով, քաղաքի բնակիչների թիւն էր 30,000, բայց այս անգամ Մահմեդականների գումարն էր միայն 10,000, մինչ Հայերի քանակութիւնը բարձրացել էր 20,000 ի։ Իսկ եթէ հաշուի առնուի Վանայ fազան կամ շրջակայքն, այն ժամանակ արդի Վանայ բնակիչներն են 64,000 որոնցից 47,000 հոգին վերաբերում են Հայ ազգաբնակութեան եւ 17,000 ը Մահմեդական։ Անգլիական հիւպատոս Թայլըր 1868 ին Վանայ եւ շրջակայքի բնակիչները համարում էր 17,000 Մահմեդական եւ 42,000 Քրիստոնեայ։ Այս եւ նմանօրինակ վիճակագրութիւններից եզրակացւում է

թէ մինչեւ անգամ ամենակարճ շրջանի հանգստութեան ընթացքում Հայ տարրը անյուսալի արագութեամբ աճելու ընդունակ է։ Սակայն, հանգստութիւն եւ բարեկեցութիւն կեանքի հազուագիւտ երեւոյթներ են այդ կողմերում, եւ հեղինակը միայն վշտով մի տպաւորութիւն է զգացել իւր շուրջը դիտելիս։

Կացութեան աչքի զարնող պատկերն է երկու հակառակ տարրերի միջեւ եղած կռիւը։ Մէկ տարրի յատկանիշն է անհանդարտ մշտաշարժ կորով Եւրոպական ուղղութեան երեւոյթ առած, մինչ միւսի յատկանիշն է թմրութիւն, կասկածոտութիւն եւ երբեմնակի բորբոքումն։ Ոչ մէկը եւ ոչ միւսը, սակայն, օժտուած են կառավարելու կարողութեամբ, որքան էլ որ սակաւաթիւ լինեն եւ որքան էլ որ կառավարելիք տարածութիւնը կ'ուզէ փոքր լինի։ Միայն թէ այն որոշ զանազանութիւնը կայ որ Հայ հպատակ մեծամասնութիւնը վարում է աշխատասիրութեամբ մի կեանք եւ ստեղծում է երկրի ունեցած հարստութիւնը, մինչ Մահմեդական տիրապետ փոքրամասնութիւնը հասնում է իւր փողը գլխաւորապէս մեծավաճառ[illegible]կամ Քրիստոնեաների մէջից ճարում է ամենաճարպիկը որպէս զի նորա հնարամիտ թելադրութիւնների շնորհիւ կարող լինի աւելի վարպետօրէն կողոպտել հասարակութիւնը եւ հասարակական փողերը։ Ամենի վրայ նախագահում է կենտրոնից ղրկուած անընդունակ եւ անուս մի պաշտօնեայ։ Պաշտօնական բարձրագոյն շրջանակից մինչեւ ստորնագոյն շրջանակի գործունէութիւններ կայանում են կաշառակերութեան, փոխադարձ դաւադրութեան, եւ ինտրիգների մէջ։ Պարոն Լինչ նկատում է թէ այս կամ այն պատճառաւ Մահմեդական կառավարութեան դրութիւնը ենթարկուել է շատ մեծ փո-

փոխութեան, եւ երկիրը բնաւ այն չէ ինչ որ էր մեր հայրենի ժամանակ։ Սարսափ եւ կասկած նկարուած են ամենի երեսին։ Քիւրդերի ազդեցութիւնը օրէ ցօր աճում է, որով Թուրքերը իսկապէս ընկնում են ուժից եւ Հայերը քշւում հոսանքի տակ։ Հեղինակը ապացուցանում է թէ մի աւելի իմաստուն կառավարութիւն, մանաւանդ Վանայ պէս մի կէտում, ընդհակառակն հետամուտ պիտի լինէր սերտ կապակցութիւն յառաջ բերել Թուրքերի եւ Հայերի միջեւ, որովհետեւ Քիւրդերի զօրացումը այդ սահմանների վրայ պարզապէս ապագայ կործանարար մի սպառնալիք պիտի լինի թէ Թուրք տէրութեան եւ թէ Թուրք տարրի գոյութեան դէմ։

Եթէ Հայերի նախկին հլու, սորկական ոգին տեղի տուաւ մի բոլորովին տարբեր ուղղութեան, սորա բուն պատճառը մեր հեղինակը մասամբ գտնում է լըրտեսական սիստեմի մէջ որ ներկայացնում էր այդ ցեղին իբր արդէն իսկ ապստամբ եւ բռնի մղում էր դէպի այդպէս իսկ դառնալու, եւ մասամբ այն հանգամանքի մէջ՝ թէ Հայերն իրենք այլ եւս ակամայ կամօք սկսել էին ըմբռնել իրենց իրական խեղճութիւնները կամայական հալածանքների, հարստահարութիւնների, եւ բռնաբարութիւնների հետեւանօք։

* *
*

Այս գիտակցութեան արշալոյսը ծագում է Խրիմեան Հայրիկից որի եռանդուն գործունէութեան շատ բան պարտական է Վանայ եւ առհասարակ Թուրքիոյ Հայ հասարակութիւնը։ Հեղինակը ասում է թէ Խրիմեանի աշխատութեան ապացոյցն եւ օրինակը սըփռուած է քաղաքի վրայ։ Նորա ջանքերը ուղղուած

էին իւր հայրենակիցներին կրթութիւն տալու նպատակակէտի մէջ։ Նորա անձնական ազդեցութիւնը եւ քարոզչական կոչումը միշտ հակամէտ էին զարթեցնելու այն քնացող զգացումները որոնք շարունակ ներկայ են մարդկային սրտի մէջ, որքան էլ որ այդ սիրտը ջախջախուած լինի։ Հասկանալ իրենց մարդկային արժանապատուութիւնը եւ ինչ իրենք պարտին իրենք իրենց եւ իրենց ցեղին — այս խորհուրդներն էին որ դուրս էին բղխում նորա քարոզների մէջից եւ թափանցում իւր հօտի խաւերի մէջ։ Նորա անձնաւորութեան հմայքի ներքեւ դպրոցներ սկսան երեւան գալ։ Ուսուցիչներ տոգորուած էին բուռն զգացումով որը բնականաբար փոխանցւում էր աշակերտների վըրայ։ Ճշմարտութեան ոգին խիստ յաճախ ազգական է յեղափոխութեան ոգիի հետ, եւ կան կապեր, ինչպէս ներսից նոյնպէս եւ դրսից, որ այդ երկուքը միաւորում են իրար հետ։ Երբ մթութեան թաղանթը վայր ընկաւ այս տանջուող ժողովուրդի աչքերից, նոքա սկսան տեսնել իրենց ճակատագրի մերկապարանոց տգեղութիւնը։ Նոցա բնածին ձգտումները փոխանցուեցան չարչիութեան ասպարէզից դէպի ընկերային բարւոքման եւ քաղաքական ազատագրութեան ասպարէզը։ Ծուռ մեթոդների երկար սովորութեամբ անկանոնաբար կենսաւորուած նոցա մտքերի խորամանկութիւնը փոխարկեց առեւտրական մթնոլորտը քաղաքական մթնոլորտի։ Այս յախուռն ձեւափոխութիւնը անշուշտ իւր անխուսափելի աղէտներն պիտի ունենար, եւ ինչ որ Հայը իւր անփորձ հասկացողութեամբ խելացութիւն կարող է համարել Եւրոպայի քաղաքագէտը միայն ունքերը պիտի պռստացնէ եւ աւելի յաճախ ծիծաղի...։ Բայց կեանքի այն պարագաների մէջ ուր շունչ են քաշում Հայերը մեր հեղինակը դըժ-

ուսարանում է մեղադրել նոցա իրենց անշրջահայեցութեան համար։

Այս նիւթերի վրայ ծանրանալիս Գարոն Լինչ, բնականաբար, չէր կարող զանց առնել ուսումնասիրական ակնարկ ձգելու Խրիմեան Հայրիկի վրայ մանաւանդ որ կաթողիկոսական օծման միջոցին Էջմիածին գտնուելով ականատես էր նորա շուրջն եռացող ազգային ոգեւորութեանը, եւ առիթ է ունեցել մի քանի առանձին տեսակցութիւններ ունենալ նորընտիր Հայրապետի հետ։

Պղծել ինչ որ շատ տասնեակ տարիներով սուրբ է դաւանուել եւ բազմեցնել սրբութեան սեղանի վրայ ինչ որ պիղծ էր դեռ երեկ՝ այդ միայն փոքր—ոգի անհատների յատկանիշը կարող է լինել։ Երկու պարագային եւս յերիւրւում են կամայական չինծու փաստեր որոնք իբր ճշմարիտ իրողութիւններ սփռւում են հասարակութեան մտքի վրայ գլխովին հակառակ կարծիք եւ հակառակ համոզումն կազմել տալու համար։

Ժողովուրդը մի առ ժամանակ սկսում է մոռանալ բայց վերջ վերջոյ չէ փոխւում։

Հեղինակը ասում է թէ Խրիմեան ըստ ինքեան մի իդէալ քահանայապետ է։ Նա այնպիսի մի դէմք է որը կարծես յարութիւն է առնում Հին Կտակարանի մէջից իւր բանաստեղծութեամբ։ Այս տպաւորութիւնը մարդ զգում է մասամբ գուցէ նորա Սեմական դէմքի արտայայտութիւնից։ Նորա խոշոր թուխ աչերի եւ երկար փառաւոր մօրուքի վերեւ բարձրացող արծուային քիթը այն տեսակ յատկանիշերից են որոնք վերագրուած են Հրեական ազգին, բայց որոնք անսովոր չեն նաեւ Հայերի միջեւ։ Ինչ որ Լինչ աւելի հազուագիւտ է համարում մեր ժողովրդի մէջ այդ այնտուրը

եւ ոգեղէն արտայայտութիւնն է որ նկարուած է երեւում Խրիմեանի վսեմ երեսի իւրաքանչիւր գծի վրայ։ «Ես չեմ յիշում երբ եւ իցէ տեսած լինել մի աւելի փառահեղ եւ գրաւիչ երես, եւ հաճոյքի սարսուռ էր անցնում էութեանս մէջից ամեն անգամ որ նստում էի նորա կողքին եւ տեսնում նորա վճիտ թուխ աչքերի շուրջն խաղացող ժպիտը որ յայտնապէս բոլորովին բնական էր թւում այդ դէմքին ... մի յատուկ անուշութիւն կայ նորա ձայնի մէջ, եւ մարդ հրճուանք է զգում երբ տեսնում է նորան կանգնած խօսելիս։ Խրիմեան իւրացնում է իւր մէջ Գլադստոնի բոլոր հրապոյրը»։ Հեղինակը բացատրում է Հայրիկին իբր մարդ, իբր քարոզիչ, իբր մատենագիր, իբր խմբագիր, իբր պատրիարք, եւ իբր Հայրենասէր։ Նա տեսնում է Խրիմեանին իւր բուն արժանաւորութիւնների մէջ առանց չափազանցութեան ենթարկուելու, եւ եզրակացնում է թէ՝ մի մարդ որ իւր ամբողջ կեանքի ընթացքում մի փշոտ ասպարէզի վրայ այնքան հաստատուն է եղել կրթութեան պէտքերի ծառայման, որ յղացել է մամուլի գոյութիւնը հաստատելու իւր խաւար հայրենիքի խորքում, որ տասնեակ տարիներով իւր վրայ սեւեռած է ունեցել մի ազգի ընդհանրութեան բուռն սէրը, պէտք է արդարեւ մեծ մարդ եղած լինի իւր երկրի գործունէութեան սահմանին մէջ։ Սակայն ազգասիրական այն յախուռն ոգեւորութիւնները որ արտայայտւում էին Հայ հասարակութեան մէջ կաթողիկոսի օծման ժամանակ, եւ յոյսերն որոց իրականացումը այս ազգը ակնկալում էր Հայրիկից անշուշտ միայն հեղինակի բարեմիտ ժպիտը կարող էին շարժել։ Եւ ժողովուրդի այդ ակնկալութիւնների հանդէպ նա նմանեցնում է Հայերը Հրեաների հետ որոնք ակնդէտ սպասում էին Խոստացեալ Մեսիային եւ հաւատում թէ նա պիտի գար

փրկելու Իսրայէլի զաւակներին մարմնաւոր գերութիւնից, եւ վերահաստատելու Սիօնի գլխին Դաւիթի թագաւորական աթոռը։ Խրիմեան շատ լաւ էր հասկանում իր կարողութեան տկարութիւնը եւ կոչման հիմնովին տարբերութիւնը այդպիսի յոյսերի վերաբերմամբ, «Ես եկել եմ երկիրն մոռացութեան» ասում է Հայրիկ հեղինակին մասնաւոր մի խօսակցութեան ժամանակ։

Հայրապետի եւ ժողովուրդի միջեւ արտայայտուած յուզմունքների երեւոյթին ի տես, Լինչի երեւակայութիւնը յետ յետ է սաւառնում դարերի մէջից դէպի այն հանդիսաւոր տեսարանը ուր Ցոյն թագաւորը ընդունում է իր հարուածեալ եւ թարթափուն ժողովուրդին ասելով «Ո՞վ իմ խեղճ ծանօթ զաւակներս, անծանօթ չ'է ձեր աղերսանքի առարկան։ Լա՛ւ եմ հասկանում թէ դուք ամենքդ էլ կարեվէր խոցուած էք։ Թէպէտ դուք տառապում էք, սակայն եւ այնպէս չ'կայ ձեր մէջ մէկը որ այնչափ տառապէր որչափ ես եմ տառապում։ Որովհետեւ ձեր կրած կսկիծը հասնում է ամեն մէկիդ զատ զատ— ինքն իր համար է տառապում — եւ ուրիշ ոչ ոքի, բայց իմ հոգին սուգ է բռնում Հայրենիքի համար եւ ինձ ու ձեզ համար։”

* * *

Հեղինակը առանձին ուշադրութեամբ է հետեւել Վանայ դպրոցական վիճակին այցելելութիւն տալով ինչպէս միսիոնարականին նոյնպէս եւ Լուսաւորչական բոլոր ուսումնարաններին։ Նա նկատում է թէ օտար ճանապարհորդն իր ապրած սոյն միջավայրի մտաւոր աստիճանը չափելու համար չէ կարող ունենալ դրանից աւելի լաւ եւ աւելի հաւաստի մի ուրիշ միջոց։ Մինչեւ վերջին տարիներս կրթութիւն տալու մի առանձին սահման չ'կար դրուած կառավարութեան կողմանէ,

սակայն ազգային ոգիի արծարծման հետ զուգընթացաբար կառավարութիւնը սկսաւ իւր ուշքը սեւեռել ներմուծելով կաշկանդիչ եւ կամայական մեթոդներ անհատական դպրոցներում։ Այսուամենայնիւ ցեղային կրթական իրաւասութիւնը, բաղդատաբար, լաւագոյն պայմանների տակ է գտնւում։ Միայն թէ Թուրքիոյ Հայերը իրենց եկամուտի վրայ հարիւրին երկու կրթական տուրք են վճարում կառավարութեան։ Կառավարութիւնը գրպանում է այդ փողը բայց թերանում է օժանդակելու Քրիստոնեայ դպրոցներին, որով նոքա իրենք իրենց կրկին օգնում են եւ պահպանում իրենց դպրոցները։

Վանայ մէջ կան տասն եւ մէկ այս տեսակ կըրթարաններ, հաւաքաբար պարունակում են 2,180 աշակերտ որոնցից 800 ը պատկանում են իգական սեռին։ Մեծամասնութիւնը, այսինքն վեց հատը, եկեղեցական հաստատութիւններ են, միւսները մասնաւոր, ուր հարուստների զաւակներ են յաճախում գլխաւորապէս։ Վանայ Ամերիկեան միսիոնարութեան գըլխաւորը Մըստըր Գրին յայտնել է Հեղինակին թէ քիչ շատ կրթութիւն առած Հայ ծնողների տղայքը բնական ընդունակութիւնների մասին յետ չեն մնում միջին աստիճան Ամերիկացի տղայից։ Եւ բուն իսկ ինքն հեղինակը առհասարակ գոհացուցիչ է գտնում այս քաղաքի Հայոց կրթական վիճակը եւ ենթադրում է թէ միսիոնարական հաստատութիւնները ըստ բաւականին օգտակար են եղել բուն ազգային դպրոցներին իրենց օրինակելի մեթոդներով։ Սակայն, Վանայ իւրաքանչիւր ուսումնարանում մեր հեղինակը դիտել է թէ օդը ապականուած էր անախորժ հոտով, թէեւ բոլոր լուսամուտները բաց էին։ Նա նկատում է թէ նոյն իսկ Ամերիկացի միսիոնարները դեռ չեն յաջողած

ներմուծելու անձնական մաքրութեան գաղափարը։ Աշակերտների մեծամասնութիւնը ունէին անկանոն դիմագծեր, բայց նոցա ամենի աչքերը թուխ էին եւ փայլուն, շողշողալով համրիչի խոշոր հատիկների նման։ Տղայքը յետին աստիճանի խելացի էին երեւում։ Փոքր աղջիկները շատ մեծ ազդեցութիւն չեն թողել հեղինակի վրայ իրենց իգական սեռի հրապոյրի կողմից. Թէպէտ աւելի տարէց կոյսերի մէջ նա տեսնել է մի քանի գեղեցիկ սեմական տիպեր որոնք ի յայտ էին բերում Հրէական արիւնի ներկայութիւնը Հայկական երակներում։ Դիմագծային այս նմանութիւնը տարօրինակ չ՛պիտի թուի եթէ ի միտ բերենք Հրէական այն մեծ գաղթականութիւնն որ իբր գերի տեղաւորուեցաւ այս քաղաքում Արշակունեաց հարստութեան առաջին թագաւորների օրով։

Հեղինակը ուշադրութեան արժանի մի երեւոյթ է համարում Վանայ միսիոնարների գործունէութեան մէթոդը։ Ասիական Թուրքիոյ երեսի սփռուած միսիոնարական հիմնարկութիւնները բացառապէս պատկանում են Նոր Աշխարհի Բողոքական ընկերութիւններին։ Այս անցեալ դարի սկզբին նոքա նախ հաստատուեցան Փոքր Ասիայում ապա անցան Միջագետք, իսկ Վանայ մէջ իրենց հիմքը դրին 1871 ին, ուր նոցա գործունէութեան ասպարէզը սահմանափակուած է մի միայն լուսաւորչադաւան Հայերի շրջանակում։ Հեղինակը գնահատում է Վանայ միսիոնարներին, որովհետեւ նոցա ուսուցման գերագոյն կամ մասնաւոր ուղղութեան մէջ, չէ նշմարում հաւատափոխութեան ձկտումն։ Նա ասում է թէ, եթէ պատահմամբ, իւր տողերը հասնէին Ամերիկայի հասարակութեան ականջին, պիտի յանդգնէր աղերսելու միսիոնարութեան պահպանողներից որ հակամիտուէին աւելի քաջալերելու քան թէ խա-

փանելու իրենց Վանայ անձնուրաց պաշտօնեաների սոյն ողջամիտ ուղղութիւնը ։ Այս կէտը շօշափելիս նա ասում է ։ «Եկեղեցին ներկայ օրս միակ կանգուն հաստատութիւնն է որ մնացել է Հայ ժողովուրդի ձեռքին ։ Չկայ կրթուած մի Հայ—լինի աշխարհական կամ կղերական որ չ'զգայ իւր Եկեղեցիի բարեփոխութեան պէտքը ։ Բարեփոխութիւնը պիտի գայ ներսից իբր հետեւանք այն յարաճուն լուսաւորութեան որ նոյն իսկ ինքն Եկեղեցին մղուած է արտաքոյ կարգի դժուարութիւններով ծաւալելու իւր ցիրուցան ժողովականների մէջ ։ Հարազատ կաթից կտրել իւր զաւակներին մինչ ինք տակաւին մի ազնիւ նպատակի դառնակսկիծ ցաւերի մէջ է, պիտի նշանակէր գրգռել այն կատաղի ոգին որ դարանակալ սպասում է բոլոր կրօնների մէջ. երբ նոքա դըրսից ո եւէ յարձակումն են կրում իրենց մայրութեան բնազդների վրայ ։ Այսպիսի մի ճիգ միանգամայն վերին աստիճանի անքաղաքագիտական պիտի լինէր, նաեւ հակառակ Քրիստոնէութեան բարձրագոյն սկզբունքներին—փոխադարձ ներողամտութիւն, խոնարհութիւն, սէր» ։

Կրօնափոխական այս կէտը շօշափելիս հեղինակը դիտում է թէ պարագաները նոյնը չեն ինչ որ էին երբ Լութէր վեր բարձրացրեց ապստամբութեան դրօշակը, եւ ոչ Ամերիկացիները Հայ եկեղեցիի որդիներ են ։ Բացի այս, Հայերը նոցանից ոչ նուազ բողոքական են իրենց դիրքով Հռոմայ Եկեղեցիի հանդէպ ։ Մեր հեղինակը հակեալ է հաւատալու թէ միսիոնարութեան ղեկավար խոհուն մարդիկը համոզուած լինելու են թէ՝ իրենց առաջին ձգտումը պէտք է լինի աւելի տարածել քաղաքակրթութիւն քան որսալ հաւատափոխներ ։ Ապացոյց որ Վանայ ընդարձակ շրջանակում միայն եօթանասուն հինգ չափահասներ են բողոքականութիւն

ընդունողների թիւը գործունէութեան սկզբից ի վեր։ Մինչ միւս կողմանէ, հոգեշահ կենցաղի մակարդակը անհաշուելի կերպիւ վեր է բարձրացել թէ՛ նիւթական եւ թէ՛ բարոյական սահմանի մէջ։ Հիւանդը ընդունում է աջողակ դարման, դպրոցներ բացւում են ամենակարօտ գիւղերում, Եւրոպայի, ինչպէս նաեւ Ամերիկայի ողորմութիւնները բաշխւում են չքաւոր ազքաններին։ Կատարածի ներգործութիւնը փոքր ինչ կարծես ամոքուած է բազմաթիւ որբանոցների հաստատութեամբ։ Այս տեսակից են ահա մօտ երեսուն տարուայ աշխատութեան արդասիքները, եւ Վանայ միսիոնարութիւնը կարող է պարծանքով յետ նայել իւր անցեալի վրայ։ Մեր հեղինակի աչքին այս կարգի գործունէութիւնը նկատւում է անհամեմատ աւելի գնահատելի քան զուտ նորահաւատներ ձեռք բերելու սահմանափակ ուղղութիւնը որին այնքան կողմնակից են մի այլ դասի միսիոնարներ։

Մատըր Գրինի, Ալէնի եւ նոցա աջակից միւս միսիոնարների այս բուն Քրիստոնէական անխառն ուղղութիւնը նպաստաւոր հետեւանք է ունեցել նոյն իսկ իրենց համբաւին։ Հեղինակը մասնաւորապէս հեռամուտ է եղել դիտելու լուսաւորչական կղերի եւ սոյն բողոքական միսիոնարների փոխադարձ յարաբերութիւնը, եւ վկայում է թէ տեղի հայ հասարակութիւնն նա եւ հոգեւորականութիւնը անկեղծ համակրանք են տածում Ամերիկայի այս արժանաւոր զաւակների վերաբերմամբ։ Արդարեւ, նոքա որ գտնուել են Վանում եւ մօտից ծանօթ են տեղի ազգային վիճակին, կամ նոքա, որ մտերմութիւն են ունեցել թունդ լուսաւորչական եւ հասարակական ասպարէզի վրայ ներգործական դեր կատարող վանեցի կարեւոր անհատների հետ անշուշտ, իրազեկ են թէ հեղինակի այս բոլոր պատ-

ուարեր վկայութիւնները շատ ճշմարիտ են Վասպուրականի միսիոնարութեան մասին ։

Նոքա ունին երկու դպրոց բաւական բարձր ծրագրով․ մէկը Այգեստանի մէջ ուր կրթութիւն են առնում 110 տղայ եւ 115 աղջիկ, միւսը բերդաքաղաքի մէջ՝ բայց միայն 75 աշակերտներով։ Բոլոր աշակերտներն եւ աշակերտուհիները Հայեր են եւ մեր հեղինակը հայ հոգեւորականներից ստուգած է թէ միսիոնարները հետամուտ չեն եւ յատուկ փորձեր չեն բանեցնում շեղելու այդ հայ աշակերտներին իրենց մայրենի Եկեղեցիից։

Բացի միսիոնարներից տեղական հասարակութիւնը առիթ չունի շփուելու օտարականների հետ քանի որ շատ սակաւ անգամ է պատահում որ Եւրոպացիներ այցելեն այդ կողմը, այսուամենայնիւ երեք Եւրոպական հիւպատոսներ մշտապէս բնակում են այստեղ։ Հեղինակը դրուատում է Անգլիական հիւպատոսի ջանքերը ի նպաստ մարդկութեան եւ քաղաքակրթութեան, բայց նորա ջանքերը կատարւում են լռելեայն՝ անգլիական ժողովուրդին եւ, բնականաբար, նա չէ արժանանում հանրային ծափահարութեան։ Նա թղթակցում է տեղային պայմաններին բոլորովին անտեղեակ մի դեսպանի հետ, նորա տեղեկագիրները փոշիանում են Արտաքին Գործոց Նախարարութեան խորշերում, եւ յաճախ իւր ցոյց տուած եռանդին ի վարձատրութիւն նա ստանում է կշտամբանք գլխաւորապէս Անգլիոյ երիտասարդ քաղաքագէտներից։

Հեղինակը շատ ողբալի է գտնում ընկերային կեանքի կացութիւնը մահմեդական երկիրներում, ուր կանանց հետ հաղորդակցելու ազատութիւնը նկատուած է իբր ոճիր, եւ ուր զարգացեալ կիներ բառի իսկական իմաստով գրեթէ անծանօթ են։ Տիրապետող

տարրի ազդեցութիւնն է որ Հայ կիներին եւս զուրկ է պահում քաղաքակիրթ երկիրների ուղղութիւնից։ Միւս կողմանէ, Լինչ լիառատ հաստատութիւններով համոզուած է Հայ կանանց բարոյականութեանը։ Թէեւ ամուսինները թողնում են իրենց հարսներին եւ գաղթում Կ. Պոլիս եւ այլուրեք սակայն անհաւատարմութիւնը անսովոր է, որովհետեւ, եթէ լինէր, այդպիսի մի դէպք անկարելի է որ վրիպէր Ամերիկացի բժշկուհիի ուշադրութիւնից։ Միսիոնարները յայտարարել են հեղինակին թէ՝ իրենք անտրամադիր են հաւատալու այն զրպարտութիւններին որ կառավարութիւնն առհասարակ յայտարարում է Քիւրդերից առեւանգուած Հայ կիների բարքի նկատմամբ։ Միսիոնարների կարծիքով Հայկական բնաւորութեան ախուր պատկերներից գլխաւորն է այն արմատացեալ մատնութիւնը որ այս մի եւ նոյն ազգի անդամներն անում են իրար դէմ։

# ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ ՏՐԱՊԻԶՈՆԻ

Հայաստանի առաջին այցելութեան դէպքում Հ. Լինչի չուկէտն էր Տրապիզոն, ուր տեղից ապա ցամաքային ճանապարհով սկսաւ յառաջանալ դէպի Ռուսական հողը: Հետաքրքրաշարժ նկարագրութեամբ նա պատկերացնում է այդ հին մայրաքաղաքը ուր մանաւորապէս Հայ հասարակութեան կեանքի մէջ նշմարւում են Եւրոպական զարգացման եւ ժիր գործունէութեան նշաններ: Նա, միանգամայն, հակիրճ տեղեկագրութեամբ իւր ընթերցողներին ծանօթացնում է միջնադարեան «Տրապիզոնի Կայսրութեան» հետ, որի մասին շատ քիչ բան յայտնի է նոյն իսկ Բիւզանդադական պատմութեան քաջահմուտ մատենագիրներին:

Մի եւ նոյն տարին եւ մի եւ նոյն ամսին որ Լատինացիները տիրացան Կ. Պոլսին եւ կայսերական մայրաքաղաքի ազնուականները փախան դէպի Փոքր Ասիա (Ապրիլ 1304), Կոմնենոսի նշանաւոր գերդաստանի երկու թարմ շառաւիղները Վրացի վարձկան զօրքերի գլուխն անցած երեւեցան Տրապիզոնի պարիսպների տակ: Այս երիտասարդ իշխանները թոռներն էին Անդրոնիկոս Կոմնենոս կայսեր (1182–1185) որ շատ ճիգ թափեց մաքրելու Բիւզանդական տէրութեան գաւառային ապականուած վարչութիւնը եւ որ առանց կարենալ հասնելու իւր նպատակին ոչնչացաւ մի ներքին յեղափոխութեան մէջ: Որոշ յայտնի չէ թէ ի՞նչ էր արդեօք Տրապիզոնի քաղաքական վիճակը Անդրոնիկոսի սպանման եւ Լատինացիների Բիւզան-

դական գրաւման միջոցին։ Բայց ենթադրում է թէ Յունական այս քաղաքը բաւական ծանր նեղութեան մէջ լինելու էր սահմանակից Վրացի թագաւորութեան ձեռքից ճիշտ այն ժամանակ երբ վերոյիշեալ երկու արքայազունները երեւեցան այդ կողմերում։ Նոցա անուններն էին Ալեքսիոս եւ Դաւիթ եւ իրենց նոր աշխարհակալութեան ձեռնարկի մէջ աջակից ունէին իրենց Թամար խորթ հօրաքոյրը որ ազգաւ Վրացի էր։

Մի կողմանէ, Վրաց պարբերական ճնշումներից եւ միւս կողմանէ, Կ. Պոլսի նեխած գերիշխանութիւնից ազատուելու հեռանկարը սիրտ տուաւ քաղաքացիներին գրկաբաց դիմաւորելու վերանորոգիչ կայսեր թոռների գալուստը։ Ալեքսիոս Կոմնենոս ընդունուեցաւ իբրեւ Տէր Տրապիզոնի. նորա յաջողութիւնների համբաւը շուտով տարածուեցաւ ամեն կողմ, եւ Կ. Պոլսից փախստական բազմաթիւ ազնուականներ սկսան գալ ապաստան գտնելու նորա յաղթական դրօշակի ներքեւ։ Ուրիշ փախստական ազնուականները հաւաքուեցան Թէոդոր Լասկարիսի շուրջը Բիւթանիայում, եւ այսպէս երկու ախոյեան Յոյն եւ Հռոմէական պետութիւններ հաստատուեցան Ասիական հողի վրայ, մէկը Նիկիայում իսկ միւսը Տրապիզոնում։ Լասկարիսի յաջորդները իրենց հայրենասիրութեան ակնարկը սեւեռած պահեցին Կ. Պոլսի վրայ մինչեւ որ մի շարք պատերազմներից յետոյ վերջապէս յաջողեցան առնել իրենց նախնիքների մայրաքաղաքը Լատին Բարոնների ձեռքից 1261ին։ Համեմատաբար շատ աւելի նուազ փառաւոր բազդ էր վերապահուած Ալեքսիոս Կոմնենոսի շառաւիղներին, այնու ամենայնիւ Սեւ Ծովի այս փոքրիկ կայսրութիւնն ութ տարիով աւելի երկայն կեանք ունեցաւ քան վերականգնեալ Բիւզանդական կայսրու-

թիւնը եւ եօթանասուն հինգ տարիով աւելի քան Յունական ներսի քաղաքների անկումը Սուլթան Բայազէդի աշխարհակալութեան ներքեւ 1390ին։ Ալեքսիոս Կոմնենոսի յաջորդները այնքան ճարպիկ գտնուեցան որ ամբողջ երկու եւ կէս դար շարունակ ծովափի եւ ներքին ցամաքի միջեւ բարձրացող լեռնային պատնէշների ետեւից կարողացան դէմ դնել Մահմեդական աշխարհակալութեան փոթորիկներին։ Երբեմն իբր հարկատու արեւելեան պետութեան երբեմն անկախ կացութեան մէջ, նոքա թագաւորեցին Տրապիզոնի եւ երկկողմեան ծովեզրի մի նեղ տարածութեան վրայ։ Նոցա իշխանութեան տակն էր ընկնում մինչեւ անգամ Խրիմի մէկ մասը ուրտեղի տուրքերը բերում էին ծովի մի կողմից միւսը կայսերական ցռկանաւով։

Տրապիզոնի այս մանր երկրակալները հետզհետէ այնչափ գոռոզացան իրենց «Մեծն Կոմնենեան», «Կայսր Հռոմայեցոց», կամ «Տէր համայն Անատոլիայի եւ Վրաստանի եւ Անդրծովեան» մեծաշուք տիտղոսներով որ երկասիրեցին մասնաւոր ծիսական արարողութիւններ, որոց միջոցաւ իրականութեան երեւոյթ էին տալիս իրենց չունեցած իշխանութեանը։ Առանց խղճահարելու կարելի է դասել նրանց իբր Բիւզանդական կայսրութեան բեկորների վերջին մրուրը, այն պատճառաւ որ նոքա ոչ միայն չբարեկարգեցին Կ. Պոլսոյ կայսրներից ծագումն առած գաւառային ապականուած դրութիւնը այլ աստիճանաբար դարձան իրենց փչացած նախահայրերի արժանաւոր ժառանգներ։

Այսու ամենայնիւ, նոցա մայրաքաղաքը տակաւին կարեւոր մի կէտ էր առեւտրական գործունէութեան համար։ Նամանաւանդ երբ Միջերկրականի կողմից Փոքր Ասիոյ ճանապարհները բոլորովին անգործածելի դարձան այն կողմերի յարաճուն անիշխանութեան

պատճառաւ Տրապիզոնը եղաւ առեւտրական հանգոյց Եւրոպայի եւ հեռաւոր Ասիոյ միջեւ, եւ ապրանքները սկսան փոխադրուել Հայաստանի լեռնադաշտերի նուազ վտանգաւոր ճանապարհներով։ Այս վաճառականութիւնը մեծ օգնութեամբ յառաջ էր տարւում Ջենովացիների ձեռքով Խտայից դէպի Պարսկաստան եւ Հնդկաստան մինչեւ որ եւ մեծ Կոմնենոսները Իտալացի վաճառականները եւ ժամանակակից քաղաքակրթութեան կարգ ու սարքերն հիմնովին խորտակուեցան Սուլթան Մուհամմէդ Բ. ի աշխարհակալութեան աւերող մրրիկի ներքեւ (1451—81)։ Տրապիզոնի բերդը յանձնուեցաւ Ենիչերիներին, եւ կայսերական պալատը մի փաշայի։ Իսկ կայսրը մերժելով ուրանալ Քրիստոնէական կրօնը ինք եւ ուրիշ իշխաններ սպանուեցան Կ. Պոլսի մէջ, եւ նոցա դիակները պարսպից դուրս ձգուեցան շուների առջեւ։

Տանայի եւ Կաֆֆայի, կամ այժմեան Թէոդոսիայի գրաւմամբ, Ջենովացիք միանգամայն կորցրին իրենց հիւսիսակողմեան ամրոցներն ու առեւտրական կենտրոնները. եւ, այսպէս, 1475ին Արեւմտեան քաղաքակրթութեան ներգործութիւնը իսպառ ոչնչացաւ Սեւ Ծովի երեսից։ Եւրոպական նաւերի մուտքը խափանուեցաւ։ Ուր առեւտուրը վտարուեցաւ, ետեւից եկաւ բարբարոսութիւն որն որ երեք հարիւր տարի չարունակ իւր քայքայիչ թեւերը տարածուած պահեց այս գեղեցիկ ափերի վրայ։

1829ին Ադրիանուպոլսի դաշնագրի զօրութեամբ քաղաքակրթութեան դուռները բացուեցան Սեւ Ծովի առջեւ, եւ 1836ին առաջին շոգենաւը նաւարկեց նորա ջրերի մէջ։

# ԼԻՆՁԻ ԱՐՄԷՆԻԱՆ

## ԳԻՏԱԿԱՆ ԵՒ ՔՆՆԱԲԱՆԱԿԱՆ

## ԴԱՏԱՍՏԱՆԻ ԱՌԱՋ

Հրատարակիչների վկայութեամբ ամենագործնական հետաքրքրուողներն եղած են Ամերիկացիք, իսկ ամենաանգործնական հետաքրքրուողներն են ցարդ Հայերը որոց հայրենիքին եւ ազգային վիճակին նուիրուած է այս մեծ աշխատասիրութիւնը սակայն։ Անշուշտ տարօրինակ երեւոյթ է այս բայց ոչ զարմանալի երբ ի նկատ առնենք թէ, իբր իսկական մարդիկ պարտաճանաչութիւնից եւ գործից աւելի ցուցամոլութեամբ եւ փքուն բարոյախօսութեամբ ենք խաբում մենք մեզի, եւ մեր իւրաքանչիւր փոքր արարքի մէջ յաւակնում ենք տեսնել անձնական մեծ զոհողութիւններ կամ կուսակցական պանծալի դիւցազնութիւններ։

Գրքի մուտքը ազատ է Ռուսաստան, բնականաբար, եւ այլուրէք ի բաց առեալ Թուրքիա, սակայն Հայ գնողների թիւը շատ աննշան է մինչեւ այսօր։ Եւ ոչ իսկ հրաշալի քարտէզի համար դիմումներ են եղել, չնայելով այն որ ծախւում է առանձինն եւ դիւրամատչելի է ամեն անհատի նիւթական կարողութեանը։

Այս անտարբերութիւնը եւս աւելի դատապարտելի է թւում այն զօրաւոր պատճառաւ որ գիրքը ըստ ինք-

եան այնպիսի գեղեցիկ ազգային յիշատակարան է որ եթէ նուիրուած լինէր նոյն իսկ Անգլիոյ կամ Ֆրանսայի կամ Գերմանիոյ պէս երկիրներին, սոյն իւրաքանչիւրի ժողովուրդն անգամ արդարացի պարծանք պիտի զգար ազգային այս տեսակ մի գրականական կոթողի արժանանալուն համար։

Թէ յիրաւի Լինչի «Արմենիա» Հայ տարրի համար ցեղային պարծանաց մի նախանձելի յիշատակարան է, այդ կարելի է ըմբռնել այն միահամուռ վկայութիւններից որ արտայայտուեցան Մեծն Բրիտանիոյ, Ամերիկայի եւ այլ տեղերի բոլոր թերթերի եւ հանդէսների մէջ։ Ամեն կողմերից միայն վերին աստիճանի դրուատիքներով ողջունուեցաւ նորա երեւումը։ Փոքր Ասիոյ պատմութեան մասին գերագոյն հեղինակաւոր գիտնականը համարում է Պրոֆէսոր Ռամզի, բայց ինչպէս նա, նոյնպէս եւ հռչակաւոր արեւելագէտ Պրոֆ. Վամբերի եւ Պրոֆ. Կոնիբեր անսովոր եւ մէկը միւսից գերազանց ներբողականներ նուիրեցին Արմենիայի հեղինակի գրական տաղանդին։

## ՊՐՕՖ. Վ. Մ. ՌԱՄԶԻ

Դոկտոր Քաղաքային Իրաւագիտութեան, Դոկտոր Օրինաց, նախկին Պրոֆեսոր դասական հնախօսութեան Օքսֆորդի համալսարանում և այժմ Պրոֆեսոր Աբերդինի համալսարանում։ Խիստ շատ անգամներ է ճանապարհորդել դէպի Փոքր Ասիա և Հայաստան, ունի հնագիտական և պատմագրական ուսումնասիրութիւններ այդ առթիւ։ Իւր վերջին հրատարակութիւններից մէկն է «Իմ տպաւորութիւնը Թուրքիոյ մասին տասն և երկու տարուայ ատուանդականութեան ընթացքում»։

Ստանդարդ այս գրքի երեւումը յայտարարելիս ասում է․ «Պրօֆեսոր Ռամզի կատարեալ իրաւունք ունի խօսելու այսպիսի մի առարկայի վրայ, որովհետեւ նա բարձրագոյն հեղինականութիւնն է այն ամենի մասին որ վերաբերում է Փոքր Ասիոյ վաղեմի քաղաքական եւ ընկերային պատմութեանը»։

Ահա, այսպիսի բարձրագոյն հեղինակութիւնն է որ յետագայ նախադասութեամբ է սկսում իւր կարծիքի արտայայտութիւնը Լինչի «Արմենիայի» մասին.—

«Այս երկու վեհաշուք եւ գեղազարդ հատորները ձեւացնում են աշխատասիրութեան, գիտութեան, եւ ճարտարութեան ըստ ամենայնի նշանաւոր մի յիշատակարան։ Աչքածել նոցա վրայ նոցա պարունակութիւնների մասին գաղափար տալու մտքով՝ բոլորովին անկարելի է մեր կոպարի մէջ։ Դեռ աւելի նուազ կարելի պիտի լինէր մանաւանդ «Բուֆմանի» մի երկու երեսներում սեղմել ո եւ իցէ բանաւոր քննադատութիւն։ Միակ կարելի բանն է ընդհանուր խօսքով բացատրել այն տպաւորութիւնը որ նոքա գործում են ընթերցողի վրայ։ Եթէ տպաւորութիւնը եղած լինէր անյաջող ես ինձ արդարացի պիտի չզգայի հրապարակ հանելու այն, որովհետեւ ամենավերին աստիճանի անարդար մի վարմունք եղած պիտի լինէր առանց յատուկ փաստերի յայտարարել աննպաստ կարծիք մի այսպիսի գործի մասին՝ որ չաղախուած է մտաւոր աշխատանքի ո՛րքան յորդառատ քրտինքով, եւ որի մէջ պարփակուած են ո՛րքան շատ եւ այլազան իրողութիւններ։ Բայց գրքի ազդած տպաւորութիւնը ըստ ամենայնի նպաստաւոր է, արդ, երբ զգում ես թէ կարող ես ուղղամտօրէն գովել, կարող ես վլուատիքդ

հրապարակել կարճառօտաբար առանց փաստաբանութեան մէջ մտնելու խնդրի այս եւ այն կէտերի նկատմամբ։

Հեղինակը (որ բոլորովին անծանօթ է ինձ) բացէ ի բաց յայտնի է թէ շատ բան գիտէ Ասիական Թուրքիոյ մասին՝ շատ աւելի քան ինչ ես երեւակայում էի թէ կարելի էր ստանալ այն չորս ճանապարհորդութեամբ որ նա յիշատակում է արած լինել միջագետքում, Հայաստանում, եւ Պարսկաստանում 1889 եւ 1898 ի միջեւ։ Նա չէ խօսում պարզապէս իբր մի զբօսաշրջիկ որը կարող էր մի քանի տարիների ճանապարհորդութեամբ եւ ուսումնասիրութեամբ փոքր ինչ տեղեկութիւն ստանալ երկրի մասին, այլ իբր մի հեղինակ որ դիւրաւ եւ առանց ճիգի բացատրում է իւր ասելիքը բծախնդիր ճշդութեամբ։ Այս տեսակի կարողութիւն ցոյց տուող հեղինակը պէտք է որ իւր մտքի մէջ անպատճառ հաւաքած, մշակած, եւ իւրացրած լինի գիտութեան մի ահագին պաշար։

Մերթ ընդ մերթ խորշել եմ աչքից անց կացնելու Թուրքիայի ուղեւորութիւնն նկարագրող գրքեր, պարզապէս չկամենալով յանձն առնել մատնանիշ անելու անախորժ այն պարտականութիւնն թէ ճանապարհորդի իբրեւ ճշգրիտ ըմբռնած երեւոյթների հաւատարիմ նկարագրութիւնը ոչ այլ ինչ է բայց եթէ մի խեղաթիւրուած նկարագրութիւն՝ լի սխալներով եւ թիւրիմացութիւններով։ Պարոն Լինչի հատորներում մարդու սիրտ չէ վրդովւում այսպիսի անհաճոյ թերութիւններից։ Ինչ որ նա գիտէ-գիտէ անթերի հասկացողութեամբ, ինչ որ նա դիտում է եւ արձանագրում-դիտում եւ արձանագրում է անսխալ ճշգրտութեամբ։ Այն հարցերն եւ խորհրդածութիւնները որ ծագում են նորա մտքի մէջ եւ արտացոլւում են նորա գրչի տակ իւր ճանապարհորդական նկարագրութիւն-

ները անելիս, բուն նպատակին խփող ճշգրիտ հարցերը եւ պատշաճաւոր խորհրդածութիւններն են։ Նա հասկանում է ո՛ր բանի վրայ պարտի սեւեռել իր ուշադրութիւնը եւ ո՛րն է որի վրայ նայելն իսկ չարժէ։ Գուցէ գիրքը իր լրութեան պատճառաւ այնչափ էլ հետաքրքրաշարժ չթուի Արեւմուտքի սովորական ընթերցողին։ Պէտք չունէք խիստ շատ բան գիտենալ մի երկրի մասին եթէ ուզում էք ամբոխը հետաքրքրել նրանով։ Պէտք է որ ճանչէք մի միայն աչքի զարնող երեւոյթները, եւ բուռն հետաքրքրութեամբ եւ ուժգին կոկոզաբանութեամբ նկարագրէք նրանցից նամանաւանդ այնպիսի մէկ հատը որ օտար եւ նորանշան թուի ամբոխին։ Պարոն Լինչ, սակայն, երկրի ժողովուրդի պատկերի վրայ ներդաշնակօրէն դնում է ամեն մի բանի նկարագրութիւնը իր յատուկ տեղում եւ իր յատուկ չափով։ Նորա գիրքը կարելի է կարդալ կրկին եւ կրկին անգամներ, եւ աւելի խրատական ու աւելի շահեկան էք գտնում ամեն մի անգամ որ վերստին բաց էք անում կարդալու։ Որչափ շատ ուսումնասիրէք այս գիրքը այնչափ աւելի ախորժ պիտի զգաք նրանից։

Նորա գրքի մէջ էջ էջի ետեւից յառաջ են գալիս խնդիրներ որոց առթիւ ընթերցողը փափաք է զգում հարցումներ ուղղելու եւ դիտողութիւններ անելու։ Մտաւորական ճշմարիտ զարգացումն ազդող այս գրքի ամենաերեւելի յատկանիշներից մէկն այն է որ աւելի շատ խնդիրներ է արծարծում քան պատասխաններ տալիս, ուստի ընթերցողը յաճախ կանգ է առնում, սկսում է խորհրդածել եւ աշխատում է հետապնդել այլ եւ այլ հարցերի ետեւից որոց ծայրերը գնում թաղւում են անցեալի մթութեան մէջ։

Հրաժարւում եմ շատ բան ասելուց գրքի քաղա-

քական տեսութեան վրայ. այս նկատմամբ լիովին համակիր եմ հեղինակի կարծիքների հետ։ Պարոն Լինչ ճանաչում է եւ ցոյց է տալիս, յստակօրէն եւ ազդուապէս, հայկական նկարագրի յոռի յատկութիւնները, բայց կարողանում է նաեւ համակրական թոյլատուութիւն անել այն երկար դարերի համար որոց ընթացքում Հայի համար մահացու ոճիր էր նկատուած ունենալ բարոյական ազատութեան ո եւ է նշոյլ։ Երբ նորա անձնական ապահովութեան միակ ճարը կայանում էր դրրամ ունենալու մէջ, եւ երբ դրամը դժուար թէ կարելի լինէր ձեռք բերել առանց անուղղակի միջոցների եւ կեղծիքի անյագութեան։ Երբեմն, գուցէ, նա չափից աւելի թոյլատուութիւն-խաքըր-է անում, սակայն չեմ կարող մեղադրել նորան այդ բանի համար։

Կիլիկիոյ Հայկական թագաւորութեան (1080-1375 Ց. Ք.) կամ «փոքր Հայաստան» ի մասին նորա կատարած շատ ակնարկութեան մէջ, կարճ կապելու փափաքից ներմուծուել է մի սխալ տեղեկութիւն· Կիլիկիոյ Հայերը, «Խաչակիրների բարեկամները վերջի վերջոյ յաղթահար եղան թուրքերից որոնք ջնջեցին Ռուբինեանց հարստութիւնը»։ Եգիպտոսի Մէմլուք Սուլթանները էին որ կործանեցին Կիլիկիոյ թագաւորութիւնը, եւ որ իրենց կարգին արտաքսուեցան եւ նուաճուեցան Թուրքերից։ Պարոն Լինչի ծրագրի մէջ չէ մտնում աւելի քան մի պարբերութիւն նուիրել այս նշանաւոր Հայ թագաւորութեան, որի պատմութեան մէջ կան միջադէպքեր գրեթէ հերոսական կոչուելու արժանի։ Բայց Հայ ազգի նկարագրութիւնը չէ կարող լիակատար լինել առանց հաշուի առնելու Հայկական Կիլիկիան ուր ի յայտ են եկել այդ ցեղի ամենալաւ յատկութիւնները, եւ, ուր միեւնոյն ժամանակ յստակօրէն ապացուցուած է թէ (միւս արեւելեան Քրիստոնեանե-

րի պէս ըստ երեւոյթին) նոքա զուրկ են մի ինքնաբաւ՝ «ձեռնհաս» ազգի համար անհրաժեշտ մէկ քանի հիմնական յատկանիշներից, մասնաւորապէս միաբանական զօրութիւնից արտաքին թշնամիի հանդէպ եւ գործնական կարողութիւնից իմաստուն խրատախոհութեան համար ինչ որ անհրաժեշտաբար պէտք է ուրիշ ժողովուրդների հետ հաստատուն դաշնակցութիւն կազմելու առթիւ: Իրենց բանակցութիւնների մէջ նոքա միշտ պատրաստական են ընդունելու, բայց հազիւ թէ յօժարամիտ տալու: Միւս կողմանէ ազգի մահու եւ կենաց րոպէներում փոխանակ միաբան ուժով դուրս գալու արտաքին թշնամիին դէմ, նոքա մանր վէճերով երկպառակութիւն են հանում իրար մէջ եւ բոլորովին քայքայում իրենց ներքին միաբանական զօրութիւնը:

Պարոն Լինչ իւր գործի նախաբանի մէջ յուզում է մի հետաքրքրական խնդիր — «Մարդ ինչո՞ւ է գիրք գրում» եւ, ես աւելացնում եմ, մանաւանդ այնպիսի գիրք որ ներփակում է ա՛յնչափ տաժանելի աշխատանք պատրաստելու եւ յօրինելու համար, եւ որի մէջ համառութիւնը իւր ամենաերեւելի յատկանիշն է՝ ինչպէս այս գիրքը: Բացի այդ, սա այն տեսակի գրքերից է որից Հեղինակը ոչ միայն նիւթական շահ չէ սպասում, այլ մեծապէս զոհում է իւր նիւթական շահից առանց փոխարէնը վերստանալու ակնկալութեան ընկերային դասակարգերից եւ խնդրին անհետաքրքիր հասարակութիւնից: Իսկ միւս կողմանէ բծախնդրութեան շանթը կարող է միշտ պատրաստ լինել հարուած իջեցնել յաւակնելու նորա մտաւորական մեծ շէնքին վրայ: Եւ այդպիսի շանթերը ընդհանրապէս գալիս են ուսումնաւարտ ճարպիկ երիտասարդ քննադատներից որոնք, երկրորդական եւ տասներորդական անգամ փոխանցուած մտքերի մի հաւաքածոյով սպառազինուած բայց

հայրենիքի լեզուով եւ չողչողուն ոճով օժտուած, դատապարտութեան վճիռ են արձակում այս կարգի գրքերի եւ նոցա սեսութիւնների նկատմամբ, գուցէ, առանց ամենեւին իրապէս կարդացած լինելու այդ գրքերը։ Շողչողուն եւ հետաքրքրաչարժ լինել ո եւ է սրամիտ քննադատութեան մէջ անհամեմատ աւելի դիւրին է քան ուշի ուշով յառաջ քայլել տարիների համբերատար աշխատութեան եւ մտածութեան մէջից, որոնք անպատճառ պէտք են կարենալ գրելու համար ուղիղ եւ ձեռնհաս քննադատութիւն մի իրաւամբ մեծ գրքի մասին ինչպէս է Գարոն Լինչի գիրքը։

Ես, իմ մասին, միայն մէկ հատ քննադատութիւն ունիմ անելիք նորա գրքի վրայ. այն է ցանկանում եմ որ նա գրէր մի ուրիշ նոր գիրք, եւ այդ նորը նուիրէր այն չհետազօտուած կամ կիսովին հետազօտուած կողմերին որոնք ընկնում են դէպի արեւմուտք կամ հարաւ-արեւմուտք այն երկրից որին նա նուիրել է յաւերժական յիշատակաց արժանի սոյն գործը։ Կապադովկիա, Լիկաւոնիա, Գաղատիա, Կիլիկիա, Փռիւգիա, ներկայացնում են հրապուրիչ հանելուկների մի չարք։ Նոցա լուծման ապացոյցները արագօրէն ոչնչանում են ճիշտ այնպիսի մի ժամանակ երբ հետազօտութեան գործը հազիւ հազ սկսած է ձեռք առնուել. արդէն, եղած հետազօտութիւններն էլ տեղի են ունեցել մասնակի եւ պատահաբար այլ ոչ կանխորոշ գիտական նպատակաւ։ Ես շատ ուրախ պիտի լինեմ եթէ կենտրոնական Փոքր Ասիան ձգէր Գարոն Լինչի շուրջը իւր կախարդանաց ցանցը, եւ ստիպէր նորան ձեռնարկելու մի նոր հետազօտութիւն եւ գրելու մի նոր գիրք։ Այժմ մենք գանւում ենք ինչ ինչ լուսաբանիչ գիտերի հետքերի վրայ որոց յայտնութեամբն միայն կարող է վերստեղծուել այդ երկիրների վաղեմի պատմութիւնը, եւ

ես չգիտեմ ուրիշ մէկը որ այնպէս յարմար եւ ձեռըն-հաս լինէր այս յայտնութիւնը կատարելու ինչպէս է Պարոն Լինչ»։

## Ֆ. Կ. ԿՈՆԻԲԵՐ

Օքսֆորդի համալսարանի հայագէտ Պրօ-ֆեսորի անունը այնքան ընտանի է մեր ընթեր-ցող հասարակութեան որ հարկ չէ մնում դիմել Անգլիական աղբիւրներին ապացուցանելու համար նորա ձեռնհասութիւնը իբր քաջահմուտ Հայաստանի Պատմութեան։ Նա երկու անգամ ճանա-պարհորդել է դէպի Կովկաս և Էջմիածին՝ այս տե-ղի գրադարանի մէջ քննական ուսումնասիրութիւն-ներ անելու նպատակաւ, յատկապէս Մովսէս Խո-րենացիի պատմութեան մասին։ Այդ առթիւ, նա, բնականաբար, պատեհութիւն պիտի ունենար մօ-տից շփուելու Կովկասի Հայ հասարակութեան հետ և որոշ գաղափար կազմելու ժողովուրդի և երկրի վրայ։

Այս պայմանների տակ, Պրօֆ. Կոնիբեր ուրեմն լիովին կարող է Արմենիայի մասին կար-ծիք յայտնելու, թէ՛ իբր ականատես թէ՛ իբր մաս-նագէտ։ Մանչեստըր Գարդեանի մէջ նորա հրա-տարակած ընդարձակ տեսութիւնից յառաջ եմ բերում միայն գլխաւոր կէտերը.—

«Խիստ շատ ուղեւորական գրքեր են երեւան գալիս ներկայ դարում, անկատար տհաս, եւ լի վեր ի վերոյ դատողութիւններով հիմնուած տգիտու-թեան վրայ եւ յերիւրուած յափշտապ։ Այս արատնե-րից եւ ոչ մէկն է նսեմացնում Պարոն Լինչի գործը։ Իւր նկարագրած երկրին նա առաջին անգամ այցելու-թիւն տուեց զինուորական տղակից Հ. Բ. Լինչ հա-

զարապետի հետ, եւ երկրորդ անգամ գիտուն երկրաբան Ֆ. Օսուալդի հետ։ Պարսկաստանի եւ Միջագետքի իւր նախնթաց ուղեւորութիւնների մէջ նա արդէն մարզել էր իւր աչքը արեւելեան տեսարաններին եւ խելամուտ եղել թէ ինչպէս պէտք է դիտել։ Հետեւանքն է մի գործ որ առանց չափազանցութեան կարող է համարուել արժանի յաւերժական յիշատակաց։

Բացի Կիլիկիայից, ուր Սիսում ծաղկեցաւ Ռուբինեանց հարստութեան միջնադարեան թագաւորութիւնը, չկայ մի վայր, մի անկիւն որ հռչակաւոր եղած լինի Հայ ազգի պատմութեան մէջ եւ նա անձամբ ման գալով զգուշաբար քննած չլինի նկարագրելու համար այս երկու հատորներում, միշտ ճշդիւ եւ մանրակրկիտ, յաճախ ճարտասութեան վերամբարձող գրական կարողութեամբ։ Սովորական ուղեւորը, մանաւանդ Հայաստանի պէս անմատչելի լեռնապաստաններում, թերանում է արտադրելու օգտակար մի հեղինակութիւն, քանի որ նախ եւ առաջ չէ պատրաստել եւ համբարել իւր միտքը այցելելիք երկրի պատմութեան, տեղագրութեան, եւ ֆիզիքական յատկանիշերի խնամոտ ուսումնասիրութեամբը։ Պարոն Լինչ ինքն իրեն նախապատրաստել է մեծ շրջահայեցութեամբ, եւ իւր առաջին հատորի մէջ նա սքանչելապէս պատմում է Տրապիզոնի կայսրութեան, Հայաստանի քրիստոնէութեան, Անիի, եւ Վանայ թագաւորութեան պատմութիւնները։ Նա ձեռնհաս էր ուրեմն ճանաչելու եւ բացատրութիւն տալու եկեղեցիների, բերդերի, ջրմուղների, եւ այլ աւերակների մասին որոնք այնքան առատութեամբ համասփռուած են Թուրքական եւ Ռուսական Հայաստանի երեսին։ Տասներորդ եւ տասնմէկերորդ դարերի ընտիր ճարտարապետութիւնը դուրս է կանգնում ընթերցողի աչքի հանդէպ բազմաթիւ նրբակազմ եւ երփ-

նախայլ լուսանկարների մէջից: Եւս աւելի հիանալի են այս պատկերները որովհետեւ կրում են իսկական հարազատ նմանութիւն: Նորա Աղթամարայ վանքի գըծագրութիւնները նոր յայտնութիւններ պիտի լինեն ճարտարապետութեան խիստ շատ ուսումնասիրողների համար: «Դուցէ պատահի ասում է Պարոն Լինչ, որ այս եկեղեցիի արտաքինը երեւան հանէ արուեստի ուսումնասիրութեան տեսակէտից բարձր կարեւորութիւն ունեցող միախառնուած տարրեր: Եկեղեցիի ձեւը, երկրաչափական զարդանկարները կրում են Բիւզանդական յատկանիշ.. Քանդակները.. գուցէ կազմում լինեն մի կարեւոր հանգոյց հին Ասորիների արուեստի եւ Արաբների ու Բիւզանդացիների արուեստին միջեւ:

Հայ ցեղի լիուլի կէսը ապրում է Ռուս իշխանութեան ներքեւ՝ Արարատի, Ալեքսանդրօպոլի, եւ Ղարաբաղի մեծ դաշտերում կամ լեռնակողերում: Պարոն Լինչ մի պատուամիտ Անգլիացի է եւ շատ լաւ է հասկանում իւր հայրենակիցների պատասխանատուութիւնները իբր վարիչներ արեւելեան մի լայնածաւալ կայսրութեան, հետեւաբար հետաքրքրաշարժ է հետամուտ լինել իմանալու թէ ինչ են արդեօք նորա կազմած տպաւորութիւնները Ռուսաց մասին որոնք եւս մի նմանօրինակ դեր են կատարում Կովկասի մէջ: Նորա գիրքը բացւում է գովասանքով դէպի այն բարեփոխութիւններն որ Ռուսիա յառաջ է բերել Սեւ Ծովում: Մինչեւ նորա գալուստը այդ ծովի ջրերը լի էին ծովահէններով եւ գերեվաճառութեամբ: Ռուսները մաքրեցին այս ժանտախտից ոչ միայն բուն իսկ իւրենց, այլ նաեւ Թուրքիոյ ծովեզրեայ քաղաքները: Պարոն Լինչ վկայում է թէ իւր ճանապարհորդական ծրագրի դիւրացման համար նա մեծապէս պարտական է այն Ռուս բարձրագոյն

պաշտօնեաններին որոց հետ նա ծանօթութիւն ունեցաւ Կ. Պոլսում եւ Պետերբուրգում։ Ներկայ տողերի գրողը 1888 ին եւ 1890 ին գնաց մի եւ նոյն ճանապարհներով եւ այցելութիւն տուաւ մի եւ նոյն կենտրոններին որոնք կազմում են Պարոն Լինչի ուղեգիծը։ Ամենուրեք նա գտաւ նոյն հաճոյակատարութիւնը եւ հիւրասիրութիւնը բարձրագոյն պաշտօնեանների ձեռքից, մանաւորապէս, Բաթում, Թիֆլիս, Բաքու, Ալեքսանդրօպոլ եւ Վաղարշապատ։ Ռուս տարրը այս երկրում մի կողմանէ բաղկանում է պաշտօնեաններից եւ զինուորականներից, եւ միւս կողմանէ գեղջուկ գաղթականներից, մեծ մասամբ բաժանուածներ պետական Օրթոդոքս Եկեղեցիից։ Դոցա գիւղերը գտնւում են գլխաւոր ճանապարհների երկայնութեամբ։ Պարոն Լինչ ցաւ է յայտնում որ բնիկ գիւղացիները Վրացիները եւ Հայերը եւ Թաթարները, ամենեւին հետամուտ չեն լինում սովորել այդ գաղթականների օգտաւէտ կիրառութիւնները։ Եւ նորա դիտողութիւնը բոլորովին արդարացի է։ Այդ կողմերում ճանապարհորդողը շուտով կը նշմարէ թէ Ռուս գիւղացիները միայն գիտեն ինչպէս պէտք է պատրաստել չէնք շնորհք հաց եւ կարագ եւ պանիր, ինչպէս պէտք է շինել սայլ, ինչպէս դարմանել ձին կամ ընտելացնել պատուական շուները որոցմով այնքան լիառատ է այս երկիրը, եւ որոնք յամենայն դէպս միշտ պատրաստ են ողջ ողջ ուտելու օտարականին։ Հայերը չեն պատրաստում քաղցրաւենի, թէպէտ ծիրան եւ ուրիշ ընտիր պտուղներ աճում են ահագին առատութեամբ։ Նոքա չեն տնկում ծառեր, թէպէտ չկայ մի բան որ դրանից աւելի կարեւոր լինի, եւ նոքա բնաւ երբեք սովորած չեն պատրաստելու գինի որը կարենար մէկ տարիից աւելի դիմանալ, թէպէտ պարծենկոտու-

թիւն են ծախում թէ իրենց Արարատի շրջակայ երկիրը գինիի բուն հայրենիքն է։

Միւս կողմանէ, պէտք է սակայն ընդունել թէ բուն էական նիւթերի մէջ ուր այս ցեղը ցոյց է տալիս գովելի եռանդ լաւացնելու ինքն իրեն, նա աստիճանաբար իւր հանդէպ տեսել է բարձրացած դժնդակ խոչընդոտներ որոնք կասեցրել են իւր յառաջդիմական ձգտումների ընթացքը, եւ ի դերեւ հանել իւր ակնկալութիւնները, . . .։

Առաջին հատորի 240 երորդ երեսում մեր մատենագիրը իրաւամբ է դիտել տալիս թէ Հայերը աշխարհի վրայ ի տես եկած ամենայամառ Conservatistներն են։ Կիլիկիոյ վերջին ազգային թագաւորութեան քայքայումից եւ անկումից ի վեր (1375), Հայերի կրօնական պէտն է որ ընդհանուր ժողովուրդից մնում է ճանաչուած իբր վառարան եւ նշանաբան Հայ հայրենասիրութեան։ Նորա հեղինակութիւնը, Հռոմայ պապի հեղինակութեան պէս, ընդհանրական է եւ անց կենում ամեն սահմաններից դուրս։ Հայերը, ուր եւ գտնուելու լինեն, ապրում են ի վերջոյ նորա իրաւասութեան տակ բոլոր կրօնական նիւթերի մէջ, կուզէ լինեն Մանչեստըր կամ Մարսիլիա, Լոնդոն կամ Ամստերդամ, Պետերբուրգ կամ Շանգհայ, Միւնիխ կամ Նիւ-Եորք։ Բուն իսկ Կ. Պոլսի եւ Երուսաղեմի Պատրիարքները հաւատքի եւ բարոյականի հարցերի մէջ նորա ծառաներն են։ Նորա ընդհանրական դերի այս կարեւորութիւնն էր որ մղումն տուաւ Ռուսներին յափշտակելու Էջմիածինը Պարսիկ Շահերի ձեռքից։

Մի քանի տասնեակ տարիներ Հայերը խրախուսւում էին կառուցանելու եւ հաստատելու երկսեռ դպրոցներ եւ դպրանոցներ։ Տակաւ առ տակաւ Ռուսները ըս-

Թափեցան նշմարելով թէ Հայերը, որքան որ հրախտագէտ էին Ռուս կառավարութեանը կեանքի եւ ստացուածքի առաւել ապահովութեան համար՝ իրենց Թուրքահայ հայրենակիցների վիճակի բաղդատմամբ, միւս կողմանէ սակայն սկսած էին բոլորովին տոգորուել ազգային վաղեմի փառաց երազներով եւ անձկալից սրտով ձկտում էին վերակենդանութիւն տալ այդ երազներին։ Առ այս Ռուս տէրութեան պատասխանը եղաւ դուրս քշել Հայերին տեղային կառավարական պաշտօններից նոցա փոխարէն զետեղելով երկրորդական եւ չորրորդական կարգի ռուս աստիճանաւորներ, եւ ճնշել Հայ լեզուն գլխովին սահմանափակելով ազգային ուսումնարանների իրաւասութիւնը։ Իմ անձնական դիտողութիւններից կարող եմ վկայել թէ Ռուսները դրանով պարզապէս վնաս են բերել բուն իսկ իրենց սեփական նպատակակէտին։

... Պարոն Լինչ մեծ ուշադրութիւն է ընծայել երկրի աշխարհագրութեանը, եւ տալիս է մեզ մի քարտէզ անհամեմատ գերազանց քան բոլոր նախկին քարտէզները։ Լեռնային շղթաներ, գետային սիստեմներ, ճամբաների գիծեր, գիւղեր, եւ քաղաքներ նըկարուած են նորա վրայ մեծ յստակութեամբ եւ ամենահնարաւոր ճշտութեամբ ...։ Բազմաթիւ յոյժ գեղեցիկ նմանաձոյլ պատկերների արտադրութեամբ Պարոն Լինչ մեզ տալիս է կարողութիւն երեւակայելու Հայաստանի վսեմ սարաւանդի տեսարանը, եւ իւրաքանչիւր հատորի եզրակացուցիչ գլուխները, ուր նա յառաջ է բերում վիճակագրութիւնները եւ քննում Ռուսական եւ Թրքական Հայաստանի քաղաքականութիւնը, արժանի են կարեւոր ուշադրութեան ամէն նոցա համար որոնք պէտք ունեն ողջամիտ կարծիք կազմելու այս ցեղի ապագայի վերաբերմամբ։ Թէ նոքա ու-

նեն ապագայ իրենց առաջին, եւ, եթէ միայն համբերող լինեն պիտի ունենան փայլուն եւ Ասիոյ համար օրինակելի ապագայ — այդ Պարոն Լինչի ակնարկն եւ խորին համոզումն է։ Ով որ վերլուծօրէն ծանօթ է Հայաստանի անցեալ եւ ներկայ պատմութեան եւ դըրականութեան հետ չպիտի երկմտի հաստատելու նորա կարծիքը։ Բայց Հայ հայրենասէրների անմիջական նշանակէտը պէտք է լինի յառաջ մղել իրենց ազգակիցների նիւթական բարւոքումը, ամեն բանից աւելի սովեցնել նոցա կառուցանել մարդավարի բնակարաններ, որոնք դժուար թէ աւելի լաւ են այսօր քան ինչ որ էին Քսենոփոնի «Արշաւանք» ի օրերում։

. . . . Ճանապարհորդների համար, քաղաքագէտների համար, Արեւելեան քրիստոնէութիւնն ուսումնասիրողների համար, եւ բոլոր բարեկամների համար մը այնպիսի ցեղի որ, դարաւոր չարչարանքներից յետոյ, դեռ եւս մնում է գլխաւոր ցեղը եւ (բաց ի Վրացիներից) միակ ցեղը Փոքր Ասիոյ արեւելքում ընդունակ վսեմ Քրիստոնէական կուլտուրային եւ քաղաքակրթութեան, եւ մի ցեղ ում, հետեւաբար, պատկանում է այդ երկիրների ապագան—սոցա ամենի համար պարոն Լինչ արտադրել է ամենաբարձր յարգ եւ հետաքրքրութիւն ունեցող մի գիրք։

## Մր. ԱԼԷՆ (Բոստոն–Միացեալ Նահանգներ.).—

Պարոն Հ, Ֆ. Բ. Լինչի Հայաստանի վրայ գըրած նոր աշխատութիւնը յատուկ ուշադրութեամբ ուսումնասիրելուց յետոյ պարտիմ խոստովանիլ թէ ես ինձ ապիկար եմ զգում մտնենալ նիւթին քննադատին սովորական տեսակէտից։ Կշռադատելու եւ քննադատելու կարողութիւններս խափանւում են այն գերագոյն հիացման առաջ որ ազդում է վրաս ինձ քաջածանօթ երկրի խնկաւէտ պատկերացումը. հեղի-

նակի զօրեղ գրչի տակ։ Այս հիացմանս տալիս եմ իւր արդար իրաւունքը, երբ մանաւանդ խնդիրը գալիս է բաղդատութեան։ Հայաստանի մասին մինչեւ այսօր լոյս տեսած գործերը եղել են միակողմանի եւ սահմանափակ, մինչ Պարոն Լինչի գործը ընդգրկում է Հայը եւ Հայաստանը ամբողջապէս եւ ներկայացնում է աշխատասիրուած նիւթը խորազննին գիտնականի տեսակէտից։ Երկրին եւ նորա չահերին վերաբերող կարեւոր կէտերի մէջ չատ աւելի որոշ է նկատւում հեղինակի երկարամեայ սեփական մանրակրկիտ հետազօտութեան դրօշմը։ Ասօք չկայ թէ այս բազմահմուտ երկասիրութիւնը անպայմանօրէն բարձր է կանգնում Հայաստանի մասին գրուած միւս բոլոր գործերից, բացի այս, իւր մէջ նա կրում է ամէն արժանիք դառնալու համար մշտապէս պատկառելի մի հեղինակութիւն։ Տարիներ կարող են անցնել բայց այս գործը պիտի մնայ մշտաթարմ աղբիւր վկայութեան։ Մեծահատոր է իւր ծաւալով, եւ համայնագիտական իւր ասպարէզով։ Մօտից շօշափում է նիւթերի մի ընդարձակ շղթայ ազգաբանական ծագումներից մինչեւ լճերի քիմիական բաղադրութիւնը։ Եւ սակայն, հարցերը այնպէս կանոնաւոր վարպետօրէն են չարայարուած որ պատմագրութեան թելը բնաւ խանգարուած չէ։

«Գրքի մէջ մի ուրիշ չնորք էլ կայ որ սաստիկ ուշադրութիւն է գրաւում, այդ չնորքը հեղինակի ինքնատիպ բացատրութեան եղանակի դերազանց հրապոյրն է։ Ըստ երեւոյթին, առանց ինքագէտ ճիգերի, նա բաց է անում ընթերցողի երեւակայութեան հանդէպ մի չարք տեսարաններ լի բանաստեղծական ոգւով։ Մի միայն Անգլիական լեզուի մի բարձր վարպետ եւ նուրբ զգացմունքի տէր մի

հեղինակ կարող էր առաջնորդել եւ օգնել մեզ տեսնելու Հայաստանի երկիրը այնպէս հարազատօրէն ինչպէս Պարոն Լինչն է տեսանելի դարձրել։ Նորա հատորները կարդալիս մեզ թւում է թէ.

Նորա հետ միասին կանգնում ենք Հայաստանի սառնամանի բարձունքների վերեւ, չրջապատուած լեռների փոթորկալից ծովով։

Նորա հետ միասին զգածւում ենք ի տես ամայի տեսարանի վեհութեան, մինչեւ որ զմայլումից յափշտակուած մեր աչքերը անզգալօրէն մթագնուա են արտասուքի մեղմահոս կաթիլներով։

Նորա հետ կողք կողքի քշում ենք մեր ձին ծաղիկներով զարդարուն հովիտների մէջից։

Զգում ենք մեր ոտքի սայթաքումը, երբ կարծես նորա ետեւից սպրդում ենք դէպի մի թըրչուառ ժողովուրդի գարշահոտ բնակարանների ներսը։

Նորա առաջնորդութեամբ, փորձում ենք հանել այնպիսի ուղեղների խորը ուր լոյս չէ թափանցել շատ դարերից ի վեր։

Նորա թելադրութիւնների ուժով, ճիգ ենք թափում խելք հասցնել արեւելեան անօրէնութեան անհասկանալի խնդիրներին։

Նորա հետ միասին, խառնւում ենք խուռն ամբոխի մէջ բազմամարդ քաղաքների աղմկալից բազարներում։

Նորա ընկերակցութեամբ, թւում է թէ հիւր ենք լինում զինւորական հրամանատարների եւ նահանգապետների մօտ։

Նորա քայլերի ետեւից մտնում ենք Հայաստանի արթնամիտ պատանիների կրթարանները։

Նորա անաչառ աչքերի միջով, տեսնում ենք իրական վիճակը մի ամբողջ ազգի որ երբեմն բար-

գուած էր եւ նախանձելի իսկ այժմս բռնութեան բռունցքներից գետին տապալուած գալարւում է խուլ հոգեվարքի մէջ ։

Դարձեալ, նորա ճարտար ղեկավարութեամբ կանգ ենք առնում դարեր առաջ քարուքանդ եղած քաղաքների աւերակների մէջ, մինչեւ որ մեր մտքի հանդէպ նոքա մի անգամ եւս վերստանում են իրենց երբեմնի ձեւերն ու ոգեւորութիւնները, եւ անցեալի ձայնը նորա մէջից հնչում է մեր ականջին ։

Երբ աւարտում ենք գրքի ընթերցանութիւնը, զգում ենք թէ հեղինակի ամեն մի ձիրքը, եւ նորա ուղեղի զօրութեան ամեն մի աղբիւրը ի գործ են ածուած արտադրելու ճիշդ եւ կատարեալ ծանօթագրութիւն, մի քանի տեսակէտներով, աշխարհի այս խիստ նշանաւոր երկրի մասին ։

Երեւոյթները ճշգօրէն մարմնաւորելու Լինչի այս տաղանդը անշուշտ հազուագիւտ մի ընդունակութիւն է մատենագիրների մէջ ։ Նորա անվրէպ յաջողութեան գաղտնիքը աւելի է պարզւում ինձ համար, երբ մտաբերում եմ նորա հետազօտութեան ձեւը ։ Հայաստանի երկարամեայ բնակութեանս ընթացքումն էր երբ նա այցելեց Վանայ քաղաքը 1893 ի աշնան ։ Նորա գալուստը անսովոր իրարանցումն յառաջ բերաւ ընդհանրապէս, իսկ տեղական պաշտօնեաները, մասնաւորապէս, գրեթէ մի տեսակ սարսափի մէջ էին ըզգում իրենք իրենց ։ Ցուցատետրը նա միշտ պատրաստ ունէր ձեռքին եւ յաճախ գրի էր առնում այլ եւ այլ դիտողութիւններ որ ծագում էին իւր մտքի մէջ ։ Հարցափորձում էր ամեն անհատին, բարձրին եւ խոնարհին, եւ նորա հարցումները այնպիսի հարցումներ էին որ տակնուվրայ էին անում արեւելեան ճահճացեալ ուղեղների նեխած երեւակայութիւնը ։ Անխոնջ

եռանդով անձնատուր էր եղած իւր նպատակակէտին, մի յատկութիւն որ սաստիկ ծանր էր գալիս Թուրքերին։ Ամենուրեք էր նա եւ շատ անգամ շատ նեղն էր լծում եւ բոլորովին ճարահատ անում կուսակալի ոստիկանական պաշտօնեաներին։ Բայց ամեն բանից աւելի, նա աներկիւղ էր եւ խիզախ, իսկ այս գիրքը պէտք է նկատել իբր մի էական պայման Թուրքիայում ճանապարհորդող գիտնականի համար, եթէ նա յիրաւի կամենում է անխարդախ տեղեկութիւններ ձեռք բերել։

Ընթերցող հասարակութիւնը, ուրեմն պարտական է Պարոն Լինչին մշտական երախտագիտութիւն նոր ծառայութիւնների համար որ մեծ լոյս է սփռում հին եւ մութ հարցերի վրայ, որ փարատում է սխալ ըմբռնումները յատկապէս Հայ ժողովուրդի վերաբերմամբ, եւ որ, մի խօսքով, ծանօթ տեղեկութեանց վրայ աւելացնում է փաստերի մի ճոխ եւ առատ պաշար։ Թեթեթեւսոլիկ ընթերցողն իսկ, իւր յարափոփոխ տրամադրութիւնն ոգեւորելու համար, անկարելի է որ չգտնէ իւր ուզածն այս երեսների մէջ որոնք լիառատ են առասպելաբանութեամբ, զրոյցներով, նկարագրութեամբ եւ պատմութեամբ։ Բայց Հայաստանի ներկայն եւ անցեալը ուսումնասիրողների համար, յատկապէս, այս հատորները ընդ միշտ պիտի մնան իբր արժանահաւատ եւ էական տեղեկութիւնների մի գանձարան։

Երբ խօսում ենք գրականութեան ցանկի վրայ աւելացած այս գանձի ընդհանուր յատկանիշների առթիւ, չպէտք է թերանանք մատնանիշ անելու թէ նորա արժէքը-իբր հաւատարիմ պատկեր բաղդատաբար մի հազուածանօթ երկրի-աւելի եւս է գնահատելի դառնում հեղինակի եզրակացութիւններով զանազան նիւթերի վերաբերմամբ, մանաւանդ այն քաղաքական հարցերի՝ ո-

րոնք հանդիպում են նորա անձնական դիտողութեան ներքեւ։ Թուրքիոյ քաղաքական խնդիրները ըստ երեւոյթին պատուհաս են դարձել աշխարհավարների եւ դիւանագէտների գլխին, հարիւր տարիից ի վեր։ Եւրոպայի կողմից ձեռք առնուած դարման տանող տեղերը եղել են ժամանակաւոր, խաբուսիկ եւ իրաւախոհական։ Այս ընթացքի պատասխանատուութիւնը հաւասարապէս ծանրանում է թէ Եւրոպայի եսականութեան եւ թէ՛ նորա աշխարհավարների տգիտութեան վրայ։ Համաշխարհաքաղաքային Կոստանդնուպոլիսը իսկական վայրը չէ ուսումնասիրելու համար Արեւելեան խնդիրք կամ Հայկական խնդիրը։ Թուրքիան, ուրիշ ամեն նիւթերի պէս, գիտնական հետազօտութեան համար հարկէ ուսումնասիրել ներսից եւ նոքա որ հետազօտում են պէտք է յատկապէս պատրաստուած լինեն իրենց նըպատակակէտի համար։ Բարձր ուսումնականութիւն, դիւանագիտական կրթութիւն, պատմագիտական լայն հմտութիւն՝ սոքա բոլորը էական պայմաններ են. բայց եթէ սոցա հետ կցուած չեն մտային հազուագիւտ բարեմասնութիւններ անաչառութեամբ եւ խորատեսութեամբ չաղախուած, այն ժամանակ վստահաբար կարող եմ յայտարարել թէ Թուրքիոյ սիրտ վրդովող առեղծուածների հետ գործ ունենալը բոլորովին պարապ աշխատանք պիտի լինի։ Արմենիայի հեղինակը յաւակնութիւններ չէ ծախում։ Նա չարունակաբար պահպանողական է իւր քաղաքական կարծիքները արտայայտելիս, սակայն ով ապրած է Թուրքիայում անկարելի է որ չաքանչանայ նորա հրաշալի ըմբռնողութեան վրայ եւ գոհունակութիւն չզգայ թէ ինչպէս պարոն Լինչ չնչտակլի՛ թափանցում է ներկայ մանուածապատ հարցերի խորը, թէ ինչպէս նա ամենայն ճշտութեամբ գտնում է արմատացեալ չարիքների բուն աղ-

բիւրը։ Իսկ նորա եզրակացութիւնների ողջամտութիւնը և թելադրութիւնների խորագիտութիւնը արժանի են ամեն գովասանքի։ Ուսումնականներն և քաղաքագէտները հաւաստապէս մեծ օգուտ պիտի քաղեն Հայոց խնդիրների մասին, եթէ ուշադրութեամբ ուսումնասիրեն այս փառաւոր գործը։

Նկարագրութիւններից ոմանք ստուգիւ արժանի են մասնաւոր նկատողութեան։ Նոյն իսկ դիպուածական ընթերցողը մի անսովոր տպաւորութիւն է ըղգում հեղինակի ճանապարհորդական նկարագրութիւնը կարդալուց։ Սովորական ուղևորը ի հանդէս պիտի բերէր ս և իցէ մի լեռ, գետ, կամ հովիտ պարզապէս մի նկարագեղ պէսպիսութիւն արտադրելու հաճոյքի համար։ Գիտնական աշխարհագիրը ամէն բան պիտի զոհէր իւր մասնագիտական մանրամասնութիւններին, բայց Արմենիայի հեղինակը սևեռում է ուշադրութիւն մէկ ծայրից միւսը, գեղարուեստօրէն ուրուագրելով երկրի բովանդակ շրջագիծը։ Վսեմ տեսարանից և ոչ մի գիծ է զանց առնուած, բացի այդ, նա համահաւասար խնամք է տանում տեսնելու համար որպէս զի գունաւորումը լինի անսխալ, և որպէս զի տեսարանի ընդհանուր ազդեցութիւնը պահպանուի անվթար։ Երևելի մի հատուածի ենք հանդիպում «Վերելք Հայաստանի» կոչուած գլուխի մէջ ուր հեղինակը նկարագրում է «երկուօրեակ տեսարանը նշմարելի Զիկարի կիրճից (7164 ոտք բարձր), որ «նայում է երկու աշխարհների վրայ»։ Հիւսիսային կողմում անտառապատ լեռներ տարածւում են մինչև Կաւկասի հսկայական պատնէշը ուր գորշ մշուշի մէջից բարձրանում են նսեմօրէն փայլատակող սառնարաններ և ձիւնապսակ կատարներ։ «Բայց դարձի՛ր հարաւ, դիտէ՛ երկրի մակերևոյթի կազմակերպու-

թեանը. լոյսերը եւ ստուերները՝ որ նուրբ մթնոլորտի մէջով լինում են մեղմիկ ծածանող ցանցառ ամպերից պատկանում են մի նո՜ր աշխարհի։ Սարաւանդի ամենաբարձր դաշտերը հասնում են գրեթէ միեւնոյն բարձրութեան, ինչ բարձրութեան հասնում է այն կիրճը որի վրայ կանգնած եմ. հեռւում, բոլոր նախագծերը հորիզոնական են, բոլոր ձեւերը թեթեւակի գմբեթաձեւ եւ կորնթարթ։ Եթէ հետեւիս բարձրաբերձ զանգուածների չրջագծերին՝ նոքա ամենեւին չեն նմանում կատարների, այլ ձեւացնում են մի բուրգ որ բարձրանում է երկնքի գծից վեր եւ անցնում միւս կողմը։ Գոյները երեւում են լիր չպարուած տորոնի եւ օգրի երանգներով, հրաբխային հողի մակերեւոյթը մերկ է ամեն կանաչից, ստուերները թափանցիկ են եւ բարակ։ Այսպէս էր մեր առաջին ակնարկը Հայաստանի վրայ եւ այսպէս էր այն տպաւորութիւնը որ զգացինք մեր երկրորդ ճանապարհորդութեան ժամանակ»։ Այս յատկանիշ նկարագրութեան պարզ գեղեցկութիւնը կայանում է իւր բացարձակ ճշգրտութեան մէջ։

Գնահատման արժանի է որ ո՛չ ուղեւորութեանց դժնդակութիւններն եւ անհանգստաւէտութիւնները, ո՛չ պաշտօնեաների անհանդուրժելի բծախընդրութիւնները, ո՛չ քարտէզի, յուշատետրի, եւ թելէմէթրի հրէշային խուզարկումները կարողացած են տըկարացնել հեղինակի կորովը նսեմացնելու եւ անհամացնելու բնութեան հարազատ պատկերացումը։ Նորա նկարագրութիւնները միշտ կատարեալ են, միշտ գեղեցիկ, եւ միշտ հոգեշունչ։ Ի՞նչ կարող է գերազանցել, զորօրինակ, երկրորդ հատորի Բ. Գլուխը որ բացւում է այս բառերով — «Վանայ լճի տեսարանը, ա՛ռ, որ կէտից որ ուզես, այսպիսի տպաւորութիւններից զգացւող ճանապարհորդի համար անհնարին է որ աչքերը արտասուքով չլեցուեն»։

Զուտ գիտութեան դատին Պարոն Լինչ մատու-

ցած է բազմաթիւ ծառայութիւններ որոց մէջ աչքի են ընկնում Արարատի եւ Սեւանի վերելքների տեղեկագրութիւնները, եւ Նեմրութ հրաբուխի ուսումնասիրութիւնը։ Թէեւ այս լեռը յառաջագոյն այցելուած է Եւրոպացի ճանապարհորդներից, բայց Պարոն Լինչին է պատկանում նրան մանրազննին գիտնական խուզարկութեան ենթարկելու պատիւը։ Այս ընտիր արգասիքների հետ մէկտեղ կարելի է դասել նորա տուած նոր ծանօթութիւնները Եփրատի գլխաւոր ակունքների, Վանայ, Ուրմիոյ եւ Սեւանայ՝ Հայկական մեծ՝ լճերի մակերդային ծածանման առթիւ։

... Գործի գեղարուեստական եւ աշխարհագրական ճիւղերը բարձր են ամեն քննադատութիւնից. Հայաստանի ընդարձակ քարտէզը եւ միւս տասն եւ հինգ քարտէզներն ու յատակագիծները դուրս են բերուած անհաման կատարելութեամբ։ Իսկ 197 ընտիր լուսանկարների առատութիւնը կը բաւէ ապացուցանելու Պարոն Լինչի աշխատութեան մեծ արժէքը ամեն նոցա որոց համար հետաքրքրական է ծանօթանալ Հայաստանի աւերակների եւ նորա բնութեան տեսարանների հետ...։

Արդի էջմիածնայ, կաթողիկոսութեան, եւ Խրիմեան Հայրիկի մասին ընդարձակ տեսութիւն պարզելուց յետոյ Պարոն Լինչ յետադարձ ակնարկ է ձգում Հայ Եկեղեցիի սկզբնաւորութեան եւ ծաւալման պատմական աւանդութիւնների վրայ մինչեւ Քաղքեդոնի ժողովը 451ին, երբ Լուսաւորչեայ Եկեղեցին իսպառ անջատուեցաւ Յունական Եկեղեցիից։ Ցոյց է տալիս աստուածաբանական եւ պատմական պատճառները որ դրդումն տուին Հայաստանի պատմութեան այս կարեւոր տագնապին, եւ հարցը փակում է այն բացատրութեամբ թէ Հայ Եկեղեցիի դիրքը էապէս չէ այլայլուած մինչ ներկայ օրս։ Եկեղեցին ունեցել է իւր ե-

լեւէջները՝ իւր փայլուն օրերը եւ իւր խաւար օրերը, բայց, ի վերայ այսր ամենայնի, վարդապետութեան եւ սովորութեանց մասին մնում է միեւնոյնը ինչպէս որ էր երբ Հայերը, յատկանիչ յամառութեամբ, մերժեցին պատուիրակ ղրկել Քաղքեդոնի ժողովին: Ինչ առերեւոյթ պարագաներ էլ որ պատճառ եղած լինեն այդ նպատակին, ներքին իսկական բացատրութիւնը, սակայն, պէտք է փնտռել ռամկապետական բնաւորութեան մէջ մի այն տեսակ ժողովուրդի որ ամեն խընդրի տակ ո եւ է ձեւի բռնակալութիւն է երեւակայում միշտ, հաշիւը ողջ մէկ է՝ կուզէ խնդիրը լինի եկեղեցական, կուզէ լինի պետական: Շատ անգամներ ասուած է թէ Հայերը իրենց գոյութիւնը պարտական են իրենց ազգային Եկեղեցիին, որը պահպանել է նոցա ողջ եւ միացեալ իբր մի ազգութիւն: Բայց Պարոն Լինչ կարծում է թէ աւելի մօտ պիտի լինէր ճշմարտութեան եթէ ասած լինէին թէ Հայ Եկեղեցին ոչ միայն իւր կազմութիւնը այլ նաեւ իւր գոյութիւնը պարտական է մէկ անընկճելի ոգիի, որը ծայրէ ի ծայր տոգորուած է ռամկավարական զգացումով: Այդ Եկեղեցին ունեցել է երկար ու պատուաւոր պատմութիւն: Պահպանել է իւր լրութիւնը շատ աւելի լաւ կերպիւ քան թէ ուրիշ Եկեղեցիներ, եւ իւր զօրութիւնը այսօր իսկապէս չէ նուազել: Վեր ի վերոյ դատողների աչքին, նորա բարեփոխութիւնը կայանում է պատկերապաշտութեան, կղերի չամուսնութեան եւ այսօրինակ սովորոյթների ոչնչացման մէջ. բայց դիտողի աչքին, այս բարձրագոյն ազգային կազմակերպութեան եւ բուն իսկ ազգին սպառնացող մեծ վտանգը կայանում է մի այլ կէտի մէջ՝ թէ ներկայ աղետների ուժգնութեան ներքեւ մի գուցէ Եկեղեցին գործիք դառնայ աւելի քաղաքական քան թէ իւր զուտ հոգեւոր նպատակներին: Կրօնական պետե-

րի պարտականութիւնն է վերահասու լինել թէ իրենց Եկեղեցիի վտանգը կայանում է իւր ուղիղ պաշտօնից շեղուելուն մէջ...։

... Առաջին հատորի մի բաժինը խիստ պատշաճօրէն նուիրուած է Անի քաղաքին, Հայաստանի մայրաքաղաքը միջին դարերում։ Մի շարք ամենաերեւելի լուսանկարների օգնութեամբ հեղինակը վերարտադրում է այս մէկ հատիկ քաղաքը իւր գեղեցկութեան եւ ճարտարապետական վեհութեան մէջ, եւ ո եւ իցէ կասկածի տեղ չէ թողում ընթերցողի մտքում փառաւոր ձիրքերի նըկատմամբ մի այնպիսի ժողովուրդի որի անընկճելի ոգին չէ հանգած ո՛չ մահմեդականութեան հալածահարութիւններից եւ ո՛չ երկաթակուռ բռնակալութիւնից։ Անիի գեղեցիկ աւերակները մնում են իբրեւ գոռոզ յիշատակ մի հասարակութիւնից որ դարերով կրել է Իսլամի արշաւանքների հարուածը իւր քրիստոնէական հաւատքին պատկանելուն պատճառաւ։ Առ երեւոյթս նոքա կորցրին իրենց բաղդին խաղը այդ երկար արիւնահեղ ընդհարումների մէջ, բայց ո՞վ կարող է ժխտել թէ տակաւին ո եւ իցէ անգուշակելի ճակատագրի մի օր պիտի չտիրանայ այս ժողովուրդը, որ այլ եւ այլ մեծ ցեղեր է թողել իւր յետեւում, եւ, որ այսօր իսկ կազմում է մի խախուտ կայսրութեան բարոյական ու արուեստական ոյժը։

Հայաստանի պատմութիւնն ուսումնասիրողները երախտագիտութիւն պէտք է զգան դէպի Պարոն Լինչ իւր հանճարեղ ուրուագրման համար ի մասին միջին դարերի Հայկական Թագաւորութեան։ Անսպառ աշխատանքով նա միատեղ է բերել բոլոր պատմական բեկորները ամեն մի վաւերական աղբիւրից, եւ, յօրինելով նոցանից մի յստակ պատմաբանութիւն, նա, միաժամանակ, անփոյթ չէ եղել իւր անձնական սուր քննադատական

կարօղութիւնները յատկացնել նոցա ճիշդ իմաստի լուսաբանութեան համար։ Այսպէս անելով, նա ծառայութիւն է արել ոչ միայն Անգլիացի ընթերցողներին բայց նաեւ Հայագէտ ուսումնականներին։ Բաւ է մի պարզ ակնարկ ձգել մատենագիտութեան քսան եւ հինգ երեսների վրայ, համոզուելու համար թէ հեղինակը որպիսի մանրակրկիտ հոգածութեամբ եւ անթերի աշխատասիրութեամբ է յառաջ տարել իր խուզարկութիւնները ոչ նուազ քան եօթն տարբեր լեզուներով հրատարակուած մի գրականութեան մէջ։ Բազմաթիւ նիւթերի վրայ այսքան թարմ փաստերով զեղուն սոյն հատորներում մարդ կարող է լիովին տեղեկանալ Վանայ արձանագրութեանց նորագոյն յայտնութիւններին, որոնք սրանից առաջ գտնւում էին խրթին մթութեան մէջ։

Հայաստանի աշխարհագրութեանը նուիրուած գերազանցօրէն լուսաբանական մի գլուխի մէջ Պարոն Լինչ միատեղ է բերել իւր նախորդների, միանգամայն, եւ իւր ուղղակի հետազօտութիւնների արգասիքը, որի հետեւանօք բոլորովին նոր լոյսի մէջ է կանգնած երեւում այս զարմանալի երկիրը, որ պատմական տարեգրութեան մէջ ա՛յնքան ընտանի է, բայց որ իւր արտաքին ձեւովն եւ աշխարհագրական կապերովը առհասարակ անծանօթ։ Աշխարհի վրայ չկայ մի այլ երկիր որ այնչափ կարգից դուրս անհոգ թողուած լինի դիւանագէտների, գիտնականների. եւ խուզարկուների կողմից որչափ Հայաստանը։ Մի փոքր ճանաչողութիւնը բաւական պիտի լինէր պարզելու ինչ որ ենթադրուած է լինել իբր անլուծելի առեղծուած։ Մի տեսակ ապիկար անզգայութիւն, չասենք ապուշութիւն, յատկանիշած է գրեթէ բոլոր ճիգերը բարւոքելու Թուրքիայում, եւ, մասնաւորապէս, Հայաստանում տիրող վիճակը բայց Պարոն Լինչի գործը, մեր կարծիքով, լոյսի հեղեղ է սփռում ամբողջ խնդրի վրայ։ Այս բանը նա արել է նախ

պատկերացնելով Հայաստանը այնպէս ինչպէս որ է, ոչ թէ ինչպէս կարծուած է լինել հեղգ կամ անտարբեր դիւանագէտների եւ մոլորցուած հասարակութեան կողմից։ Երկրորդ, իւրաքանչիւր հատորի «Վիճագրական եւ Քաղաքական» կոչուած վերջին գլուխների մէջ նա որոշ առ որոշ վերլուծում է Բեռլինի վեհաժողովի կապակերգութեան բոլոր իրողութիւնները որ վերաբերում են Հայաստանին։

. . . Ամերիկեան հասարակութիւնն, ընդհանրապէս, եւ զարգացած Հայերը, մասնաւորապէս, եթէ ուշք դարձնեն կարդալու եւ ուսումնասիրելու այս հատորները, պիտի լցուին երախտաճանաչութեան ըզգացումով դէպի այս Անգլիացի Գիտնականն որ ցոյց է տուել բուն ճշմարիտ մի համակրանք. որովհետեւ փոխանակ վերացական բացատրութիւնների նա երեւան է հանել քննական կէտի այն ամեն մանրամասնութիւնները որոնք կարող են նոր լոյս սփռել, եւ, այսպէս, նպաստել նոցա ազգային խնդրի լուծման։ Պարոն Լինչ պաշտպանում է նոցա դատը ոչ իբրեւ զգայուն ձեւացող մէկը, կամ իբրեւ մի խանդավառ երազատես, այլ իբրեւ մի բանիբուն տնտեսագէտ եւ քաղաքագէտ . . . ։

## ՀԵՐՄԱՆ ՎԱՄԲԵՐԻ. —

Այս անունը աշխարհահռչակ է որպէս ամենամեծ արեւելագէտ ուսումնականը. իսկ մեր հասարակութեան նա ծանօթ է իւր սերտ բարեկամութեամբն սուլթանի հետ, որի հետեւանօք նա յաճախ հիւր էր գնում Կ. Պոլիս։ Սուլթանը ամեն անգամ մեծ ախորժ էր զգում նորա ներկայութիւնից եւ անգլիական մամուլը, ուղիղ թէ անուղիղ, ենթադրում է թէ Պրոֆ. Վամբերի Մուհամմէդից յետոյ ամենահեղինակաւոր անձն է Թուրքիոյ միւ-

սիւման հասարակութեան աչքին։ Սակայն պէտք է ասել թէ հայկական կոտորածներից ի վեր այլ եւս նա չէ տածում՝ նախկին մտերմութիւնը եւ այնքան պատրաստակամ՝ չէ պատասխանելու սուլթանի հրաւէրներին։ Վամբերի Հունգարացի է, եւ ծնած է 1832ին։ Ուսած է Պրեսբուրգ, Վիեննա, եւ Բուդափեշտ, ապա գնաց Կ. Պօլիս ուր ապրում էր ֆրանսերէնի դասատուութեամբ։ 1858ին հրատարակեց Թուրքերէն–Գերմաներէն մի բառգիրք։ 1861—64 ծպտեալ իբր դէվրիշ, նա ձեռնարկեց մի ընդարձակ հետազօտական ճանապարհորդութեան Պարսկաստանի միջով դէպի Թուրքեստան, եւ այցելեց Խիվա, Բուխարա, եւ Սամարղանդ։ 1865ին Բուդափեշտի համալսարանի արեւելեան լեզուների պրոֆէսոր եղաւ, եւ ունի գրած լեզուագիտական եւ ուղեւորական շատ ընտիր գործեր, այսպէս՝ Ճանապարհորդութիւն ի Կենտրոնական Ասիա 1865ին, Աստանդականութիւնք եւ Արկածք ի Պարսկաստան 1867ին, Նկարագիր Կենտրոնական Ասիոյ 1868ին, Պատմութիւն Բուխարայի 1873ին, Կենտրոնական Ասիա եւ Անգլօ–Ռուսական Սահմանագլուխ 1874ին, Իսլամութիւնը Տասն եւ Իններորդ Դարում՝ 1875ին, Մաջառների ծագումը 1882ին, Ապագայ Պայքարը Հնդկաստանի համար 1885ին, իւր կեանքի եւ Արկածների պատմութիւնը 1888ին, եւն։

Փեշտեր Լոյդի 1902 յուլիսի 2 թիւին մէջ այս թրքասէր մեծ գիտնականը հետեւեալ կերպիւ է խօսում՝ Լինչի Արմենիայի մասին.—

Ասիական երկիրների գիւտի եւ հետազօտութեան մեծագոյն բաժինը բացորոշապէս պատկանում է Բրիտանական ազգին։ Գիտութեան պսակը եւ նիւթական շահի փափաքը բուն սկզբից մղեցին Անգլիացիներին այցելելու հեռաւոր անծանօթ աշխարհներ։ Իբրեւ

ճանապարհորդներ նշանաւոր հանդիսանալը միշտ եղած է նոցա բարձրագոյն ձգտումը, եւ այս ճիգերին է որ մենք պարտական ենք ամենամեծ աշխարհագրական եւ տեղագրական յաջողութիւնները։ Տարիներ առաջ այս սիւնակների մէջ պատեհութիւն ունեցայ քննելու Հնդկաստանի այժմեան փոխարքայ Լորդ Քըրզընի գիտնական եւ սքանչելի գիրքը Պարսկաստանի մասին։ Այդ երկու վսեմ հատորները պարունակում են, կարծեմ, ամեն ինչ որ արժանի է իմանալ Պարսկական հողի եւ ժողովուրդի վրայ։ Այժմ առաջիս ունեմ նմանօրինակ մի գործ Հայաստանի վրայ, հեղինակութիւն Հ. Ֆ. Բ. Լինչի եւ երկհատոր, որ, քարտէզների, լեռնագրական եւ ջրագրական ուրուագծերի, քաղաքների յատակագծերի եւ գեղեցիկ լուսանկարների օգնութեամբ տալիս է մեզ Հայաստանի աշխարհագրական եւ տեղագրական յատկանիշերի եւ նորա բնակիչների նըկատմամբ մի աւելի ամբողջացեալ՝ կատարուն՝ հմտութիւն քան ինչ որ կարող էինք ձեռք բերել այս առարկայի առթիւ ցարդ լոյս տեսած բոլոր միւս գործերից։ Վիլլիէն Սէն Մարտէնի, Լանգլուայի, Տէքսիէի, Դիւբուա դը Մունպըրէօրի, Շանտըրի եւ այլոց պատուական ուսումնասիրութիւնների մէջ մենք գտնում ենք նկարուած եւ նկարագրուած տարբեր դարաշրջաններ անցեալից եւ ներկայից։ Բայց այժմ առաջին անգամն է որ մեր հեղինակի գրիչից ստանում ենք մի խորազննին նկար եւ կենդանի գաղափար նորա այլազան երեւոյթների մասին։

Լինչ եւ Ընկերութիւնն էին որ շոգենաւագնացութեան ճանապարհը բաց արին Տիգրիսի վրայ եւ կապեցին Բաղդադը Պարսկական Ծոցի հետ, եւ Պարոն Լինչ այս Ասիահռչակ գերդաստանի անդամն է։ Երկու տարբեր առիթներում այցելութիւն տալով Հա-

յարմակ կողմերին, նա իւրացրել է անթերի ծանօթութիւն իւր հետազօտած շրջանակի հետ, եւ օժտուած լինելով բաւական փորձառու խելամտութեամբ, նա հեռու է կեցել ամեն նախապաշարմունքներից երկրի եւ ժողովուրդի առթիւ առած իւր նկարագրութեան մէջ, եւ քաղաքական նկատումների մէջ եւս նա ջանացած է պահել կատարեալ առարկականութիւն: Այս ձեւով նա յաջողութիւն է ունեցել քաշելու Հայաստանի իրական եւ արժանահաւատ պատկերը: Նկատելով որ երկրի ժողովուրդը առ այժմ գտնւում են Ռուսիոյ եւ Թուրքիոյ երկու տարբեր պետութիւնների իշխանութեան տակ, Պարոն Լինչ խելացի ընթացք է ընտրել գիրքը երկու մասի բաժանելուն համար, առաջին մասը յատկացնելով Ռուսիոյ, եւ երկրորդը Թուրքիոյ Հայաստանին: Նորա ուղեւորութիւնների նկարագրութիւնը սկսում է Տրապիզոնում, ուր մէկ'ն մեր առջեւ ներկայացւում է Միհրդատեան հին մայրաքաղաքի մի մանրապատում եւ անիծերի ուրուագիրը, Տըրապիզոն քաղաքի յատակագծի հետ միատեղ: Պատմական յիշատակները այնպէ՛ս կատարելապէս եւ ծայրէ ի ծայր են նկարագրուած այնտեղ, որ մերվաղեմի բարեկամ Ֆալմերայեր ճշմարիտ հրճուանք պիտի զգար տեսնելով իւր նախաշաւիղ գործի այս արժանաւոր լրացումը: Հեղինակը ապա անց է կենում դէպի Բաթում, Քութայիս, Ախալքալաք, Ալեքսանդրօպոլ եւ Երեւան, ի վերջոյ գալիս Էջմիածին, ուր ծանօթութիւն է կազմում նորընտիր կաթողիկոս Խըրիմեանի հետ: Հայ Եկեղեցիի այս մայրաթոռը եւ Անիի նշանաւոր աւերակները պատճառ են լինում որ մեր հեղինակի գրիչից ստանանք մի յոյժ պատուական նկարագիր, ընդգրկելով ցարդ արժէքաւոր բոլոր հնագիտական նիւթերը: Միայն ճշմարտութեան

մի պարտք կատարած պիտի լինեմ եթէ պնդեմ թէ Միջին Դարերի Հայկական միապետութեան մայրաքաղաք Անիի աւերակները տակաւին երբէք չէին նկարագրուած անցեալի սոյն չքեղ մնացորդներից հրապուրուած բազմաթիւ այցելուներից այնպէս խորագննին ճշդութեամբ, թէ՛ պատմական եւ թէ՛ արուեստագիտական տեսակէտից, ինչպէս որ նկարագրուած են Պարոն Լինչի գրիչից։ Նա նուիրում է այս նիւթին երեք ուսումնասիրական գլուխներ՝ 228ից մինչեւ 392 երեսը, ապա գալիս է Կարսի նկարագրութիւնը, եւ իւր առաջին հատորի վերջում, հեղինակը տալիս է մեզ իւր աշխարհագրական եւ վիճակագրական գննութիւնների մի համառօտութիւնը Ռուսական եւ Թրքական Հայաստանի վրայ։

Թրքական Հայաստանին յատկացուած իւր գործի երկրորդ մասում մենք ծանօթութիւն ենք կազմում Քիւրդիստանի այն շրջանակների մեծագոյն մասի հետ որ քիչ անգամ են այցելուած եւ համեմատաբար փոքր ինչ նկարագրուած Քիւրդ աւազակային խմբերի մըշտական վտանգի պատճառաւ ինչպէս եւ այսպիսի ճանապարհորդութեան յարակից աներեւակայելի նեղութիւնների պատճառաւ։ Երբ յիշում եմ իմ ստորերկրեայ բնակատեղերը, ուր մենք պարտաւորուած էինք քնանալ—եթէ կարելի է քուն անուանել— մերկ գետնի վրայ 20—30 աւազակների ընկերակցութեամբ գարշելի մթնոլորտի մէջ, տանջուելով ամէն տեսակ միջատներից, սուրբ երբ մտաբերում եմ անձնական ճանապարհորդութեանս այս դառն յիշատակները, չեմ կարողանում չսքանչանալ այս Անգլիացի ուղեւորի հաստատամտութեան եւ համբերութեան վրայ որ ամիսներ է անցուցած այդ կողմերում ուսումնասիրելու համար երկիրը եւ ժողովուրդը ամենայզգուշաւոր եւ մանրամասն ճշդութեամբ։ Յաջողութիւնը, սակայն, հաւասար

է նեղութիւններին։ Այս շրջանակի վեհապանծ բարձունքներից վեր առնուած ուրուագրերը զմայլելի են, եւ գունաւոր լուսանկարներից շատերը կատարեալ հրաշակերտներ։ Ինչ վերաբերում է երկրորդ հատորում Վանայ Ծովի, Նեմրութայ հրաբուխի, Բիթլիսի եւ Ախլաթի մասին, այսպէս կատարեալ նկարագիր երբէք երեւցած չէր։ Նոյնը կարող է ասուել պատմական եւ հնագիտական եղելութիւնների մասին, եւ դժուար է մատնանիշ անել թէ ո՞ր մէկին տալու է նախապատուութիւնը . . . ։ Աւելի ընդհանուր տեսակի դիտողութիւններ է որ կարող ենք անել Պարոն Լինչի ընտիր գործի վրայ։ Ամէն բանից աւելի պարտինք սքանչանալ նորա ճարտարամտութեանը, որ հակառակ այն ժամանակ Քիւրդերի եւ Հայերի միջեւ տիրող մահաբեր խռովութիւններին, նա կարողացել է յառաջ տանել իւր ուսումնասիրութիւնները անխռով եւ առանց զարթեցնելու Թուրք կառավարութեան կասկածը, որ խառնակութեան պայթումից ի վեր փակել էր այդ սահմանը բոլոր այցելուների դէմ։ Թէ Պարոն Լինչ ստուգիւ ազատօրէն շրջում էր աջ ու ձախ՝ այդ որոշակի կարելի է տեսնել իւր հատորներից ուր երեւում է նորա կատարեալ հմտութիւնը Հայ եւ Մահմեդական ազգաբնակութիւնների ընկերային որպիսութեան մասին եւ նորա ծանօթութիւնը պաշտօնեաների տնային կեանքի, ընթացքների, եւ սովորութիւնների վերաբերմամբ։ Միայն գովելի է այն անկողմնակալութիւնը որով Պարոն Լինչ քննում է Հայկական խնդիրը . . . . ։ Ինչպէս Փոքր Ասիոյ այս բաժինում ընկերի տխուր վիճակին հմուտ խորաքննիչը ոք բացայայտ անկարելիութիւն է նկատում մի անկախ Հայաստան ըստ օրինակի Բուլղարիոյ, Ռումանիոյ կամ Սերբիոյ, քանի որ երկրին վրայ ցրուած Հայերը փոք-

բամանութիւն են կազմում Մահմեդականների դէմ, նոյնպէս Պարոն Լինչ հաւատում է թէ ողջամիտ բարենորոգումներ վարչութեան մէջ, տուրքերի անաչառ բաշխումն եւ վաճառականութեան ու արուեստի վերակենդանացումը պիտի օգտակար լինէին Հայերին ոչ նուազ քան այն Հայերի անհնարաւոր ծրագրերի իրականացումը, որոնք իրենց յեղափոխական խաղերով ընկղմեցին ժողովուրդը թշուառութեան մէջ ։ Մեր հեղինակը խստորէն քննադատում է Թրքական կառավարութեան անիշխանութիւնը եւ պաշտօնեաների գիւղաթէք հակամիտութիւնը դէպի կաշառակերութիւն ։ Նա քաշում է մի զարհուրելի պատկեր այն համատարած տառապանքի եւ թշուառութեան մասին որոց ողորմելի Հայերը պարտաւորուած են տոկալու, բայց կարծում է Թրքական Հայերի ճակատագիրը շատ աւելի հանդուրժելի է քան այլուրեք ։ Թրքական յոռի վարչութեան սարսափը յառաջ է բերում ֆիզիքական վէրքեր որ կարող են բուժուել ապագային, մինչ այլուրեք հարուածը ուղղուած է բուն սրտին եւ ճիգր թափւում է ջախջախելու համար Հայի ազգային ոգին . . . ։ Եւ մարդու մազեր փշաքաղ են լինում երբ կարդում է հեղինակի նկարագրութիւնը Հայ ժողովուրդի վիճակի մասին . . . ։

Հայաստանին վերաբերող այս գործի իրական մեծ առաւելութիւններից զատ մենք նոյնպէս ցանկանում ենք յիշատակել Պարոն Լինչի ոճի գեղազանցութիւնը ։ Նա նկարագրում է լեռների, լճերի եւ ձորերի բնական գեղեցկութիւնը բանաստեղծական ըզգացումով, եւ Հայաստանի միջնադարեան պատկառելի աւերակների շքեղ լուսանկարները մրցում են այդ ճարտարապետական արուեստագանձերի մանրամասնութիւնների հոգեչունչ նկարագրութեան հետ ։ Ըն-

թերցողը երբէք պիտի չյոգնի. Նորա հարցասիրութիւնը եւ հետաքրքրութիւնը պիտի քաշեն նորան մի նիւթից դէպի միւսը, եւ ով որ էլ կարդայ եւ իրականապէս ուսումնասիրէ այս վեհապանծ հատորները պիտի ձեռք բերէ գիտութեան ճոխ եւ ընտիր պաշար Հայաստանի վրայ։

## ՍԿՈՎՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ. —

Սա մի նշանաւոր գիրք է։ Գիտութեան, բնութեան, եւ նմանօրինակ հարցերի բոլոր ճշմարիտ սիրահարների համար սա մի կատարեալ գիրք է շատ տեսակէտներով։ Սա ոչ միայն խիստ տաժանելի աշխատութեան մի պատուաբեր եւ ուղղամիտ արձանագրութիւն է, այլ եւ մի թանգարան է ըստ ինքեան ուր ուսումնական ընթերցողը կարող է ուղիղ հմտութիւն ստանալ գիտական շատ ճիւղերի մասին։ Պատրաստուած եւ յօրինուած է վեհօրէն, եւ մտքի ու արուեստի ճարտարութիւնը փայլում է նորա էջերի վրայ ծայրէ ի ծայր։ Այն ձեւը որով խնամոտ քաշուած գեղեցիկ պատկերները եւ ուրուագծերը եւ քարտէզները գործ են ածուած լուսաբանութիւն տալու նպատակաւ, այլ ոչ լոկ տեղ լցնելու համար, պարզապէս զմայլելի է։ Ըստ ամենայնի չէնք չնորք նախապատրաստուած, հեղինակը կարող է եղել նախկին հետազօտողներից եւ մատենագիրներից, ինչպէս նաեւ իւր սեփական զըննութիւններից առած նիւթերը ուղղագծել մի այնպիսի եղանակաւ որ մեզ համար տարակոյսի տեղ չէ մընում թէ այս գործը կանգուն պիտի մնայ իբրեւ յաւերժական յիշատակաց արժանի մի կոթող Հայաստանի մասին։ Պարոն Լինչ մի իդէալ-ճանապարհորդ է՝ մեծահմուտ, հաստատամիտ, անաչառ, եւ մարդասէր։ Նորա ցանկից դուրս են անձնական նեղութիւնների

եւ զոհողութիւնների կեղծուպատիր գլպքեր, ինչ-
պէս սովորաբար շատ ճանապարհորդներ դիտմամբ յե-
րիւրում են լուսաւորութեան դատի մէկ մէկ նահա-
տակներ հռչակուելու ներքին փափաքով։ Այնպէս բուռ-
ն հոգածութեամբ է նա խորասուզուած իւր ձեռք
առած նիւթի մէջ, եւ այնպէս մտամփոփ ուշադրու-
թեամբ է ընկած իւր նպատակի ետեւից որ գուցէ չէ
իսկ մտածում անձնական սնապարծութիւն խառնելու
իւր գործին մէջ։ Աւելի ուղիղ պիտի լինի ասել թէ
հեղինակը, ինքն իրեն բոլորովին հեռու է պահում
այդ կարգի յաւակնութիւններից։ Եւ սակայն նորա
տեղագրական, աշխարհագրական, եւ այլ նկարագ-
րութիւնների նուրբ եւ առոյգ մանրամասնութիւնները
վայելչօրէն համեմուած են ուղեւորութեան անձնա-
կան միջադէպերով եւ դրուագներով։ Նա, կարծես
թէ, չէ հասնում ճարտասանական ոճի այն վերին աստի-
ճանին ուր թւում է թէ կարողութիւն ունի բարձրա-
նալու իբր նկարագրող-հեղինակ։ Այս այսպէս երե-
ւելու պատճառը գուցէ այն է որ նա այնչափ հակա-
մէտ է եղել լուրջ եւ իրական դուրս բերելու իւր գոր-
ծը, եւ գուցէ նաեւ այն է պատճառը որ նա այնքան
առատօրէն գործ է ածել շքեղ լուսանկարներ։ Բայց
եւ այնպէս նկարագրական հանճարի կայծեր անպա-
կաս են նորա մէջ. ընդհանուր ոճը զուրկ չէ ոգե-
ւորութիւնից եւ գիրքը ունի անսովոր գեղեցկութեան
շատ ու շատ երեսներ։ Իբր աշխարհագէտ գիտնական,
տարակոյս չկայ, նա կատարում է իւր ուսումնասի-
րութիւնը անքննադատելի պարտաճանաչութեամբ։ Մի
ծայրից մինչեւ միւսը նա յառաջ է գնում իւր գործի
միջով բեղուն հմտութեամբ եւ ճշգրիտ յատկաբանու-
թեամբ, եւ այսպէս անելով նա տուել է մեզ մի հրաշա-
կերտ Հայ երկրի եւ ժողովուրդների մասին։ Բայց,

այնտեղ կայ մի նօթ որ նա հնչում է աւելի բարձր քան իւր գիտնական աշխատանքը, խիստ չափ ճանապարհորդների հասած սահմանից դեռ աւելի բարձր, եւ այդ նորա խորին զգացողութիւնն է բնութեան համար։ Այս բացատրում է միանգամայն եւ նորա յաջողութիւնը Արեւելքցիների հետ վարուելուն մէջ, եւ նորա անբիծ գնահատութիւնը դաւանութիւնների եւ ժողովուրդների վերաբերմամբ։ Այն հաստատական ձեւը—որով, անհամար խիտ առ խիտ մանրամասնութիւնների միջոցաւ նա ընթերցողին զգացնել է տալիս համափիւռ անեղծանելի Բնութեան Ուրուականի զարկերակն եւ սրտի տրոփը—ոմանք գուցէ այնպէս բացատրեն թէ Արեւելքի ոգին է սաւառնում նորա դատողականութեան վրայից, ոմանք գուցէ կոչեն միստիկականութիւն, եւ ոմանք համաստուածութիւն, եւ սակայն, այդ ձեւը գրքի ամենալաւ եւ ամենահարազատ գիծերից մէկն է։

Անհնարին է մանրակրկիտ դիտողութեան ենթարկել նորա քննած բոլոր հետաքրքրաշարժ հնադարեան եւ միջնադարեան վայրերը, եւ նորա նկարագրած բոլոր դաշտերը, ձորերը, սարերը, եւ գետերը։ Կը բաւէ ասել թէ այնպէս պայծառ եւ կանոնաւոր է նա պտտեցնում իւր ղէկը այս ընդարձակ եւ մանուածապատ նիւթի միջով որ առանց դժուարութեան նորա աշխատութեան արգասիքի մէջ կարող ենք որոշել երեք գլխաւոր խումբեր. — ա. Աշխարհագրական եւ Երկրաբանական, բ. Պատմական եւ Հնախօսական, գ. Քաղաքական եւ Ընկերային։

Ա. — Աշխարհագրական եւ Երկրաբանական։—

Բարձրացած երկրի մի գօտի, սարաւանդների մի շարք ձգւում է Ասիական ցամաքի մէջ տեղով Խաղաղականից դէպի Միջերկրական հիւսիսում եւ հարաւում

կողաւորուած երկայնաձիգ կամարներ ձեւացնող լեռնե-
րի մեծ շղթաներով։ Հայաստանը մէկ այսպիսի սա-
րաւանդ է։ Արեւմտեան Ասիայում սարաւանդներն
այսպէս ներփակող շղթաները տրամադրուած են եր-
կու շարք գրեթէ զուգահեռական կամարների մէջ
բացուելով դէպի հարաւ։ Այս շղթաները, կամ ար-
տաքին լեռները, ձեւացել են կողմնական ճնշողու-
թեամբ, պատճառելով երկրային կեղեւի ծալծալումն,
բայց մէկ կամ երկու տեղերում (ինչպէս Հինդու-Քու-
շում եւ Հայաստանում) մի ընդգլխագիր ճնշողութիւն
հարաւից բերել է երկու արտաքին լուսանցքները մէ-
կը միւսին մօտ, արտադրելով ահագին երկրագրական
պէսպիսութիւն։ Հայաստանում կամարների այս համա-
ճնշումը ամենից աւելի կատարուած է Տրապիզոնի եւ
Տիգրանակերտի միջեւ ընկնող երկրում։ Այս մի եւ
նոյն պատճառին վերագրելի է նաեւ ընդարձակ Արա-
րատեան սիստեմի ներքնամուղ զարտուղումը արտաքին
կամ հարաւային կամարից։ Մինչ Պարսկաստան, արե-
ւելքում եւ փոքր-Ասիան արեւմուտքում խստիւ խա-
փանուած չեն Հայաստանից, եւ ունեն գրեթէ մի եւ նոյն
բնական տեսարանները, կլիման եւ ժայռերը, միւս
կողմանէ՝ հիւսիսում եւ հարաւում տարբեր երեւոյթ
է ներկայանում։ Հիւսիսում Սեւ Ծովից եւ Վրաստա-
նի հովիտից, եւ հարաւում Միջագետքի դաշտավայրե-
րից Հայաստանը տարանջատող լեռների գօտիները
կամ այսպէս ասած Հայաստանի երկու արտաքին լու-
սանցքները, ունեն մի եւ նոյն հատու խորտուբորդ,
աղօցաձեւ յատկութիւնը, նեղ, անտառախիտ ձորերով,
եւ ներկայանում են իբր յենարաններ այն վերամբարձ-
եալ դաշտերի չորքին որոնցից յօրինուած է Հայաստան։
Այս գօտիների ներսում երկիրը խիստ որոշ է եւ
խիստ վեհատեսիլ, իւր երկայնաձիգ, մեղմաթէք ելեւ-

էջներով, իւր հեռաւոր ցածրումը հրաբխային հողի մէջից յանկեայն գալարուող գետերով, իւր ձիւնապատ լեռների գողտրիկ գմբեթաձեւ կատարներով՝ ինչպէս Արարատ, Արագած, Սիփան կամ Բինգէօլ որոնք բիւրաւոր գագաթների մէջից դուրս են ցցւում աշտարակի նման։ Իւր վեհապանծ բարձրութիւնից (4000ից մինչեւ 7000 ոտք սարաւանդների վրայ, եւ մօտ 17000 ոտք Արարատի գլխին) շրջապատ երկիրների վերեւ, նա ծառայում է իբրեւ սանիք, եւ ցած է գլորում իւր ջուրերը (Տիգրիս, Եփրատ, Արաքս աշխարհահռչակ գետերը) դէպի Սեւ եւ Կասպեան ծովերը եւ Պարսկական ծովը։ Արարատեան սիստեմի հիւսիսակողմեան բարձրավանդակներում վերջին հրաբխային շարժմունքը խիստ մեծ է եղել (Ախլցխայի, Արդահանի, Ախալքալաքի, Ալեքսանդրօպոլի, Կարսի շրջակայքը), բայց սրանցից հարաւ կամ արեւմուտք՝ Տօրոսեան սիստեմում կամ Թուրքական Հայաստանում նորա ներգործութիւնները եթէ ոչ այնքան սաստիկ եղել են սակայն ոչ նուազ մեծ եւ ազդու։

Պարոն Լինչի էջերից ամբողջ երկրին սովորական կարեւոր դիմագիծերը, եւ իւրաքանչիւր անջատ շրջանակի ուշագրաւ տարբաղան կէտերը դուրս են ցցւում պարզ եւ որոշ։ Եւ թէեւ մարդ դուցէ երբէք չմենաշնորհուի նրանց տեսնելու իրականութեան մէջ, բայց եւ այնպէս նորա ճարտարութեան եւ ջանասէր անխոնջ հոգածութեան շնորհիւ, այն չքեղ բարձրութիւնները եւ իրենց շրջապատները — Արարատ իւր փառաւոր գմբեթով եւ բուրգով եւ իւր ահեղ վիհով, Նեբրովթ իւր միաձոյլ պատով եւ անյատակ լիճով, Սիփան իւր կառկառակոյտ եւ ցիր ու ցան աւազանով Վանայ անուշիկ ծովի վերեւ, Բիւրակն իւր հազարաւոր ակներով եւ չորս կողմի անծայրածիր տեսարանով—եւ

այս հին երկրի բոլոր գլխաւոր գագաթները եւ կիրճերը չպէտք է այլ եւս կարծիքական կամ անծանօթ նկատուեն Արեւմտեան մտքերին . . . ։

## ԳՐԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ԹԱՅՄԶԻ . —

Թող ոչ ոք խորշի այս հատորներից այն տպաւորութեան տակ թէ մի գուցէ սոքա Հայկական կոտորածների գրականութեան մի ուրիշ յաւելագրութիւնը լինեն։ Այդ քառամեայ տարիկայի վերաբերմամբ շատ քիչ բան կայ նոյնիսկ, եւ, թէպէտ. Պարոն Լինչ ջերմաջերմ հաւատք է տածում դէպի Հայ ազգը, սակայն եւ այնպէս իր ընթերցողի երեսին նա չարունակ չէ շպրտում քաղաքականութիւն եւ ցեղային խնդիրներ ... Ինչ որ նա ասում է այդ ժողովուրդի եւ նորա տառապանքների մասին տիրապետող կառավարութիւնների ձեռքից նամանաւանդ մէկի ձեռքից—արժանի է խորին նկատառութեան, որովհետեւ տրուած է առանց ակնյայտնի քաղաքական կամ կրօնական կանխակալ կարծիքի, եւ հիմնուած է զուտ անձնական անաչառ դիտողութեան վրայ ... Արմենիայով Պարոն Լինչ, ըստ բաւականին ճշգրիտ, ըմբռնում է պատմութեան մեծն Հայաստանը՝ այն բարձր սարաւանդը որ ցանկապատուում է Տօրոսեան եւ Կաւկասեան լեռնաշղթաներով, եւ որի մի առաջին բաժինը նա հետազօտել է եւ այժմ նկարագրում է այս երկու փառահեղ հատորների մէջ։ Այսպիսի տեղեկագրութիւն Հայաստանի մասին սրանից առաջ դեռ երբէք լոյս տեսած չէր Անգլիերէն լեզուով, եւ, անտարակոյս, ոչ էլ ուրիշ ո եւ է լեզուով 1818 ից ի վեր երբ Սէն-Մարտէն հրատարակեց իր հռչակաւոր Յիշատակ Հայաստանին ... Պարոն Լինչի լուսանկարները գեր ի վեր են ամեն գովասանքից, եւ նոյնպէս գունաւորումը, որ սովորաբար ամենաձախլատանդաւոր մի փորձ

է երբ կապ ունի լուսանկարչական գործերի հետ, այստեղ ի գլուխ է բերուած, կարծում ենք, անզուգական յաջողութեամբ ... Այս չքնաղ պատկերների, անթերի քարտէզների ու յատակագծերի հետ մէկտեղ Պ. Լինչի բառացի նկարագրութիւնը ստանում է մարմին և արիւն, և Հայաստանը երևում է մեր մտքի հանդէպ իր բուն գեղեցկութեան ու վեհութեան մէջ . . . ։ Այս չքնաղ հատորները զեղուն են հետաքրքրութեամբ՝ կազմի առաջին երեսից մինչև վերջին երեսը . . . ։ Այն բոլոր անձանց համար որ ընդունակ են գնահատելու մի հայուածանօթ երկրի և ժողովուրդի մասին լոյս բերուած անխարդախ խուզարկութեան և պատուաւոր անձնաբուղխ զննութեան բուն արժէքը—նոյն բոլորի համար ևս Պարոն Լինչի Արմենիան պէտք է նկատել իբր ամենայագեցուցիչ ախորժահամ սեղան ։

ՍՏԱՆԴԱՐԴ.—

Այս փառահեղ հատորները լի են բազմաթիւ նկարներով և յորդառատ են ընդարձակ քաղաքագիտական նշանակութիւն ունեցող իրողութիւններով և վիճակագրութեամբ ։

Անգլիոյ նախարարական այս թերթը երկու երկար յօդուածներ նուիրեց Արմենիա ի երևումին, ծանօթութիւններ և կարծիքներ տալով գործի այլ և այլ կէտերի մասին։ Կարեկցութիւն է արտայայտում Հայերի չար բաղդի համար թէ նոքա գտնւում են քաղաքական խիստ ձախորդ մի կացութեան մէջ։ Անիրականալի է նկատում Հայ ժողովուրդի անկախութեան գաղափարը, բայց աւելի հաւանական է տեսնում նորա ամբողջութեան միացումը Ռուս աշխարհակալութեան ներքև, որին իբր նախազգուշութիւն ենթադրում է թէ այդ ցեղի կողմից իմաս-

տութիւն կը լինէր սոյն կանխատեսութեամբ խոհեմ՝ դիրք պահպանել Ռուսիոյ հանդէպ։

Տարակոյս չկայ թէ, ասում է Ստանդարդ, Հայկական մի նորոգ թագաւորութեան գաղափարը յղացաւ նախկաւկասի Հայ հասարակութեան մտքում, բայց այդ պարապ մի երազ է։ Մի եւ նոյն ժամանակ, անկարելի է չհամակրել երկու կայսրութեանց սահմանագըլխի վրայ ընկած այս ժողովուրդի տենչանքներին . . .։ Մօտաւորագոյն արեւելքի ապագան ինչ բաղդի եւս վիճակուելու լինի, գոնէ այնքանը հաւաստի է թէ Հայերը ներշնչուած են այն տեսակ մի բնաւորութեամբ որը պիտի տայ նոցա գերադաս դիրք, ոչ գուցէ որպէս հասարակութիւն այլ որպէս անհատներ, Հիւսիսի մեծ կայսրութեան դրօշակի տակ։ Եւ այս առթիւ հեղինակի նկատողութիւնը շատ արդարացի է թէ, եթէ Թուրքիոյ Հայերին վիճակուի ընկնել Ռուսաց իշխանութեան տակ, իբր միակ ծաւալուն ցեղը կայսրութեան այդ մասում նոքա մեծապէս կարող պիտի լինեն օգտաւէտ դառնալ քաղաքակրթութեան զարգացմանը, եւս առաւել եթէ կառավարութիւնը հրաժարուի իւր արդի ռուսացման սիստեմից։

ԴԷՅԼԻ ՔՐՈՆԻԿԸԼ.-

Այս մեծ գործը, յիրաւի, ամենալիակատարն է Հայաստանի մասին երբ եւ իցէ երեւան եկածների մէջ։ Նորա էջերում կայ պաշար ամեն դասի ընթերցողի համար՝ քաղաքագէտի եւ պատմագէտի, աշխարհագրի եւ լեռնագրի, ուսասէրի եւ ուղեւորի, աստուածաբանի եւ գործի մարդի համար։ Որովհետեւ հեղինակը ջանացել է իւր հատորները դարձնելու ոչ միայն անձնական փորձառութիւնների մի արձանագրութիւն, այլ մի հանրագիտարան ամեն տեսակ հարցերի, որ վերաբերում են

Հայերին եւ նոցա երկրին... Ո՛չ մի քաղաքագէտ պարտի թերանալ ներշնչութիւն քաղելու աշխատասիրութեան այս յիշատակարանից որ հաւանականաբար ընդերկար պիտի մնայ վկայաբանութեան գերագոյն գործը առ այժմ հանգչած բայց դեռ եւս չլուծուած խնդրի հանգամանքների նկատմամբ...։

## ԷՎԱՆՋԷԼԻԿԱԼ ԱԼԻԱՆՍ ՔՈՒՕՐՏԸՐԼԻ.—

Այս երկու փառահեղ հատորները, որ լոյս տեսան բաց դեղին, կապոյտ եւ ոսկի գոյներով, ընդերկար պիտի մնան իբր գլական ամենաբարձր գործ Ծարի եւ Սուլթանի սոյն յարակից երկիրների մասին...։ Հեղինակին ոճը սիրուն է եւ բնական, նա հանճարեղ է կեանքի եւ տեսարանների նկարագրութեան մէջ, պատկառելի եւ անաչառ է պատմաբանութեան մէջ, խոհեմ եւ խորհրդածող է քաղաքագիտական բաժիններում, ճշգրիտ է դիտութեան մէջ, եւ գորովալիր՝ հալածուողի վիճակը պատմելուն մէջ...։ Հայ ցեղի բոլոր խնդիրները քննութեան են առնուած այդ հատորներում, մեծ մտախոհութեամբ...։

## ՈՒՕՐԼԴ.—

Թող մեզ ներուի խոստովանելու թէ լիօրէն չէինք խելամուտ եղած Հայաստանի իսկական կարեւորութեանն մինչեւ որ ձեռք չառինք Պարոն Հ. Լինչի ճանապարհորդութիւններ եւ ուսումնասիրութիւնները այդ երկրի նկատմամբ։ Ստուարութեան, Ծանրութեան եւ պարունակութիւնների մանրամասնութեան կողմանէ ուղեւորական ամենավիթխարի գործն է որ երբ եւ իցէ մեր ուշադրութեան յանձնուած լինի։ Խնդրի ապշեցնող կէտը այն է որ ոյժի եւ հմտութեան այս արտակարգ սպառումը՝ դեռ բան չենք ասում ծախքերի մասին՝ գործ է ածուել Հայաստանի վրայ...։

## ՓԷԼ ՄԷԼ ԴԱԶԷԹ.—

Պարոն Լինչի հսկայական հատորները կարդալուց յետոյ մարդ կարող է ջնջել Հայաստանը քննական պտոյտի կարօտ երկիրների ցանկից, որովհետեւ ոչ միայն նոքա պատմում են մեզ այն ամենն որ հազուածանօթ կամ դեռ եւս անծանօթ է սոյն երկրի ընկերային կացութեան եւ ֆիզիքական աշխարհագրութեան մասին, այլ նաեւ վերարտադրում են վայրերի տեսարանը այնպիսի գեղեցիկ մի շարք երփնագոյն լուսանկարներով որպիսիներով երբեք զարդարուած չէ ուրիշ ո եւ է ճանապարհորդական գիրք ... Արարատեան վերելքի նորա պատմութիւնը հասնում է նկարագրական գրուածքի մի վսեմ բարձրութեան ... Շատ չպիտի ուշանայ որ տասն տարիներից ի վեր խռովայոյզ քունի նշաւակ եղած Մօտաւոր Արեւելքի խնդիրը պիտի վերստին զարթնի նոր գործունէութեամբ, եւ պատրաստի գտնուիլ ուղողների համար ոչինչ աւելի օգտակար եւ նպատակայարմար կարող է լինել քան այս հատորների ուսումնասիրութիւնը ...

## ԴԷՑԼԻ ՆԻՒԶ.—

... Այս բոլոր առաւելութիւններից դուրս, Պարոն Լինչի Գրքի վրայ կայ տակաւին մի այլ բան որ ամենն բանից աւելի է տարանջատում նրան ուղեւորական գրքերի ընդհանուր չեղջակոյտից։ Այդ այն վեհ եւ անխարդախ մարդկային զգացումն է, որ թափառում է Գրքի առաջին երեսից մինչեւ վերջին երեսը։ Այդ զգացումը յայտնի է ամենուրեք — դուարթամտութեան փայլակների մէջ, ախպերի եւ անհատների համակրական նկարագիրների մէջ, դպրոցների եւ, առհասարակ, կրթութեան ներգործութիւնների մասին՝ սոսկ վիճակագրական հետաքրքրութիւնից աւելի բարձր՝ խորին հո-

գաղութեան մէջ, եւ խիլեր քան զամենայն, կատարե-լապէս մարդասիրական ոլորտի մէջ դէպի փոքրիկ ճըն-չեալ ազգերը։ Այս վերջինը, նամանաւանդ, արժանի է ջերմ գոհունակութեան։ Ուղեւորներն, ընդհանրապէս, նոյն իսկ երբ համակիր են այդ ազգերին, նոցա մասին ոչ այլ ինչ են ցոյց տալիս բայց եթէ ողորմութեան պէս սառն մի կարեկցութիւն։ Դէպի մի թշուառ շուն զգացած կարեկցութեան տեսակից է այդ — բարեսի-րութեան; նողկանքի եւ իւր սեփական անձի գերա-դասութեան գիտակցութեան մի խառնուրդ։ Այս տեսա-կի նախատական կարեկցութեան նշոյլն անգամ չկայ Պարոն Լինչի վրայ . . .։

ՈՒԵՍՏՄԻՆՍՏԸՐ ԳԱԶԷԹ. —

. . . Նա արտադրել է ամենալաւ, ամենակատարեալ եւ ամենաանկողմնակալ տեղեկագրութիւն Թուրքիոյ եւ Ռուսիոյ Հայկական գաւառների մասին . . . Նա ձեռք է տուել նիւթին ամեն մի երեւակայելի տեսա-կէտից։ Ցեղ, կրօն, քաղաքականութիւն, աշխարհա-գրութիւն, հնախօսութիւն՝ բոլորը ներփակւում են այս հատորների մէջ . . . Նա բարձրացել ոչ միայն Արա-րատ լեռան վրայ այլ նաեւ այն չքեղ լեռների բոլոր կատարների վրայ որ ընկնում են Սեւ Ծովի արեւմը-տակողմեան դաշտերի եւ լճերի մէջ, եւ այդ բարձ-րութիւններից քաշել է Հայաստանի պատկերը կեն-սատու նկարագրութեամբ . . . Գրքի ընթերցումից մենք ի մէջ այլոց այն տպաւորութիւնն ենք զգում թէ Հա-յը մի անճարակ ցեղ է, որովհետեւ այնպիսի բնական առաւելութիւններով, որոցմով օժտուած է նոցա եր-կիրը, մի զօրեղ կամքի տէր ժողովուրդ չէր յաղթահար-ուի նոյն իսկ թրքական ճնշումներից։ Ինքն Պարոն Լինչ եւս ընդունում է նոցա մէջ կարողութեան պա-կասութիւն կառավարելու մասին, ինչպէս նաեւ քա-

րոյական ոյժի նուազութիւն...

ՔԸՆԹԷՄՓՈՐԷՑՐԻ ՌԻՎԻՌԻ.—

. . . . Բաղդ եւ յաջողակութիւն ընթացել են ձեռք ձեռքի . . . այսինքն, աշխարհագէտ ունեցել է անսահման խանդ, մարզուած խելք, ուժեղ գրութեան ձիրք, եւ չքնաղ թարմութեան ու հրապոյրի մի նիւթ։ Զուգադրութիւնը անդիմադրելի է . եւ իրաւամբ, պարոն Լինչ արտադրել է ինչ որ, անտարակոյս, առնուազն այս տասն տարիից ի վեր Անգլիայում հրատարակուածների մէջ ամենասքանչելի ճանապարհորդական գործն է... Ամբողջ ուղեգծի երկայնութեամբ մենք ղեկավարուած ենք լուսանկարներով որոնցից շատերը արտադրուած են գերազանց նրբութեամբ, իսկ բուն հեղինակի գրչի հզօր նկարագրութիւնները այնչափ կենդանացուցիչ են եւ մանրակրկիտ որ, կարծես իբր մի շարք պանորամայական տեսիլների մէջ, մենք որոշակի տեսնում ենք երկրի բնական դիմագիծերը։ Զմայլում ենք մատուռներով եւ տաճարներով, այցելում ենք դպրոցներ, հետազօտում ենք արհեստ ու վաճառականութիւն, խառնւում ենք գիւղի եւ քաղաքի ժողովուրդի հետ, նոյն իսկ մտնում նոցա մրջնաբունի նմանող խրճիթները, եւ մասնակցում մի անտաշ բայց բարեգալուստ հիւրասիրութեան տուարների կողքին։ Զզուելի հոտերը բուրում են, սակայն եւ այնպէս մենք ուսումնասիրում ենք եւ ուսանում համով, որովհետեւ Պարոն Լինչի ոչ-փոքրագոյն արժանիքներից մէկն եւս այն է որ նա առաջին էջից մինչեւ վերջինը վայր չէ թողնում հետաքրքրութեան դրօշը։ Բացի այս, անցեալը դիւթականօրէն միախառնուած է ներկային հետ, առասպելական եւ պատմական եղելութիւնները, սակայն, յստակօրէն որոշուած իրարուց... Յատուկ գըրուատիք պէտք է ընծայել մեծ քարտէզին, ինչպէս նա-

եւ բազմաթիւ փորագիր լուսանկարներին որոնք մեծապէս աւելացնում են ոչ միայն հետաքրքրութիւնը այլ եւ բնագիրի յարգը ։ Բայց գրքի գլխաւոր արժանիքը կայանում է իւր լեցունութեան եւ մեծախնամ ճշդութեան մէջ ... Պարոն Լինչ գրում է ուժով եւ հմայքով։ Թէ Բրիտանացի ընթերցողի համար նորա Գիրքը պիտի դառնայ գերագոյն Գործը Հայաստանի վրայ՝ այդ մասին ամենաթեթեւ տարակոյս անգամ չկայ ։

## ՎԵՐՋ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ